# ՅԱՌԱՋԱԲԱՆ

---

Գործնական Քերականութեան Գ. Գիրքին Ա. Մասն է ներկայ հատորը, ուր ջանացած ենք ամփոփել արդի աշխարհաբարին մէջ ընդունուած և գործածուած բոլոր այն էական կանոնները որոնք կը վերաբերին ստորադասութեան, ուղղագրութեան, տառադարձութեան, արտահնութեան, բառակազմութեան, ինչպէս նաև դըրականի, յօդի, ածականի և դերանունի բաղադրութեանն ու համաձայնութեանը։

Այս Գ. Գիրքը, որուն Բ. Մասը պիտի հրատարակուի ընդ հուպ, յատկացուած է մեր նախակրթարաններու բարձրագոյն դասընթացքին։ Մեր գլխաւոր նպատակը եղած է պատկերացնել հոն Կ. Պոլսոյ աշխարհաբարը այնպէս ինչպէս կը գրեն մեր արդի լաւագոյն հեղինակները, և այս նպատակին հասնելու համար գիմած ենք երկար հետազօտութեանց, որովհետև դժբախտաբար տակաւին կարելի չէ եղած գոյացնել, նոյնիսկ արեւմտեան աշխարհաբարի գրողներուն մէջ, լեզուի միօրինակութիւն։ Այս է պատճառը որ հարկ կը զգանք ներկայ յառաջաբանով պարզել, հայ ուսուցիչներու դիւրութեան համար, կարգ մը էական կէտեր, բացատրելով մեր նախընտրած քերականական կանոններուն առաւելութիւնները, և կամ զանոնք նախընտրելնուս պատճառները։

Գոյականներու թիւը. — Յոգնակիին կազմութեան մէջ կան քանի մը կէտեր որոնց մասին գրողները բոլորովին համաձայն չեն։ Այսպէս.

Ա. Չ և — պարունակող միավանկ բառերուն յոգնա-

կլին այսօր ընդհանրապէս կը կազմուի առանց կորուսման կանոնին ենթարկելու զանոնք, և կը գրուի անխտիր գէrֆեr · թ––ղթեr , սէrsեr , դ––ռնեr ։ Թէև կայ փոքրամասնութիւն մը որ կը գործադրէ կորուսման կանոնը միավանկ բառերէն ոմանց համար, և կը գրէ qrֆեr, թղթեr, ursեr, դռնեr, և լն., սակայն մենք առաջին ձևը նախընտրած ենք ոչ միայն որովհետև այդ ձևը ամէնէն սովորականը դարձած է, այլ նաև հետևեալ երկու նկատողութիւններով . նախ՝ որովհետև կարելի չէ ճշդել կանոն մը թէ ե՛րբ պէտք է ին և ո–ն պահել և ե՛րբ ջնջել , և յետոյ՝ որովհետև կարգ մը բառերու համար կորուսման կանոնը գործադրուելով տեղի կը տրուի անճար հոմու-թեանց , ինչպէս թիզ և թուզ , Ճիշ և Ճուշ , կիr և կուr և լն., որոնց յոգնակիները իրարու հետ պիտի շփոթուէին , եթէ կորուսման կանոնը գործադրուէր անոնց վրայ ։

Բ. Մէկ ու կէս վանկ ունեցող բառերէն ոմանց յոգնակիի մասին ալ համաձայն չեն գրողները . կան որ կը գրեն sarrեr, arkղեr, և կան ալ որ կը գրեն sarrնեr , arkղնեr ։ Առաջինները իրենց հետ ունին արդի սովորութիւնը , և վերջինները Այտընեանի հեղինակութիւնը ։ Մենք ընդունած ենք առաջին ձևը , և դիտած ենք որ մէկ ու կէս վանկ ունեցող բառերը յոգնակիի կազմութեան տեսակէտով երկու կարգի կը բաժնուին . անոնք՝ որոնց սկիզբն է կէս վանկը , և անոնք որոնց վերջն է կէս վանկը ։ Առաջինները , ինչպէս գլուխ , նեr ով յոգնակի կ'ըլլան , իսկ վերջինները , ինչպէս arkղ , եr ով ։ Այս կանոնը , զոր ցարդ ո և է քերական չէր դիտած , անգիտակցաբար գործադրուած է գրողներու մեծամասնութեան կողմէ , և իրեն հետ ունի նաև ներդաշնակութիւնը . ուստի տարակոյս չունինք որ sarrնեr , arkղնեr ձևերը իսպառ կորսուելու դատապարտուած են ։

Գ. Ճիշդ նոյն դիտողութիւնը միավանկներով կամ կէս վանկով վերջացող միեւկիսավանկներով կազմուած բարդ բառերու յոքնակիին համար ալ ։ Այտընեան առոնց համար միօրինակ կանոն մը ունի՝ նէրով յոքնակի ընել զանոնք ։ Իսկ մենք ճշդած ենք այն կանոնները որոնցմով արդի գրողները երբեմն երով և երբեմն ալ նէրով յոքնակի կ՚ընեն այդ կարգի բառերը (տե՛ս կանոն 237) ։ Այս դիտողութիւնները, որոնք բոլորովին նոր են, հիմնուած են լաւագոյն գրողներու գրուածներուն վրայ ։

Դ. Ինչպէս կ՚երեւայ մեր աւանդած կանոններէն, կարգ մը գրաբարի ձեւով յոքնակիներու գործածութիւնը ընդունած ենք, թէև գրողներէ ոմանք ամէն պարագայի մէջ կ՚ուզեն երով կամ նէրով միայն կազմել յոքնակին ։ Անուրանալի է սակայն թէ այսօր ընդհանուրին գրչին տակ նուիրագործուած են այլեւս այդ ձեւերը, որոնք արդէն ներդաշնակութեան տեսակէտով ալ նախընտրելի են, քանի որ աշխարհաբարի ձեւով կազմուած յոքնակիներու կրկնութիւնը յաճախ անտանելի միօրինակութիւն մը յառաջ կը բերէ նախադասութեանց մէջ ։ Ասկէ զատ յայտնի է թէ նոյն իսկ ժողովուրդը դեռ կը պահէ իր լեզուին մէջ գրաբարի ձեւով կարգ մը յոգնակիներ, ինչպէս տղաք, տեղուանք, կտորուանք, ևլն. ։ Ահա՛ ինչու գրաբարի ձեւով յոքնակին տեղ տեղ գործածել թելադրած ենք, մասնաւորապէս կարգ մը մասնիկներով վերջացող հասարակ և յատուկ անուններու, ինչպէս նաև ազգերու վերաբերեալ յատուկ անուններու համար ։

Գոյականներու հոլովում. — Մեր արդի աշխարհաբարի գոյականներու հոլովմանց մէջ այնքան զանազանութիւն կայ որ քերականութեան հեղինակ մը մեծ դժուարութեան հանդէպ կը գտնուի այդ մասին

որոշ կանոն մը ճշդելու համար ։ Մեր գրողներէն ոմանք խօսուած լեզուին հետեւող ըլլալ կ՚ուզեն, և գրեթէ ամէն պարագայի մէջ, պարզապէս ի, է, ով աւելցնելով ուղղականին վրայ կը կազմեն սեռականն ու տրականը, բացառականը, գործիականը։ Ուրիշներ կարելի եղածին չափ շատ փոխառութիւններ կ՚ընեն գրաբարի հոլովումներէն, գործածելով եղակի և յոգնակի անանկ հոլովման ձեւեր, որոնց համար գրաբարի մէջ ալ սովորութիւնն է միակ կանոնը, ինչպէս․ թեւ, թեւոյ, թեւոց․ կարգ, կարգաւ, կարգաց․ զարդ, զարդուց․ ճիմ, ճիմանց․ ծաղր, ծաղու, ևլն․ ։ Այս երկու ծայրայեղ դրութեանց միջև կայ միջին ճամբայ մըն ալ, որուն հետեւողները հետզհետէ բազմանալու վրայ են ։ Ասոնք կը ջանան որոշ պարագաներու մէջ սահմանափակել հոլովման գրաբար ձեւերը, այդ պարագաներէն դուրս գործածելով աշխարհաբարի կանոնը միայն ։ Մենք ալ հետեւած ենք այս վերջին դրութեան, և ինչ որ դժուար եղած է մեզ, այդ սահմանափակումն է ահա՛։ Երկար հետազօտութեանց պէտք ունեցած ենք ճշդելու և ի մէկ հանելու համար հոլովմանց այն զանազան ձեւերը, զորս ներկայացուցած ենք գոյականներու հոլովմանց պատկերին մէջ (էջ 98—103) ։ Կ՚արժէ՛ որ ասոնց մասին քանի մը բացատրութիւններ տանք․

Ա. Ի վերջացող բառերը սեռականի մէջ թէ՛ ընդհանուր օրէնքին կը հետեւին Ի առնելով, ինչպէս հոգի, հոգիի, և թէ՛ գրաբարի ձեւով կ՚ըլլան հոգի, հոգւոյ ։ Այս կրկին ձեւերն ալ ընդհանուր գործածութեամբ նուիրագործուած են այսօր․ ուստի աւանդած ենք հաւասարապէս երկու ձեւերն ալ, թէև գտնուին գրողներ որոնք -ոյ վերջացող սեռականները ուզեն բոլորովին վտարել աշխարհաբարէն ։

Բ. Ութիւն վերջացող գոյականներու գործիակա-

նին համար աւանդած ենք միայն ուրեմն ձեւը, թէեւ ոմանք կը գործածեն նաեւ ուրիշնով։ Ասոր պատճառն է ոչ միայն ուրեմն ձեւին կարճ եւ աւելի ընդհանրացած ըլլալը, այլ եւ սա պարագան թէ բացառականը ուրեմնէ կը գործածուի եւ ոչ ուրեք-նէ. Ստեփան Ոսկան, որ աշխարհաբարի նշանաւոր վարպետ մըն էր, կը գործածէր արդարեւ ուրեք-նով, բայց տրամաբանական ըլլալու համար կը գործածէր նաեւ ուրեք-նէ, ինչ որ այսօր կարելի չէ ընել այլեւս, քանի որ ուրեմնէ բացառականը վերջնապէս ընդունուած է ։

Գ. Ում վերջացող ածանցեալ անուններուն համար աւանդած ենք թէ՝ աշխարհաբարի ձեւով հոլովուիլ եւ թէ՝ գրաբարի ձեւով, այնպէս որ զգացում բառին սեռականը գործածուի հաւասարապէս զգացումի եւ զգացման, եւ գործիականը զգացումով եւ զգացմամբ։ Հոս ալ ընդհանուր կերպով ընդունուած սովորութեան հետեւած ենք։

Դ. Իւ վերջացող բառերուն գալով, անոնցմէ հազիւ սա տասներկու հատ ընդհանրացած են արդի լեզուին մէջ, եւ պէտք է ըսել թէ սովորաբար աշխարհաբարի հոլովման կանոնին համեմատ կը գործածուին Սակայն օրինակ շատ գործածական դարձած են պաշ---ց ասեղն, պաշ---ց լեզուն, այս հաշ---ղ եւն. բացառութիւնները, իւ վերջացող բառերուն համար աւանդած ենք նաեւ գրաբարաձեւ հոլովումն ալ ։

Ե. «Ող վերջացող անորոշներէն երկուքը միայն կը հոլովուին», գրած ենք (կ. 256)։ Արդարեւ մեր արդի գրողները ող վերջացող անորոշները ընդհանրապէս չեն հոլովեր, եւ եթէ երբեք հոլովել հարկադրուին, անոնց տեղ կը գործածեն աշխարհաբար համանիշները, ինչպէս երդնուլ ի տեղ երդում ընել, ցնծուլ ի տեղ կայտռել եւն. ։

Զ. Ոչ-արմատական ք-ով վերջացող բառերուն գրաբարաձև հոլովումը, զոր այսօր տակաւին կը գործածէ գրողներու կարեւոր մաս մը, չենք աւանդած այս Քերականութեան մէջ, և չենք գործածած, օրինակի համար, կրօնք, կրօնից. աչք, աչաց, ոտք, ոտից ևլն. ձեւերը։ Ասոր պատճառն է այն շփոթութիւնը, որ իմաստի տեսակէտով յառաջ կու գայ այդ հոլովումներէն. արդարեւ երբ ըսենք աչաց, կրօնից, չի հասկցուիր թէ մէ՞կ աչքի, մէ՞կ կրօնքի վրայ է խօսքը, թէ բազմաթիւ աչքերու և կրօնքերու վրայ։ Ուստի աւանդած ենք թէ ք վերջացող բառերը իբր եզակի կը հոլովուին ընդհանուր օրէնքին հետեւելով, ինչպէս աչքի, կրօնքի, ևլն. իսկ յոգնակիի մէջ եր կամ ներ կ՚առնեն և այնպէս կը հոլովուին, ինչպէս աչքերու, կրօնքերու, ևլն.։

Է. Հոլովման առեն ձայնաւորներու փոփոխման կանոնին գործադրութեան մասին՝ գրողները բոլորովին համաձայն չեն այսօր. կան որ կը գրեն պարտէզ, պարտիզի, ամէն, ամենուն, ատեան, ատենի, և կան ալ որ կը գրեն միշտ պարտէզի, ամէնէն, ատեանի, ևլն.։ Մենք այս վերջին ձեւը աւանդած ենք, որովհետեւ դիտած ենք թէ հետզհետէ հոլովման առեն փոփոխման կանոնը չգործադրելու սկզբունքը ընդհանրացած է մանաւանդ վերջին տասնըհինգ տարիներուն մէջ։

Ը. Գալով կրաւորման կանոնին, կան բառեր որոնց հոլովման մէջ գրեթէ բոլոր գրողները անխտիր կը գործադրեն այդ կանոնը, կան բառեր որոնց մէջ չեն գործադրեր, և կան բառեր ալ որոնց մէջ երբեմն կը գործադրեն և երբեմն չեն գործադրեր։ Այս մասին որոշ կանոն մը ճշդելու աշխատած ենք թէև, սակայն ի ձայնաւորին կրաւորման նկատմամբ մեր ըրած երկար հետազօտութիւնները չեն յանգած գոհացուցիչ արդիւնքի մը, և կարելի չէ եղած ընդհանուր կանոն մը սահ-

մանել. սորված ենք բաւականանալ ցոյց տալով կարգ մը պարագաներ, որոնց մէջ է՛ն ընդհանրապէս չի կորսուիր (կ. 260), և կարգ մը պարագաներ ալ որոնց մէջ է՛ն ընդհանրապէս կը կորսուի (կ. 261)։ Նոյնպէս կարելի չէ եղած որոշ կանոն մը ճշդել հոլովման առեն ու երկբարբառին կորուսման համար, որ սակայն շատ աւելի հազուադէպ է։

Թ. Բոլոր այս պարագաներէն զատ, աւանդած ենք հասարակ և յատուկ անուններու եզակիին համար կարգ մը անկանոն հոլովումներ, հետևելով ընդհանուր սովորութեան. նոյնպէս յոգնակիի համար աւանդած ենք թէ ազգերու անունները, ինչպէս նաև կարգ մը մասնիկներով վերջացող անուններ, գրաբարի ձևով ալ կը հոլովուին, բատ արդի գրաւոր աշխարհաբարին։

**Յօդի գործածութիւն.** — Արդի աշխարհաբարի քերականութեան ամէնէն կնճռոտ մասերէն մէկն է այս, և այս մասին՝ գրողներուն միջև անհամաձայնութեան մէկէ աւելի կէտեր կան։ Հարկ կը նկատենք որեւէ ուսուցիչներուն ուշադրութիւնը հրաւիրել այդ կէտերէն գլխաւորներուն վրայ.

Ա. ը և ն յօդերուն գործածութիւնը այսօր միօրինակ չէ Կ. Պոլսոյ աշխարհաբարին մէջ։ Գրողները համաձայն են, երբ բառը ձայնաւորով կը վերջանայ. այն ատեն միշտ ն յօդը կը գործածուի։ Բայց երբ բառը բաղաձայնով կը վերջանայ, կան գրողներ որոնք ն յօդը կը գործածեն երբ յօդ առնող բառին յաջորդող բառը ձայնաւորով կը սկսի, և կամ յ կամ հ բաղաձայններով. կան գրողներ ալ որոնք բաղաձայնով վերջացող բառերուն քով միշտ ը յօդը կը գործածեն, ի բաց առեալ երբ անոնց յաջորդող բառը էական բային սահմանական ներկան կամ անկատարն է և կամ ու, ալ, իսկ, անգամ շաղկապները, և ի վար, ի վեր նա-

խադրութիւնները ։ Մենք այս գործածութեան վերջինը աւանդած ենք, ոչ միայն որովհետև այդ է այսօր Պոլսոյ մէջ ընդունուած ձևը թէ՛ ժողովրդեան կողմէ և թէ՛ դրագէտներու մեծամասնութեան գրչին տակ, այլ նաև որովհետև այդպէս գործածած են Փէշտիմալճեան Գրիգորի, Տէրոյենցի, Զօրայեանի, Սամուէլ Ոսկանի պէս հեղինակութիւններ ; որոնք աշխարհաբար գրած են անանկ ատեն մը երբ լեզուին մէջ դեռ չէին մտած պայմանադրական նորութիւններ, կամ գրաբարի ազդեցութեամբ կատարուած փոփոխութիւններ ։

Բ. Անորոշ յօդին գործածութիւնը կրկին ձև ունի այսօր Պոլսոյ աշխարհաբարին մէջ ։ Կան որ մը անորոշ յօդին ըը կը ջնջեն ձայնաւորներու առջև, ինչ որ նորամուտ սովորութիւն մըն է լեզուին մէջ ։ Իսկ մեծամասնութիւնը մը ին ըը չի ջնջեր երբեք արձակին մէջ, և էական բային սահմանական ներկային և անկատարին բոլոր դէմքերուն, ինչպէս նաև աչ շաղկապին առջև մը ին քով ՛ն մը կ'աւելցնէ ։ Այս ձևը, որ ժողովուրդին գործածած ձևն է, մեր աշխարհաբարին անդրանիկ գրիչներէն գործածուելէ ետքը, թէև միջոց մը վտարուած է կարգ մը գրողներու կողմէ, բայց տաս տասնըհինգ տարիէ ի վեր հետզհետէ ընդհանրանալու վրայ է ։ Այս ձևն է զոր աւանդած ենք մենք ալ այս Քերականութեան մէջ ։

Գ. Ջանացած ենք ամփոփել հնար եղածին չափ յստակ կերպով այն կանոնները, որոնցմով կարելի է ճշդել թէ ո՛ւր պէտք է յօդ գործածել, և ո՛ւր չգործածել ։ Այդ մասին շատ մը նոր դիտողութիւններ ներկայացուցած ենք ։ Կէտ մը, որուն վրայ կ'ուզենք մասնաւորապէս հրաւիրել մեր ուսուցիչներուն ուշադրութիւնը, ի, ու, ոյ և եու է տարբեր վերջաւորութիւն ունեցող եզակի և յոգնակի սեռականներուն և

տրականներուն, ինչպէս նաեւ գործիականին որոշիչ յօդ չառնելու պարագան է։ Ըսած ենք արդէն (կ. 392) թէ այդ հոլովները չեն առներ որոշիչ յօդ, բայց կ՚առնեն դիմորոշ յօդ, և կը դրենք իր ձեռքովը, իր միջամտութեանը։ Յայտնի է սակայն թէ մեր, ձեր, իրենց ստացական ածականներուն հետեւող գոյականներուն քով դրուած յօդը, — որ միշտ միօրինակ ը է կամ ն, և հետեւաբար դիմորոշ յօդի հանգամանք չունի, — պէ՞տք է պահել գործիականին, ինչպէս նաեւ յօդ չառնող սեռականներուն ու տրականներուն քով։ Այսպէսով, ընդունելով հանդերձ թէ՝ այդ պարագային՝ ը դիմորոշ յօդ չէ, և թէ որոշիչ յօդը գործիականի մէջ չի գործածուիր բնաւ, մեր գիրքովը, ձեր գիրքերովը, իրենց գրիչներովը գործիականները գործածած է։ Մենք, նկատելով որ մեր, ձեր, իրենց ստացական ածականներուն հետեւող գոյականներուն վրայ դրուած յօդը որոշիչ յօդ է, աւանդած ենք թէ այդ յօդը կը յապաւուի կարգ մը պարագաներու մէջ (կ. 444)։ Իսկ արդի գրաւոր լեզուին մէջ երբեմն մեր գիրքերով և երբեմն մեր գիրքերովը կը գործածուի գրողներուն ճաշակին համեմատ։ Ժամանակը պիտի որոշէ թէ այս երկու ձեւերէն ո՛րը պիտի ստանայ վերջնական նուիրագործումը։

Դ. Կարեւոր խնդիր մըն ալ յատուկ անուններու յօդին գործածութիւնն է, որուն մասին գրողները բոլորովին համաձայն չեն։ Մենք ջանացած ենք կարելի եղածին չափ պահպանել յատուկ անուններու քով յօդի գործածութեան պարագաները, ինչ որ որոշ ձգտում մը կ՚երեւայ մեր արդի լաւագոյն գրողներուն։

Դերանուններու գործածութիւն. — Այս Քերականութեան մէջ ընդունած ենք աշխարհաբարի դերանունները միայն, մէկ կողմ թողլով գրաբար դերանունի ձեւերը, որոնք այլեւս բոլորովին դադրած են գործա-

ծական ըլլալէ ։ Պէտք է դիտել սակայն թէ արդի աշխարհաբարին մէջ գործածուած դերանունները ժողովուրդին գործածութենէն քիչ մը կը տարբերին ։ Այսպէս, երբ ժողովուրդը անձնական դերանուններու հայցականին համար կը գործածէ իս, մեզ, քեզ, ձեզ, եւն., այսօր գրողներուն ստուար մեծամասնութիւնը այդ ձեւերուն տեղ ընդունած է գրաբար հայցականները, այսինքն զիս, զմեզ, զքեզ, զձեզ, եւն. ։ Այս գործածութեան գլխաւոր պատճառը եղած է իմաստի շփոթութեանց տեղի չտալու պէտքը, որովհետեւ եթէ շատ հայցականը զանց առնուէր, հարկ պիտի ըլլար ինք, իրենք, ան, անոնք ձեւերը գործածել թէ՛ ուղղականի եւ թէ՛ հայցականի համար ։ Հակառակ ատոր, կան արդի գրողներուն մէջ ոմանք որ շատ հայցական չգործածելու համար մեզ, քեզ, ձեզ. եւն. ձեւերը իբր հայցական կը գործածեն, եւ տրականի կը վերապահեն մեզի, քեզի, ձեզի, եւն. ձեւերը, որոնք, սակայն, ժողովրդեան լեզուին մէջ կը գործածուին նաեւ իբր հայցական ։ Յարաբերականի համար ալ աւանդած ենք զոր կամ զորս հայցականներուն գործածութիւնը, թէեւ դի հակառակորդները որ եւ որոնք ձեւերը կը գործածեն, յաճախ տեղի տալով հոմութեանց ։

Տաղաչափական լեզու. — Ուրիշ կէտ մըն ալ, որուն վրայ ուսուցիչներուն ուշադրութիւնը կ'ուզենք հրաւիրել, այն քանի մը քերականական շեղումներն են, զորս յանուն ներդաշնակութեան ստիպուած ենք ընդունիլ տաղաչափական լեզուին մէջ, ինչպէս ամէն լեզուի մէջ ընդունուած են ։ Հարկ կը համարինք համառօտ կերպով նշանակել հոս մեր ընդունած հետեւեալ երեք շեղումները, որոնք կ'երեւան այս դասագրքին ոտանաւորներուն մէջ.

Ա. Ն յօդը գործածած ենք փոխանակ ը ի բաղա-

ձայնով վերջացող բառերուն վրայ, ամէն անգամ որ այդ բառերուն ետեւէն ձայնաւորով և կամ յ կամ ն բաղաձայնով սկսող բառ մը եկած է ։

Բ. Մը անորոշ յօդը ջնջած ենք ձայնաւորի առջև ամէն անգամ որ վանկին թիւը պահանջած է. այս է պատճառը որ յաճախ մըն այ, մըն է ձեւերուն տեղ գործածած ենք մ՚այ, մ՚է ձեւերը ։

Գ. Երբեմն յօդը ջնջած ենք տողին ծայրը յանգի պատճառաւ ։

* * *

Մեր այս աշխատութեան մէջ, ջանացած ենք, որքան կարելի է, ամէն կէտերու համար ալ աւանդել այն կանոնները, որոնք իրենց կողմը ունին գրողներու մեծամասնութիւնը, և երբեք չենք մտցուցած լեզուին մէջ կանոն մը զոր չինած ըլլանք անսովոր գործածութիւն մը ընդունել տալու նպատակաւ, ինչպէս ըրած են Ռուսինեան և ուրիշներ ։ Երկարամեայ աշխատութիւն մը սակայն հարկ եղած է ամփոփելու համար այն դի-տողութիւնները, զորս կը ներկայացնենք այս Գ. տարւոյն մէջ, հետզհետէ զանոնք սրբագրելէ ու բարեփոխելէ ետքը ։ Տարակոյս չունինք թէ այս գործին երկրորդ տպագրութեան ժամանակ ալ նորանոր դիտողութիւններ պիտի ունենանք տակաւին հոն մտցնելիք, զորս փորձառութիւնը տուն պիտի տայ մեզ ։ Առ այժմ ուշադրութիւն կը հրաւիրենք հետեւեալ երկու կէտերուն վրայ, որոնք այս գործին տպագրութեան միջոցին կամ ետքը մեր ուշադրութիւնը գրաւած են .

Ա. Բարդութեան և ածանցման մէջ, կրճատման կանոնին վրայ խօսելով (էջ 49-50), չենք նշանակած հետեւեալ կանոնը, որ արդիւնք է նոր դիտողութեան մը. «Ում մասնիկով վերջացող բոլոր ածանցեալ բա-

ները, երբ կրկին անգամ ածանցուին կամ բարդուին, չեն ենթարկուիր կորուսման կանոնին. այսպէս կը գրենք ուս—մնական (և ոչ ուսմնական), բուր—մնաւէտ, յուզ—մնալից, ևլն.»:

Բ. Վեցերորդ Փորմային տպագրութենէն յառաջ, գոյականներու հոլովմանց պատկերը տպագրուած ժամանակ, գիտցած ենք որ եզ և բեռ բառերը բացառականի և գործիականի մէջ կ՚ըլլան եզէ, բեռէ, եզով, բեռով, մինչդեռ դուռ, փոռ, ձեռ (որոնց յոգնակին կ՚ըլլայ դուռներ, փոռներ, ձեռներ) կ՚ըլլան դռնէ, փռնէ, ձեռնէ, փռնով, ձեռնով, ևլն: Այս տեսակէտով է որ հոլովմանց պատկերին մէջ եզ և բեռ բառերուն իբր յոգնակի ցոյց տուած ենք եզեր, բեռեր, մինչդեռ 223րդ. կանոնին մէջ, նշանակած էինք եզներ, բեռներ: Տարակոյս չկայ որ այս երկու ձև յոգնակիներն ալ կը գործածուին, սակայն մեր յիշած պատճառաբանութեամբ նախընտրութիւն պէտք է տալ եզեր, բեռեր ձևերուն, որոնք աւելի սովորական են արդէն:

* * *

Այս Գ. Գրքին մէջ հին և նոր հայ հեղինակներէ քաղած ենք 17 հատուած, 3ը ոտանաւոր և 14ը արձակ, որոնց մէջ լեզուական պզտիկ փոփոխութիւններ մտցուցած ենք լեզուի միօրինակութիւնը պահպանելու համար: Պէտք է գիտնալ սակայն թէ ջանացած ենք ընտրել անանկ կտորներ, որ կարելի եղածին չափ քիչ բան փոխել հարկ ըլլայ: Այս գործին Բ. Մասին վերապահած ենք մեր հին ու նոր ուրիշ կարգ մը ընտիր գրողներէն գրական էջեր: Թողուլ օտար հեղինակներու, եւրոպական գրականութեանց ամէնէն նշանաւոր գրողներէն մէյմէկ գեղեցիկ հատուած թարգմանած ենք կարելի եղածին չափ շատ պէտքականութիւն դնելով գըր-

ուածներուն՝ ինչպէս հեղինակներուն մէջ։ Նոյնպէս թարգմանուած կամ հետեւողութեամբ պատրաստուած են 14 ատենաւոր հատուածներ, գրեթէ ամէնքը յատկապէս ներկայ դասագրքին համար։ Թէ՛ արձակ, թէ՛ ատենաւոր հատուածներուն, ինչպէս նաեւ հրահանգներուն մէջ, կէտ առ կէտ գործադրած ենք մեր աւանդած կանոնները, գործնական օրինակը դնելով այսպէս տեսականին քով։

Այս գործին Բ. Մասը պիտի պարունակէ մանրամասն կանոններ բայերուն, դերբայներուն, մակբայներուն, նախադրութեանց, շաղկապներուն և միջարկութեանց վրայ, թէ՛ բառակազմական, թէ՛ համաձայնական տեսակէտով. նոյնպէս դասեր քերականական և տրամաբանական լուծմանց, գրական սեռերու և դրադիտութեան վրայ։ Բ. Մասի յառաջաբանին մէջ պիտի խօսինք բայերուն և միւս խօսքի մասերուն վերաբերեալ մեր ընդունած քերականական կանոններուն վրայ, ինչպէս Ա. Մասին համար ըրինք այս յառաջաբանին մէջ։

Կը յուսանք թէ հայ բանասէրները և ուսուցիչները պիտի գնահատեն մեր ներկայ աշխատութիւնը, նկատողութեան առնելով դժուարութիւնը այն գործին որուն ձեռնարկած ենք, և ներողամտութեամբ դիտելով այն թերի մասերը, որոնք կրնան սպրդած ըլլալ այս երկասիրութեան մէջ։

Կ. Պոլիս, 28 Մարտ 1902.

Հ. ԵՒ Զ. ԱՍԱՏՈՒՐ



## ԿԱՐԵՒՈՐ ԴԻՏՈՂՈՒԹԻՒՆ

Ուսուցիչներուն ուշադրութիւնը կը հրաւիրենք այն վրիպակներուն վրայ որոնց ցանկը հրատարակած ենք 192րդ էջին մէջ։ Այդ էջին տպագրութենէն ետքը հետեւեալ վրիպակներն ալ մեր աչքին զարկած են.

43րդ էջի 4րդ տողին մէջ սունկ բառը պիտի ըլլայ սպունգ։

73րդ էջին մէջ Կառ բառը նմանաձայն բառերուն հետ դրուած է, մինչդեռ պէտք էր դնել բազմանիշներուն հետ։

129րդ էջի 27րդ տողին մէջ ի, ու. ւոյ պիտի ըլլայ ի, ու, ոյ։

131 էջի 12րդ տողին իր բառը պիտի ըլլայ իրենց։

135 էջի 15րդ տողին այս ծառուանը պիտի ըլլայ այս ծառուանիթը։

158 էջի 7րդ տողին մէջ իր գրքով պիտի ըլլայ իր գրքովը։

» » 11րդ տողին մէջ իր գիրքերով պիտի ըլլայ իր գիրքերովը։

» » 14, 15, 16 տողերուն մէջ գիրքին, գիրքէն, գիրքով պիտի ըլլան գրքին, գրքէն, գրքով։

159 էջի 19րդ տողին մէջ գիրք-երովնիս, երովնիդ, երովնին պիտի ըլլայ գիրք-ովնիս, ովնիդ, ովնին։

160 էջին մէջ բաշխական ածականներուն յիշատակութիւնը ընելէ ետքը մոռացմամբ չէ ըսուած. թէ՝ «Բաշխական կ'ըսուին այն թուական ածականները որոնք քանի մը անձէն մէկուն քանիական հատ բաշխուած ըլլալը կը յայտնեն, ինչպէս չորսական, տասնական»։ (Տե՛ս Բ. Գիրք. էջ 65)։



# ԳՈՐԾՆԱԿԱՆ ՔԵՐԱԿԱՆՈՒԹԻՒՆ

## ԱՐԴԻ ԱՇԽԱՐՀԱԲԱՐԻ

---

# ՆԱԽՆԱԿԱՆ ԳԻՏԵԼԻՔ

---

## ԳԱՂԱՓԱՐ, ԼԵԶՈՒ, ԳԻՐ

---

### ԿԱՆՈՆՆԵՐ

**1. ԳԱՂԱՓԱՐ.** — *Գաղափար կը կոչուի առարկայի մը կամ իրողութեան մը պատկերը, որ մեր մտքին մէջ կը ներկայանայ: Գաղափար մը ունենալը բան մը մտքով տեսնել է: Երբ կ'ըսենք* քահանայ, *իսկոյն մտքին մէջ կը նկարուի մարդ մը որ փակեղ դրած և վերարկու հագած է: Երբ ըսենք* եկեղեցի, *մեր մտքին կը ներկայանայ շէնք մը, ուր ժողովուրդը հաւաքուած կ'աղօթէ:*

**2.** Դատողութիւն *կը կոչուի այն գործողութիւնը, որով միտքը երկու կամ աւելի գաղափարներ իրարու հետ կը բաղդատէ, և այդ բաղդատութենէն եզրակացութիւն մը կը հանէ:* Եկեղեցի *և* քահանայ *զատ զատ գաղափարներ են, բայց կարելի է մօտեցնել զանոնք իրարու, և ըմբռնել անոնց յարաբերութիւնը: Երբ հարցնենք մենք մեզի թէ ինչ կ'ընէ քահանան*

եկեղեցւոյն մէջ, կրնանք իսկոյն սա դատողութիւնը ընել. Քահանան կ'աղօթէ եկեղեցւոյն մէջ:

3. Յաճախ էակ մը կամ առարկայ մը միտքերնիս բերելով, կարգ մը ուրիշ էակներ, առարկաներ ալ կը յիշենք, որոնք անոնց հետ առնչութիւն ունին. այսպէս Քահանան մեր մտքին մէջ կ'արթնցնէ եկեղեցիի, պատարագի, աղօթքի, խորանի, խաչի, խունկի, մոմի, շուրջառի, ուրարի, բուրվառի գաղափարները: Գաղափարներու զուգորդութիւն կը կոչուի մտքին այս գործողութիւնը, որով պատկեր մը իրեն հետ յարաբերութիւն ունեցող ուրիշ պատկերներ կը ներկայացնէ մտքին:

4. ԼԵԶՈՒ ԵՒ ԳԻՐ. — Գաղափար մը կամ դատողութիւն մը արտայայտելու միջոցն է լեզուն, խօսուած կամ գրաւոր: Նշանացի կերպով ալ կարելի է մտածում մը արտայայտել, ինչպէս կ'ընեն համրերը: Ազգի մը լեզուն այն եղանակն է, որով այդ ազգին վերաբերող մարդիկ խօսքով կամ գրով իրենց միտքը կը բացատրեն:

5. Մեռեալ լեզու կը կոչուին այն լեզուները, որոնք այլ եւս չեն խօսուիր, ինչպէս լատիներէնը, հին յունարէնը, գրաբար հայերէնը, եւլն:

6. Կենդանի լեզու կը կոչուին այն լեզուները, որոնք հիմայ կը խօսուին, ինչպէս իտալերէնը, նոր յունարէնը, աշխարհաբար հայերէնը, եւլն:

7. Աշխարհաբարի Քերականութիւնը կը սորվեցնէ այն կանոնները զորս պէտք է գիտնալ՝ անսխալ խօսելու և անսխալ գրելու համար մեր արդի լեզուն:

8. Խօսելու և գրելու համար կը գործածուին բառեր, որոնք գիրերէ կամ ձայներէ կազմուած են:

9. Լեզուի մը գիրերուն ամբողջութիւնը կը կոչուի Այբուբեն: Բուն հայ տառերը երեսունը վեց հատ

են ։ Ասոնց վրայ օտար լեզուէ առնուելով աւելցած են ԺԱ. դարէն ետքը, երկու նոր տառեր՝ օ, որ կը համապատասխանէ աւ-ին, և ֆ, որուն տեղ մեր նախնիք կը գործածէին փ։ Իսկ և պարզապէս միացումն է ե ու ւ տառերուն ։

10. Վանկ կը կոչուի ձայնաւոր մը առանձին կամ ուրիշ գիրերու միացած, երբ այդ գիրերը մէկ հնչումով կ'արտաբերուին. է, էր, կեանք, ելն ։

11. Մէկ վանկով արտասանուած բառերը միավանկ կ'ըսուին, ինչպէս հաց. երկու վանկով արտասանուածները՝ երկավանկ, ինչպէս գի-նի. երեք վանկովները՝ եռավանկ, ինչպէս կար-կան-դակ ։ Միավանկ չեղող բառերը կը կոչուին նաև բազմավանկ, ինչպէս ուշիմ, իմաստուն, պաշտպանութիւն, ելն ։

12. Կան նաև կարգ մը բառեր, որոնք ոչ միավանկ են, ոչ երկավանկ, այլ մէկ ու կէս վանկ ունին. սուրբ, անգղ, դրօշմ, գրաստ, ևայլն ։

13 Գիրերը երկու տեսակ են. ձայնաւոր և բաղաձայն ։

14. Ձայնաւորներն են ա, ե, է, ը, ի, ո, ու, օ ։

15. Կան քանի մը պարզ ձայներ, որոնց համար յատուկ նշանագիր չունի հայ այբուբենը, և այդ ձայները կ'արտայայտենք երկու ձայնաւորի միացմամբ բաղադրեալ ձայնաւորներ կազմելով. ասոնք են իւ (տիւն), էա (աէ-ն), և օտար բառերու մէջ էօ (Թէօդիկ) ։

16. Երբ երկու կամ աւելի ձայնաւորներ մէկ վանկ կազմեն, և ձայնի մէկ արտաբերումով հնչուին, երկբարբառ կ'ըսուին ։

17. Բուն երկբարբառներն են այ (հայր), եա (որդեակ), եւ (բարեւ), էա (աէ-ն), ոյ (սոյր) ։

18. Բայց երկբարբառ կը կազմեն նաև ոյ (ճանապարհոյ), եայ (Քրիստոնեայ), եօ (եօթը), ուա (Աստուած),

չինելուն, ինչպէս. Ագռաւ, գաւառ. — Անձեղ, անեղծ. — Աշուն, անուշ. — Այրիլ, յարիլ, — Գոմ, մոգ. — Եղկ; կեղ. — Թանկ, կանթ. — Թօշ, շօթ. — Լեզու, ուզել. — Լեռնակ, կռանել. — Ծանակ, կածան. — Խելառ, խառել. — Կարապ, պարակ. — Մարդ, դրամ. — Մարս, սարմ. — Նուշ, շուն. — Ուռկան, կռուան. — Նուազութիւն, ազնուութիւն:

---

## ՀՐԱՀԱՆԳՆԵՐ

---

### ԼԵԶՈՒՆ

Լեզուն թարգմանն է մտքին։ Անով մեր պէտքերը կը յայտնենք և ուրիշներուն հետ հաղորդակցութեան կը մտնենք. անով մարդիկը կը յուզեն կամ կը հանդարտեցնեն, մերթ որոտընդոստ պերճախօսութեամբ անոնց եռանդը արծարծելով, և մերթ մեղմ ու սրտագրաւ խօսքերով անոնց կիրքերը մեղմացնելով։ Լեզուով է որ արարածը կը հաղորդակցի իր Արարչին հետ, եւ անով է որ կը գոյանան ակարութեան և զօրութեան միջեւ այն սքանչելի յարաբերութիւնները, որոնք ծանրաբեռնեալ հոգին կը սփոփեն։ Մէկ խօսքով, լեզուն մարդկային պէտքերէն մէկն է, և որչափ միտքը մշակուի ու զարգանայ, նոյնչափ ալ լեզուն կը կատարելագործուի։ Նախնի ժամանակներու մէջ, երբ մարդկութիւնը իր օրրանին մէջ էր, երբ ծանօթութիւնները, գաղափարները և պէտքերը անձուկ սահմանի մը մէջ կ'ամփոփուէին, մարդ կ'ըմբռնէր միայն ինչ որ կը տեսնէր։ Իր պէտքերը կը կայանային կեանքի առաջին անհրաժեշտ առարկաներուն մէջ, ուստի գործածած բառերն ալ իր սահմանաւոր ծանօթութեանց եւ պիտոյքներուն կը համապատասխանէին։ Ամէն ժողովուրդ մանկութեան հասակէն կը սկսի, եւ աստիճա-

նաքար իր խանձարուրքէն մերկանալով՝ արթունքի կը հասնի ։ Որչափ ժողովուրդ մը յառաջադիմէ, նոյն համեմատութեամբ իր մտքին մէջ նոր գաղափարներ, նոր լոյսեր կը ցոլանան, որոնցմէ կը ծնին նոր պէտքեր, նոր ալ բառեր կը գոյանան, որով լեզուն կը ճոխանայ ։ Լեզուէ մը կրնայ դատուիլ մասամբ ժողովրդեան մը յառաջադիմութեան աստիճանը ։

ՍՐԲՈՒՀԻ ՏԻՒՍԱԲ(1)

1. Ձրուցագրել այս հատուածը, և նշանակել բոլոր *երկբարբառ*ները։

2. Բացատրել բերանացի *յուզել*, *արտաքնոյս*, *կիրք*, *անհրաժեշտ*, *մասնաւորութիւն*, *սահմանափակ*, *խանձարուր* բառերը։

3. Գրել թէ ինչ գաղափարներ կ'արթնցնեն մտքին մէջ հետեւեալ բառերը։

*Ծով, քաղաք, ագարակ, ջաղացք, խաղող, ապակի, սենեակ, պարտէզ, երաժշտութիւն, ծառ, ամառ, աշուն, ձմեռ, գարուն, գիրք, կապար, մշակ, դէմք, ժայռ, գոհարեղէն, Թատրոն, ախոռ, մարմնամարզ, կրակ, քերականութիւն, աշխարհագրութիւն, պատմութիւն ։*

**Օրինակ.** — *Ձմեռ* կ'արթնցնէ մտքին մէջ *ցուրտ, ձիւն, սառոյց, չմշկում, վառարան, կաղանդ, կաղանդչէք*, եւլն.

## ՏՈՒԱՐԾԻԿԸ

*Անանուխով, ծիլով հագուեր՝*
*Կ'երգէ ջաղացքն ու կը դառնայ*
*Ջուրին վըրայ.*
*Լըւացարար կանանց Թակեր*
*Քարոտ փուլին վըրայ մէկէն*
*Կ'արձագանգեն։*

---

(1) Տիկին Սրբուհի Տիւսաբ. Հայ գրագիտուհի, ծնած է 1842ին, Կ. Պոլսոյ մէջ ։ Իր գլխաւոր երկերն են երեք վէպ՝ Մայտա, Սիրանոյշ, Արաքսիա։ Գրած է տեսութիւն մը Աշխարհաբար հայ լեզուի վրայ և զանազան հատուածներ Արեւելեան Մամուլի և Մասիսի մէջ։ Մեռած է 1901ին։

Տըւարծիկը՝ աշխոյժ Թըռչուն,
Հոն կը դիտէ իր լանջքը կոյս
Ջուրին մէջ լոյս։
Վերէն վարէն միշտ անկայան՝
Կը շարժէ տուտն իր դիւրաԹեք
Օդին մէջ՝ սէգ։

Եւ նըման է Թըռչնիկն աղուոր՝
Դըպրապետին հագուած համակ
Սեւ ու ճերմակ,
Որ չափ կու տայ շարժմանց բոլոր
Ծիր ջաղացքին, և պարին դիւր
Թակերուն բիւր։

Ցոյլ շընորհքներն իր գեղանի
Ըզմեզ սիրով կը քաշքըշեն
Իր ետեւէն։
Ծովեզերքէն դաշտ կը տանի
Քըմշոտ Թըռչնիկն ըզմեզ ահա,
Եւ խոյս կու տայ։

Աւազին մէջ կը վազվըզէ,
Ու կը Թըռչի նըման անգին
Մեր ըղձանքին,
Որ միշտ առաջ կ'երԹայ մեզմէ,
Եւ երբ կարծենք Թէ բըռնեցինք
Կը փախչի ինք։

ԱՆՏՐԷ ԹԷՕՐԻԷ[1]

4. Կարդալ այս ոտանաւորը բարձրաձայն. և ամէն մէկ տողին վերջը ըսել թէ տողը քանի վանկէ բաղկացած է։

5. Գոց սորվիլ այս ոտանաւորը և արտասանել։

6. Հետեւեալ բառերուն նշանակութիւնը սորվիլ. և անոնց մէջէն որ և է ձայնաւորի տեղ ուրիշ մը դնելով նոր բառ մը կազմել.

Տատրակ, Թիզ, գոհ, գամ, Թիւ, գան, տիպար, արատ, խեղճ, երիզ, գէր, գաւաԹ, կաԹ, կաղ, երազ, անառակ, բորակ, Նիշ, բոց, մորի, յարգել, շիղ, պխտառ, տանջանք, ցից, փոկ, օծել, սինձ։

(1) Ֆրանսացի բանաստեղծ և վիպագիր, որ 1833ին ծնած է Ֆրանսա, Սէն-է-Ուազ նահանգին մէջ։

**Օրինակ.** — *Տատրակ, տետրակ. — թիզ, թուզ:*

7. Հետեւեալ բառերուն նշանակութիւնը սորվիլ և անոնց իւրաքանչիւրին մէջէն բաղաձայն մը փոխելով ուրիշ բառ մը շինել.

*Գոլորշի, կարաս, յատակ, կորով, կոխ, խուլ, խորշ, ամագ, խարակ, սիւն, վայրենի, վարդապան, ճանճ, լամբակ, շափիղ, տապակ, վիճակ, որոտում, միրգ, նաւակ, յամել, հարաւ, պատիճ, պատուհաս, պիտակ, նուագ, ցող, անապակ, անգոյթ, հովանի, անծոյծ, զատակ, գրագիր, թակոյկ, ըմպանակ, խայտուած, խարձ, խարշափում, ծերպ, թուշ, բուրակ, պատուտակ, կողով, գարան, վաշտ, կամար, մռայլ, վարդ, թոյլ, բոյս, տունկ, շոգի, հիւլ, լախտ, լաստ, վտակ, կաղապար, ձորձ, որոմ:*

**Օրինակ.** — *Կաղապար, կաղամար. — վզակ, կզակ. — հովանի, հոյանի:*

8. Մէյ մէկ անդրադարձ կազմել հետեւեալ բառերով.

*Տունկ, մահ, թոն, ծամ, կաթ, խոփ, պակաս, մարախ, թուխ, պատ, տգա, ուլ, սարթ, որմ, դար, լոյս, ծոյլ, թուփ, այն, լերկ, ճին, խարել, գոհ, ակներև, քարափ, փուռ, կեռ, գէջ, խմել, խակ:*

**Օրինակ.** — *Տունկ, կունտ. — մահ, համ:*

# ԱՌՈԳԱՆՈՒԹԻՒՆ

## ԿԱՆՈՆՆԵՐ

**24.** *Բառերը ուղիղ արտասանելու արուեստին* Առոգանութիւն *կ'ըսուի։*

### ԱՌՈԳԱՆՈՒԹԵԱՆ ՆՇԱՆՆԵՐ

**25.** *Առոգանութեան նշանները ձայնաւոր գիրերու վրայ կը դրուին, և հետեւեալներն են.* Շեշտ ('), Երկար (˝), Պարոյկ (˚)։ *Անոնցմէ զատ, երբեմն կը գործածուէին նաև* Բութ (') *և* Սուղ (') *նշանները։*

**26.** *Առոգանութեան նշանները կը ծառայեն ա-*մանակը, *այսինքն՝ վանկերու հնչման տեւողութիւնը ցոյց տալու։ Այս նշանները երգի խազերէ առնուած են։*

**27.** ՇԵՇՏ. — Շեշտ *կը դրուի բառի մը այն ձայնաւորին վրայ, զոր սուր կամ բարձր կերպով կ'ուզենք արտասանել.* եկո՛ւր, գնա՛։

**28.** *Կան բառեր, որոնք միշտ շեշտով կը գործածուին, ինչպէս.* մի՛, չէ՛, այո՛, ո՛չ, հերի՛ք, թէ՛ այս և թէ՛ այն։

**29.** *Ալ երբ մակբայ է, միշտ շեշտով կը գործածուի.* ա՛լ չեմ ուզեր։ *Իսկ երբ ալ շաղկապ է, շեշտ չ'առներ.* մարդն ալ եկաւ։

**30.** Կոչականները *առաջին վանկին վրայ կը շեշտուին, երբ իրենցմէ առաջ կամ ետքը բայ մը կայ.* Ա՛ստուած, ողորմէ՛ ինծի։ *Բայց երբ կոչական յատուկ անուն մը միայն կը գործածուի մէկը կանչելու համար, վերջին վանկին վրայ կը շեշտուի.* Մարիա՛մ։

**31**. Հրամայականները վերջին վանկին վրայ կը շեշտուին. աշխատէ՛, հասէ՛ք:

**32**. Կոչականներն ու հրամայականները չեն շեշտուիր, երբ իրենցմէ առաջ շեշտեալ բառ մը կայ. Հո՛ս եկուր, խե՛ղճ կին: Աղէ՛կ միտքդ պահէ, աղջի՛կ տղայ: Սակայն երբ կոչականն ու հրամայականը իրարու քով գան, երկուքն ալ կը շեշտուին, ինչպէս. Մա՛յր, ներէ՛ ինծի:

**33**. Կոչականներուն և հրամայականներուն շեշտը երբեմն կը գրուի, երբեմն ալ զանց կ'առնուի գրութեան մէջ, թէև միշտ կը հնչուի:

**34**. Կէս հարցական բառերը շեշտ կ'առնեն, փոխանակ հարցական նշանի. Չէի գիտեր թէ ինչո՛ւ եկած էին:

**35**. Կան բառեր ալ որոնք կրնան շեշտուիլ նախադասութեան մէջ իրենց բռնած դիրքին համեմատ, և այս պարագային պէտք է շեշտը գործածել ամէն անգամ որ անոր զանց առնուիլը կրնայ երկդիմութիւն յառաջ բերել: Այսպէս տարբեր իմաստ ունին. եղբօ՛րս աղջիկը (և ո՛չ թէ քրոջս), և եղբօրս աղջիկը (և ո՛չ թէ մանչը):

**36**. ԵՐԿԱՐ. — Երկարը կը ցուցնէ թէ վանկը սովորականէն աւելի տեւողութիւն ունի. ո՜վ Աստուած, ի՜նչ սիրտ:

**37**. Երկարը կը գործածուի.

Ա. Միջարկութեանց մեծագոյն մասին վրայ. աւա՜ղ, երանի՜ քեզ:

Բ. Կիրքով կամ յուզմունքով արտասանուած բառերուն վրայ. ի՜նչ ոճիր, դո՜ւն ես եղեր:

**38**. ՊԱՐՈՅԿ. — Պարոյկը, որ ոլորակ ալ կ'ըսուի, կը դրուի այն բառին և այն վանկին վրայ, ուր հարցումը կ'իյնայ, ինչպէս. Զինքը տեսա՞ր. ո՞ւր տեսար:

չի լսուիր՝ ընաւ այդ բաղաձայններուն միջև, ինչպէս․ պատրաստ, ղանջք, կուրծք, հրայրք, փառք, ելն։

**52.** «Յ» ԳԻՐԸ. — Յ գիրը անձայն կը մնայ մէկէ աւելի վանկ ունեցող բառերէն վերջը․ վկայ, դշխոյ, Քանանայ։ Իսկ կէս ի ձայն կը հանէ միավանկ բառերուն և իրենց բարդերուն վերջը․ հայ, թայ, մակթայ, Ռուսահայ։ Բացառիկ են Նոյ յատուկ անունը, և ղայ, տայ, գայ, կայ միավանկ բայերը, որոնց վերջին յ գիրը անձայն է։

**53.** Յ գիրը բառերուն մէջտեղը կէս ի ձայն կը հանէ, ինչպէս․ ծայր, բոյս, կոյր։

**54.** Յ գիրը բառերու սկիզբը հ ի պէս կ'արտասանուի․ յատուկ, յորդ։ Երբ այս բառերուն վերջը ուրիշ բառ կամ մասնիկ մը աւելցնելով զանոնք բարդենք կամ ածանցենք, յ գիրը հ ի հնչումը կը պահէ․ անյատուկ, մշտայորդ։

**55.** «Ո» ՁԱՅՆԱՒՈՐԸ. — Ո Ձայնաւորը բառերուն սկիզբը կը հնչուի օ երբ վ բաղաձայնէն անմիջապէս առաջ դրուած է, ինչպէս ովկիանոս, ովսաննա, և վօ բոլոր միւս բաղաձայններէն առաջ, ինչպէս ոստանիկ, որկոր։ Նոյնպէս օ կը հնչուի բառերուն մէջտեղը, ինչպէս մրճողորտ, ծործոր։

**56.** Ո երբ յ գրէն առաջ դրուած է, և անմիջապէս ետքը բաղաձայն գիր կու գայ, բառին թէ՛ սկիզբը և թէ՛ մէջտեղը, կը հնչուի ու․ ոյժ (ույժ), բոյր (բույր)։ Իսկ բառերուն վերջը կը հնչուի միշտ օ, ինչպէս յետոյ, բրածոյ, ելն։

**57.** «Ւ» ՁԱՅՆԱՒՈՐԸ. — Ւ Ձայնաւորը երբ իրմէ առաջ ա կամ ե ունի, կը կազմէ աւ կամ եւ երկբարբառները․ ցաւ, ղաւ, սեւ, թեւեռ։

**58.** Ւ ձայնաւորը, երբ իրմէ առաջ ի ունի և իրմէ ետքը բաղաձայն մը, կը կազմէ բաղադրեալ ձայ-

նաւոր մը, որ կը հնչուի իւ կամ իւ. **բարութիւն, հիւթ**:
Իսկ երբ իւ-էն ետքը ձայնաւոր մը կու գայ, կամ իւ-ը բառին վերջն է, կը հնչուի իվ. **հիւանդ, անիւ**: Նոր օտար բառերուն մէջ իւ միշտ բաղադրեալ ձայնաւորի դեր ունի, ինչպէս. **Եօժէն-Սիւ**, **Ռիւի-Պլաս**. իսկ իվ հնչումը միշտ ի և վ տառերով կ'արտայայտուի, ինչպէս **Իվօն**, **Լա Ժիւիվ**:

**59.** Երբ բառ մը իւ կը վերջանայ, ինչպէս **արծիւ**, իվ հնչումը կը պահէ թէ՛ հոլովման մէջ և թէ՛ ուրիշ կամ դիմորոշ յօդ առած ատեն, ինչպէս **արծիւի**, **արծիւով**, **արծիւը**, **արծիւս**, **արծիւդ**:

**60.** Ւ ձայնաւորը երբ ո-ի հետ կազմէ ու երկբարբառը, այս վերջինը իր ձայնը կը պահէ, եթէ իրմէ ետքը բաղաձայն գայ. **փուշ**, **խաղցրութիւն**:

**61.** Իսկ երբ ու-ի առջև ձայնաւոր գայ, կը կազմուին ուա, ուե, ուէ, ուի, ուո, ուօ, եւլն. երկբարբառները, որոնց մէջ ու-ը վ կը հնչուի. **պատուար** (**պատվար**), **ստուեր** (**ըստվեր**), **նուէր** (**նըվէր**), **ասուի** (**ասվի**), **աղուոր** (**աղվոր**), եւլն:

**62.** Բացառաբար ու-ով վերջացող բառերուն հոլովման մէջ ու-ին յաջորդող ձայնաւորները երբեմն անջատ կերպով կը հնչուին, ինչպէս **կատու-ի**, **դասատու-ի**, **տիրացու-ի**. Նոյնպէս ու-ով վերջացող բայերուն սահմանական և ստորադասական ներկային մէջ ու-ը ի-էն անջատ կերպով կը հնչուի, առանց երկբարբառ կազմելու. կը **թողուի** կը հնչուի կը **թողույի**, կը **զբօսնուի**՝ կը **զբօսնույի**, եւլն:

**63.** Ւ գրին վ-ի ձայն ունենալը որոշելու համար, հին առոգանութիւնը (^) նշանը կը գործածէր, որ հիմայ ջնջուած է, և որ սապէս կը նշանակուէր. **ստու̂ար**, **ստու̂եր**:

**64.** Օտար բառերու մէջ, ու միշտ կը պահէ իր

հնչումը, ձայնաւորներուն առջև. Սամու-էլ, Լու-ի, ակեղու-իա, ելն. բացառիկ են քանի մը բառեր, ինչպէս պյուks, Տուks, զորս պէտք է կարդալ պըյks, Տըյks :

## ՀՐԱՀԱՆԳՆԵՐ

### ՔԱՂԱՔԱՎԱՐՈՒԹԻՒՆ

Քաղաքավարութիւնը փափուկ զգացման մը և հանրային բարեսիրութեան մը արտայայտութիւնն է, որ մեր առաքինութեանց յարգը կ'աւելցնէ, այնպիսի կերպ մը տալով մեր գործերուն ու խօսքերուն, որ ոչ ոք վիրաւորուի իր զգացմանց և իմացականութեան մէջ : Քաղաքավարութիւնը հաճելի կ'ընէ ընկերական կեանքը, իբր արուեստ մը որ կը համաձայնեցնէ ինչ որ կը պարտինք մեր անձին : Իր ազդեցութիւնը այնքան մեծ է, իբր կապ ընկերութեան, որ երևելի փիլիսոփաներ անարժան չհամարեցին իրենց անով զբաղիլ : Ասոնք կը հաստատեն թէ առանց քաղաքավարութեան, մարդիկ միայն կռուելու համար պիտի հաւաքուէին : Պէտք է ուրեմն կամ առանձին ապրիլ կամ քաղաքավար ըլլալ :

Քաղաքավարութիւնը այն է բարութեան համար, ինչ որ շնորհքը դէմքին. գթութեան քաղցր պատկերն է : Անկիրթ մարդոց վրայ առաքինութիւնը թանկագին քար մըն է, որ դէշ տեղաւորուած ըլլալով իր փայլին մեծ մասը կը կորսնցնէ : Քաղաքավար կերպերը մարդուս յատկութեանց արժէքը կ'աւելցնեն և հաճելի կ'ընեն զանոնք : Վերջապէս քաղաքավարութիւնը քաղաքակիրթ մարդուն կնիքը, առաքինութեան համեստութիւնը և պարկեշտութեան փայլն է : Ընկերական դաստիարակութեան անհրաժեշտ տարրերէն մէկն է. ամէն

*ժամանակներու մէջ օգնած է զինքը կատարելագործող անհատներու և ժողովուրդներու հռչակաւոր ըլլալուն ։*

ՆԱՀԱՊԵՏ ՌՈՒՍԻՆԵԱՆ[1]

9. Զրուցագրել այս հատուածը։

10. Մէյ մէկ խօսք շինել *հանրային, ազդեցութիւն, իմացականութիւն, խաղաղակիր, կատարելագործել, անհատ, հռչակաւոր* բառերով։

11. Լուծել քերականօրէն այս հատուածին առաջին երեք նախադասութիւնները։

12. Հետեւեալ բառերուն մէջ դնել ը տառը հոն ուր կը հնչուի.

*Զգեստել, զմելին, զմռսել, զմրուխտ, զգօն, զկեռ, զփայլել, զրոյց, զրահ, զզուիլ, շփանալ, սմբակ, շպարել, սպառ, սպանդ, ստրկիկ, ստգիւտ, ստորին, ստուար, սլաք, սխալ, սթափիլ, ստրջանք, զրկանք, սղոց, շռայլ։*

13. Գտնել տասը միավանկ բառ, որոնց մէջ Ը գիրը հնչուի։

---

## *ԲՆՈՒԹԻՒՆԸ ԵՒ ՄԱՐԴԸ*

*Տրտմած մարդ մը, ամառուան մէջ օր մը, երկիր կը նայէր ու կ՚ըսէր. «Ծիրանագե՛ղ ամպեր, որ դօտիի*

---

(1) *Տօքթօր Նահապետ Ռուսինեան, բժիշկ Բարիզի Համալսարանին, ԺԹ. դարու Հայ գրագէտներուն մէջ ուշագրաւ դէմք մըն է։ 1819ին ծնած է Կեսարիոյ Էվէրէկ գիւղը։ Ունի կարեւոր հրատարակութիւններ, որոնց մէջ նշանաւոր են 1854ի և 1872ի Տաղեցոյցները, Ուղղախօսութիւնը, Փիլիսոփայութեան դասագիրք մը, որ Ֆրանսերէն գրուած և Հայերէնի թարգմանուած է, Վիքթօր Հիւկոյի Ռիւյ Պլասին ոտանաւոր թարգմանութիւնը, եւլն. Մեռած է 1870ին Կ. Պոլսոյ մէջ։*

*պէս արտեւաններու չուրջը կը փաթթուիք. օձապտոյտ լեռներ ուր ծործորները կը սողոսկին. զովուկ առուակներով ակօսուած ծործորներ. հովանուտ ծառերով անհամար առուակներ. թռչուններով ու ծաղիկներով լեցուն ծառեր. ծաղիկներ պարուրուած չղարշներովը ցօղերուն, զորս կը թօթուէք ձեր քօղերուն՝ մարմանդին ծաղիկներուն վրայ. տունկեր որ ձեր պսակներովը երկիրը կը համաստեղէք. ուրախ երկիր զոր կը յուզէ ուրախ ովկիանոսին զուարթութիւնը, քու տիտանի ճակտին վրայ ցրցքնած իր շողշողուն վարսերով. ինչու ես մինակ կարենամ մութ մնալ արեւուն լոյսին մէջ։»*

*Բայց երբ ամառուան օրերը անցան, երկինք նայեցաւ ու ժպտեցաւ վերջապէս։ Ինք իրեն պատասխաներ էր. «Ով ամպեր որ պատանքի պէս կը ծանրանաք լեռներուն գագաթին վրայ. լեռներ որ կարծես կքեր էք, մահամերձ ու մթագնած, ծործորներուն վրայ. ծործորներ ուր հեղեղները կը հեծկլտան. մօրուս հեղեղներ ուր կը թաւալին կոտրտած ոստեր. ոստաբեկ ծառեր, որ ցնորածի պէս գլուխնիդ կը ցնցէք ձեր բեկորներուն վերեւ, որոնք ամէնէն դիւրաբեկ բոյսերուն հետ խառնուած են հիմայ. թառամած տունկեր ինկած պառկած երկրի վրայ, և դուն, երկիր, որ ցաւէդ կը ճչես այն երկաթէ մուրճին տակ որով ովկիանոսը կը ծեծէ զքեզ, — վասն զի ես միայն կրնամ փայլիլ առանց արեւուն լոյսին։»*

ԷԼԻԶԱԲԷԹ ՊԱՐԷԹ ՊՐԱՈՒՆԻՆԿ(¹)

**14.** Օրինակել այս հատուածը, հարկ եղած առոգանութեան նշա՛նները դնելով բառերուն վրայ։

**15.** Գոց սորվիլ և բարձրաձայն արտասանել այս հատուածը։

**16.** Բացատրել *արտեւան*, *օձապտոյտ*, *ծործոր*, *ակօսուած*, *մարմանդ*, *համաստեղել*, *շիտան*, *կքել*, *մօրուս*, *ոստաբեկ* բառերը։

---

(¹) Էլիզապէթ Պրաունինկ Անգլիոյ ամէնէն նշանաւոր բանաստեղծուհին է։ Ծնած է 1809ին և մեռած 1861ին։

# ՈՒՂՂԱԳՐՈՒԹԻՒՆ

---

## ԿԱՆՈՆՆԵՐ

**65.** Ուղղագրութիւն *կը կոչուի բառերը անսխալ գրելու կանոնը ։*

**66.** *Լեզուի մը ուղղագրութիւնը սորվելու համար՝ քերականական օրէնքներու ուսումնասիրութիւնը կարեւոր է. սակայն բառերու ուղղագրութեան համար չի բաւեր միայն գիտնալ այդ օրէնքները, այլ հարկ է անոնց իւրաքանչիւրին ինչ գիրերէ բաղկացած ըլլալը սորվիլ ։*

**67.** *Մեր լեզուին մէջ, դիւրին է քերականական օրէնքներու վրայ հիմնուած ուղղագրութիւնը, սակայն դժուար է բառերու ուղղագրութիւնը, որովհետեւ ունինք միեւնոյն կերպով հնչուող հետեւեալ տառերը.* ը, ր — ռ, է — ե, ե — ո, օ — ու, Հ — Յ, ւ — վ, ի — յ, հ ։ *Թէեւ այս կրկին տառերը իրենց յատուկ հնչումները ունեցած են ժամանակաւ, սակայն հիմայ ատոնց հնչումը նոյնն է Կ. Պոլսոյ գաւառաբարբառին մէջ, եւ այդ է պատճառը որ բոլոր բառերուն ուղղագրութիւնը պէտք է զատ զատ սորվիլ ։*

**68.** *Կան սակայն քանի մը ընդհանուր սկզբունքներ, որոնք կը նպաստեն բառերու ուղղագրութիւնը դիւրացնելու ։*

**69.** *Առանց ձայնաւոր գրի բառ չի կազմուիր ։ Սխալ է ուրեմն գրել մարդ մն կ, այլ պէտք է գրել մարդ մըն կ ։*

**70.** *Հայ լեզուի արմատ բառերուն մէջ կրկնուած ձայնաւոր չկայ ։ Գալով բաղաձայններուն, քանի մը*

տրմատ բառերու մէջ միայն կը հանդիպինք անոնց կըրկնութեան, ինչպէս. ճճի, դդում, ծծու, թթու, եւայլն:

**71.** «Ա» ՁԱՅՆԱՒՈՐԸ. — Ա ձայնաւորը բառին վերջը առանձին չի հնչար, այլ յ կ'առնէ. պարուքայ, ընծայ, ակռայ, կ'երթայ: Բացառիկ են. 1. Ապա, սա, ահա, հապա, ասիկա, ատիկա, անիկա: 2. Օտար լեզուէ առնուած բառերը. ղուբիա, պանիա, ակադեմիա, եւլն: 3. Յատուկ անունները. Աննա, Սահարա, եւլն.: 4. Բայերուն հրամայականները. գոռա՛, կարդա՛, եւլն.:

**72.** Ա ձայնաւորին —էն զատ ձայնաւոր գիր չի յաջորդեր, եւ ամէն անգամ որ —ը —ին յաջորդէ, Հի ձայն կը հանէ, ու բաղաձայնի ոյժ ունի, ինչպէս. թա-ւակալ (թա-վակալ), եւլն.: Իսկ յ բաղաձայնը, երբ —ին յաջորդէ, ե ի ոյժ կ'ունենայ, ինչպէս. ծառայական (ծառա-եական), մեծնայարար (մեծնա-եարար), եւլն.:

**73.** «Ե» ՁԱՅՆԱՒՈՐԸ. — Ե ձայնաւորը բառին վերջը չի հնչար երբեք. չ'ըսուիր կը տեսնե, այլ կը տեսնէ. այսպէս՝ բազէ, բամբէ, ոստրէ, խօսէ՛, եւայլն:

**74.** Երբ բառի մը մէջ վերջընթեր գրէն առաջ է ձայնը հնչուի, միշտ է կը գրուի, և երբեք ե, ինչպէս թէրան, եկեղեցի, մեղեդի, բացի բարդուած և հոլովուած այն բառերէն, որոնց մէջ է կայ արդէն և չի փոխուիր. օրէնադիր, վրէժխնդիր, ամէնէն:

**75.** Ե գրին կը յաջորդեն ձայնաւոր տառերէն՝ ո և ա միայն. որդեակ, արեւ. ԺԳ. դարէն յետոյ, ե էն ետքը օ ալ սկսած է գործածուիլ, քանի մը բառերու մէջ, —ի տեղ, ինչպէս. եօթը (ե-թն), արդեօք (արդե-ք):

**76.** «Զ» եւ «Ս» ԲԱՂԱՁԱՅՆՆԵՐԸ. — Դիտուած է որ զ-ին կը յաջորդեն ընդհանրապէս միջակ բաղաձայնները, այսինքն բ, գ, դ, եւլն. մինչդեռ ս-ին կը յաջորդեն թաւերը, այսինքն փ, ք, թ, եւլն: զբաղիլ, զգոյշ, ազդել, սփոփել, սքանչանալ, սթափիլ:

# ՈՒՂՂԱԳՐՈՒԹԻՒՆ

## ԿԱՆՈՆՆԵՐ

**65.** Ուղղագրութիւն *կը կոչուի բառերը անսխալ գրելու կանոնը ։*

**66.** *Լեզուի մը ուղղագրութիւնը սորվելու համար՝ քերականական օրէնքներու ուսումնասիրութիւնը կարեւոր է. սակայն բառերու ուղղագրութեան համար չի բաւեր միայն գիտնալ այդ օրէնքները, այլ հարկ է անոնց խրաքանչիւրին ինչ դիրերէ բաղկացած ըլլալը սորվիլ ։*

**67.** *Մեր լեզուին մէջ, դիւրին է քերականական օրէնքներու վրայ հիմնուած ուղղագրութիւնը, սակայն դժուար է բառերու ուղղագրութիւնը, որովհետեւ ունինք միեւնոյն կերպով հնչուող հետեւեալ տառերը. ւ, ր — ռ, ւ — վ, է — ե, ե — ո, օ — ը, ջ — ճ, ց — ձ, ի — յ, հ ։ Թէեւ այս կրկին տառերը իրենց յատուկ հնչումները ունեցած են ժամանակաւ, սակայն հիմայատոնց հնչումը նոյնն է Կ. Պոլսոյ գաւառաբարբառին մէջ, եւ այդ է պատճառը որ բոլոր բառերուն ուղղագրութիւնը պէտք է զատ զատ սորվիլ ։*

**68.** *Կան սակայն քանի մը ընդհանուր սկզբունքներ, որոնք կը նպաստեն բառերու ուղղագրութիւնը դիւրացնելու ։*

**69.** *Առանց ձայնաւոր գրի բառ չի կազմուիր ։ Սխալ է ուրեմն գրել մարդ մն և, այլ պէտք է գրել մարդ մըն և ։*

**70.** *Հայ լեզուի արմատ բառերուն մէջ կրկնուած ձայնաւոր չկայ ։ Գալով բաղաձայններուն, քանի մը*

արմատ բառերու մէջ միայն կը հանդիպինք անոնց կըրկնութեան, ինչպէս. ճճի, դդում, տարր, թթու, եւայլն։

**31.** «Ա» ՁԱՅՆԱՒՈՐԸ. — Ա ձայնաւորը բառին վերջը առանձին չի մնար, այլ յ կ'առնէ. պարուքայ, ընծայ, ակռայ, կ'երթայ: Բացառիկ են. 1. Ապա, սա, ահա, հապա, ասիկա, ատիկա, անիկա։ 2. Օտար լեզուէ առնուած բառերը. ղուբիա, պանիա, ակադեմիա, եւլն։ 3. Յատուկ անունները. Աննա, Սահարա, եւլն.։ 4. Բայերուն հրամայականները. ղողա՛, կարդա՛, եւլն.։

**32.** Ւ ձայնաւորին ւէն զատ ձայնաւոր գիր չի յաջորդեր, և ամէն անգամ որ ւը ւին յաջորդէ, վի ձայն կը հանէ, ու բաղաձայնի ոյժ ունի, ինչպէս. թաւական (թա-վական), եւլն.։ Իսկ յ բաղաձայնը, երբ ւին յաջորդէ, է ի ոյժ կ'ունենայ, ինչպէս. ծառայական (ծառա-եական), մեծնեայաբար (մեծնեա-եաբար), եւլն.։

**33.** «Ե» ՁԱՅՆԱՒՈՐԸ. — Ե ձայնաւորը բառին վերջը չի մնար երբեք. չ'ըսուիր կը տեսնե, այլ կը տեսնէ. այսպէս՝ բազէ, բամբէ, ոստրէ, խօսէ՛, եւայլն։

**34.** Երբ բառի մը մէջ վերջընթեր գրէն առաջ է ձայնը հնչուի, միշտ է կը գրուի, և երբեք ե, ինչպէս բերան, եկեղեցի, մեղեդի, բացի բարդուած և հոլովուած այն բառերէն, որոնց մէջ է կայ արդէն և չի փոխուիր. օրէնադիր, վրէժխնդիր, ամէնէն:

**35.** Ե գրին կը յաջորդեն ձայնաւոր տառերէն՝ ա և ո միայն. որդեակ, արեւ. ԺԹ. դարէն յետոյ, է էն եւքը օ ալ սկսած է գործածուիլ, քանի մը բառերու մէջ, ւի տեղ, ինչպէս. եօթը (ե-թն), արդեօք (արդե-ք)։

**36.** «Զ» ԵՒ «Ս» ԲԱՂԱՁԱՅՆՆԵՐԸ. — Դիտուած է որ Զին կը յաջորդեն ընդհանրապէս միջակ բաղաձայնները, այսինքն բ, գ, դ, եւլն. մինչդեռ Սին կը յաջորդեն թաւերը, այսինքն փ, ք, թ, եւլն: զբաղիլ, զգոյշ, ազդել, սփոփել, սքանչանալ, սթափիլ:

**77.** «Ը» ՁԱՅՆԱՒՈՐԸ. — Ը ձայնաւորը բառերուն մէջտեղը, երկու բաղաձայնի միջեւ, կը հնչուի, բայց չի գրուիր. սակայն բացառաբար կը գրուի հետեւեալ պարագաներուն մէջ.

1. Տողադարձի ատեն, ինչպէս. մը-խիթարել, տարտըղ-նել:

2. Ոտանաւորի մէջ, վանկի մը գոյութիւնը զգալի ընելու համար.

Ու դեռ ոչ որ զայն վըհատուած կը կարծէ,
Այդ անօթին մի՛ դըպչիք դուք, կոտրած է։

3. Բարդութեանց մէջ, ինչպէս, տասնըմէկ, հասընտիր:

4. Ժամանակ ցուցնող կարգ մը բառերու բացառականին մէջ, ինչպէս. երէկուընէ, հիմակուընէ, եւայլն:

5. Մըն, անցընել; հոտուըտալ, կռուըտիլ, տըւչութիւն, եւ ասոնց նման կարգ մը բառերու մէջ:

**78.** «Խ» ԲԱՂԱՁԱՅՆԸ. — Խ բաղաձայնին կը յաջորդէ միշտ տ եւ երբեք դ. ախտ, ճախտ, բախտ:

**79.** «Յ» ԳԻՐԸ. — Յ գրէն առաջ միայն ա եւ ո կու գայ, եւ կը կազմէ այ, ոյ երկբարբառները։ Բացառիկ են մէյ մը, մէյ մէկ, էյնալ, Էյ եւ օտար բառերը՝ թէյ, պէյ, եւայլն։

**80.** «Ն» ԲԱՂԱՁԱՅՆԸ. — Ն գիրը երբեմն մ ի կը փոխուի բ, պ, փ բաղաձայններուն առջեւ, ինչպէս. ամբիծ (անբիծ), ամպարիշտ (անպարիշտ), ամփոփ (անփոփ), եւայլն։

**81.** «Շ» ԲԱՂԱՁԱՅՆԸ. — Շ բաղաձայնին կը յաջորդէ գրեթէ միշտ տ եւ ո՛չ դ. վիշտ, հաշտ, դաշտ։

**82.** «Ո» ՁԱՅՆԱՒՈՐԸ. — Ո ձայնաւորով բառ չի վերջանար, այլ օ՛ին քով յ կը դրուի միշտ, ինչպէս. թրածոյ, մածառոյ, տպածոյ, եւայլն։

**83.** Ո ձայնաւորէն ետքը ձայնաւոր տառերէն միայն ւ կրնայ գալ, և կը կազմէ ու երկբարբառը։

**84.** «Ջ» եւ «Ձ» ԲԱՂԱՁԱՅՆՆԵՐԸ. — Դիտուած է որ ղ և ր նայ տառերէն վերջը միշտ ջ կու գայ. աղջիկ, աղջամուղջ, գաղջ, գեղջուկ, զղջում, եղջիւր, շեղջ, ողջ, չղջիկ, եւայլն. խուրջ, կամուրջ, մրջիւն, շուրջ, սերջանք, երջանիկ, որջ, վերջ, շուրջ, եւայլն։ Բացառիկ են միայն ձեղձ, մորձ և խաւարձուտ բառերը որոնք ձով կը գրուին։

**85.** «Ռ» եւ «Ր» ԲԱՂԱՁԱՅՆՆԵՐԸ. — Ռ և ր բաղաձայններով սկսող հայ բառ գրեթէ չկայ։ Փոխանակ ռ-ի և ր-ի, հռ և հրով կը սկսին բառերը, ինչպէս. հռնջիւն, հրապարակ, հրապուրիչ, հրաւէր, եւայլն։

**86.** «Ւ» եւ «Վ» ԳԻՐԵՐԸ. — Ւ գրէն առաջ միայն ա, ե, է, օ կրնան գալ, ինչպէս. գաւառ, տերեւ, հագէւ, գնչու, եւլն։ Բացառիկ են տըւչութիւն բառը և ւ վերջացող բառերուն սեռականները. հոգւոյ, տաււոյ։ Նոյնպէս ոտանաւորի և տողադարձի ատեն ը-էն առաջ ւ կրնայ գալ, և կարելի է գրել զըւարթ, ճըւաք, եւայլն։

**87.** Ւ-ի տեղ վ կը գործածուի բառերուն սկիզբը վ-ի ձայնը տալու համար, ամէն գրի քով, ինչպէս. վրէժխնդիր, վարդագոյն, վկայ, եւայլն։

**88.** Բառերուն մէջտեղը վ-ի ձայնը գրեթէ միշտ ւ տառով կը նշանակուի, ինչպէս. նաւորդ, հաւնիլ, տեւական, եւայլն։

**89.** Բայց երբ վ-ի հնչումէն առաջ օ ձայնաւորը գայ, այն ատեն վ կը գործածուի. ժողովուրդ, խորովել, խոստովանիլ, գովեստ, սովորոյթ։ Բացառիկ են.

1. ժողվել (որ ժողովելի կրճատումն է), սորվիլ (որ սովորիլի կրճատումն է), թօթվել (որ թօթովելի կրճատումն է)։

2. Այն բառերը որոնք վ-ով սկսած բառով մը կ'ա-

ծանցուին կամ կը բարդուին . Օվանէr , Նօֆեմվarf , ըօ-
րօվiar ։

**90.** Վէէլի հնչումը բառերուն վերջը միշտ -ով կը նշանակուի, բացի այն պարագայէն, ուր Վէն առաջ օ ձայնաւորը գտնուի, ինչպէս . գոrօվ , ձայնօվ , բօվ , եrբաղօվ ։

**91.** Նոր օտար բառերու մէջ, հակառակ հայ ուղղագրութեան օրէնքին, հիմայ սովորութիւն եղած է միշտ Վ գործածել, ինչպէս . Թrանսվաալ , Սէվէլo Բէղ-վifo , Սթավrօpօլ , եայլն ։

**92.** «Օ» ՁԱՅՆԱՒՈՐԸ . — Օ էն առաջ ձայնաւոր գիր չի գար և օ ձայնաւորով բառ չի վերջանար հայ լեզուի մէջ ։ Անոր պատճառը այն է որ օ ձայնաւորը ԺԱ. դարէն առաջ միայն սկսաւ գործածուիլ աւ երկ-բարբառին տեղ, ամէն անգամ որ աւ-ը բառին վերջը չէր գտնուեր կամ իրմէ վերջը ձայնաւոր գիր չէր գար, ինչպէս . աւ-r-օr , աւ-գուs-օգուs , աւ-rհնեալ-օrհնեալ , Աւ-գուsnu-Օգուsnu ։ — Օ էն առաջ չի կրնար գալ նաև յ տառը ։

**93.** Այն օտար բառերը որոնք օ կը վերջանան, հոլովման մէջ ալ ոչ ձայնաւոր կրնան առնել իրենցմէ առաջ և ոչ յ, այլ օն կը փոխուի ոյի . Հիւկօ չ'ըլլար Հիւկօէ կամ Հիւկօի, այլ Հիւկոյէ, Հիւկոյի, եայլն ։

**94.** Բացառաբար օ ձայնաւորէն վերջը յ կը գործածուի եօ բաղադրեալ ձայնաւորով վերջացող օտար բառերու հոլովման մէջ, և կը գրուի եօյէ , եօյէ , եօյով, ինչպէս . Ռիշլիkօ , Ռիշլիkօյի , Ռիշլիkօյէ , Ռիշլիkօյով ։

**95.** Հայ ուղղագրութեան օրէնքներուն ուսումնասիրութեամբ կը տեսնենք թէ ձայնաւորներէն ոմանք իրարու քով չեն գար երբեք հայերէնի մէջ, ինչպէս . աե, աէ, աի, աա, աօ, ոե, ոէ, ոի, ոօ, օե, օի, օէ, օա, եւլն. ։ Այս ձեւերուն տեղ կը գործածուի այէ (այէr) , այk (Իsաղիայk) , այի (կարդայի) , այո (այո՛) , ոյէ (էrէկոյեան) ,

ոյի (բռածոյի), ոյէ (Պօտոյէ), ոյո (հաւաքածոյով), եւն։

**96.** Նոյնպէս իրարու քով չեն գար հայ բառերու մէջ էօ, էյ, էօյ, օա, եայլն։ Սակայն կարգ մը օտար բառերու մէջ ստիպուած ենք վերոյիշեալ ձեւերը գործածել, ինչպէս. Եօ–նկ, Մանչեսթն, Ռէօյ Պլաս, Պօա։

**97.** ԼԾՈՐԴ ՏԱՌԵՐ. — Լծորդ կը կոչուին այն տառերը որոնք իրարու տեղ կրնան գործածուիլ, ինչպէս ձ եւ ծ. գանձ եւ գծուծ։

**98.** Լ եւ Ղ տառերը մանաւանդ յաճախ իրարու տեղ գործածուած են հին օտար անուններու մէջ. Գղասոն եւ Գլասոն, Հերակլ եւ Հերակղ, Աղեքսանդր եւ Ալեքսանդր։

### ՈՒՂՂԱԳՐԱԿԱՆ ՆՇԱՆՆԵՐ

**99.** Ուղղագրական նշաններն են ապաթարց (') եւ միութեան գիծ (–)։

**100.** ԱՊԱԹԱՐՑ. — Ապաթարցը կրճատուած ձայնաւորի մը տեղ կը դրուի հետեւեալ պարագաներուն մէջ.

1. Երբ սահմանական ներկայ եւ անկատար կազմող կը մասնիկը ձայնաւորով մը սկսող բայի մը հանդիպի. կ'ուզեմ, կ'երգեմ։

2. Երբ բացասական բայի մը սահմանական ներկայ երրորդ դէմքին չին ձայնաւորով սկսող բայի մը հանդիպի. չ'ուզեր, չ'երգեր։

3. Տաղաչափութեան մէջ՝ կրնայ գործածուիլ ուրիշ առթիւ ալ, ինչպէս. մ'ալ փոխանակ մըն ալ, մ'ուսեր փոխանակ մի' ուսերի։

**101.** ՄԻԱՑՄԱՆ ԳԻԾԸ. — Միացման գիծը կը գործածուի գլխաւորաբար.

1. Միացնելու համար երկու բառեր. Հայ-Հռոմ, Հնդիկ-գերմանական։

2. Երկու թուանշանի միջեւ մինչեւ նախադասութեան տեղ, ինչպէս. Կ. Պոլսոյ առաջին հայ Պատրիարքը, Յովակիմ, պաշտօնավարեց 1461էն 1478. իրեն յաջորդեցին Նիկողայոս (1478-1489), Կարապետ (1489-1509), եւայլն:

ԳԼԽԱԳՐԻ ԳՈՐԾԱԾՈՒԹԻՒՆ

**102.** Գլխագիր կը դրուի հետեւեալ պարագաներուն մէջ.

1. Գրուածքի մը սկիզբը. Կեանքը պատերազմութեանց շարք մըն է:

2. Վերջակէտէ մը վերջը. Հաւատքը մարդուս ամենէն մեծ ապաւէնն է: Երջանիկ են անոնք որ հաւատքով կ'ապրին:

3. Ոտանաւորներու մէջ ամէն տողի սկիզբը.

Թէ երջանիկ ըլլալ կ'ուզես,
Երբեք քաղձանք մ'ունենար.
Կեանքը կարճ է. ինչո՞ւ յուզես
Անոր ալքերն անդադար:

4. Միջակէտէ մը վերջը, երբ ուրիշին խօսքերը կը յիշենք կամ գիրքէ մը վկայութիւն կը բերենք ընդհանրապէս չակերտով. Մայրս կ'ըսէր ինծի. « Ամեն բան զոհէ' ընտանիքիդ երջանկութեան, բաց ի պատիւէդ:»

5. Գրական որ և է երկի մը (վէպ, քերթուած, ելն.), երաժշտական հեղինակութեան մը, նկարի մը, արձանի մը, նշանաւոր շէնքի մը, յիշատակարանի մը անունը, ինչպէս. Պարոնեանի Թատրոնը (լրագիր), Տիկին Տիւսաբի Վարժուհին (վէպ), Պետրոս Դուրեանի Լճակը (քերթուած), Պելլինիի [illegible] (դաշներգ), Այվազովսքիի Փոթորիկը Սեւ ծովուն եզերքը (նկար), Բօղ Տիւպուայի [illegible] (արձան), Գում-Գաբուի Մայր եկեղեցին

(շէնք), Բարիզի Քաղաքական կանոնը (յիշատակարան):

6. Աստուած բառը և անոր հոմանիշները, ինչպէս. Արարիչ, Նախախնամութիւն, Տէր, Ամենակարող, ևլն:

7. Համաստեղութեանց, աստղերու և մոլորակներու անունները, ինչպէս. Ցուլ, Կարապ, Վիշապ, Ծնիկ, Փայլածու:

8. Գիրքի մը, ընկերութեան մը, շոգենաւի մը, ևլն. անունը, ինչպէս. Բերայի Ամերիկեան Քոլէճը, Իռնէօ ապահովագրական ընկերութիւնը, [illegible] շոգենաւը, ևայլն:

9. Անձնաւորուած վերացական անունները, ինչպէս Արդարութիւնը, Նախանձը, ևայլն:

10. Դիցաբանական անուն դարձած հասարակ գոյականները, ինչպէս. Երեք Շնորհքները, Ինը Մուսաները, ևայլն:

11. Յատուկ անունի մը անբաժան կերպով միացած ածականները, ինչպէս. Սեւ Ծով, Յովսէփ Գեղեցիկ, Դաւիթ Անյաղթ:

12. Բոլոր յատուկ անունները, ինչպէս.

Ա. Դիցաբանական աստուածութեանց անունները. Նանէ, Արամազդ, Արհմն, Ոսիրիս, ևայլն:

Բ. Անձերու անունները. Եղիշէ, Կղէոպատրա, Արիստոտէլ:

Գ. Ժողովուրդներու անունները երբ իբր գոյական գործածուին. Հայ, Յոյն, Ֆրանսացի:

Դ. Աշխարհագրական անունները (երկիր, քաղաք, ծով, գետ, լեռ, ևլն.). Եւրոպա, Կ. Պոլիս, Մարմարա, ևայլն:

**103.** Պէտք չէ գլխագիր գործածել.

1. Երբ ժողովուրդի մը անունը իբր ածական գործածուի. հայ բանաստեղծ մը, յոյն կին մը, ֆրանսացի դերձակ մը:

2. Երբ յատուկ անունէ մը ածական մը կը շինուի․ եւրոպական քաղաքակրթութիւն, ամերիկեան երկաթուղիներ:

3. Զանազան կրօնքներու կամ աղանդներու անուններ, ինչպէս․ քրիստոնէութիւն, պուդդայականութիւն, արեւապաշտութիւն, հռոմէականութիւն, բողոքականութիւն, եւայլն:

4. Դիցաբանութեան մէջ, ջուրերու և անտառներու աստուածութիւնները․ նայեադներ, դրեադներ, փաւոնաններ, այծամարդեր:

5. Ամիսներու և օրերու անուններ․ յունուար, փետրուար, երկուշաբթի, երեքշաբթի, եւայլն:

6. Արեւ, լուսին, երկիր երբ իբր հասարակ անուն գործածուին․ արեւը մայր մտաւ, լուսնի լոյսին, երկրիս բնակիչները:

---

## ՀՐԱՀԱՆԳՆԵՐ

---

### ՔԱՐԱՑՈՒՄ.

Եթէ ջուրին մէջ կտոր մը աղ կամ պաղլեղ ձգենք, կ՚աներեւութանայ․ բայց ետքը, եթէ արեւը դնելով թող տանք որ ջուրը ցնդի, հալած մարմինը վերստին երեւան կ՚ելլէ․ ասկէ կ՚իմանանք որ ջուրին մէջ հալելով աներեւութացած մարմին մը կրնայ վերստին երեւան ելլել:

Ասանկ ալ ջուրեր կան, որոնց կազմութեան մէջ կը գտնուին կիր, ածխային թթու, եւայլն, որոնք երկրիս ներսը գտնուած ատեննին՝ հալած վիճակի մէջ են․ իսկ երբ այդ ջուրերը սկսին դուրս բղխել և օդին ներկայանալ՝ ածխային թթուին մէկ մասը օդը տանելով կը ցնդի, և կիրը ջուրին յատակը կ՚իջնէ, ու հոն կը մնայ

կարծրանալով։ Եթէ բղխած ջուրը վազուկ առուակ մը կամ գետ մըն է, ջուրին մէջ հալելու և վերստին երեւան ելլելու կարող նիւթերը ճամբուն վրայ կամաց կամաց կը քարանան, և Անտիպարոսի, Ատելապէրկի ու Փամփուք Գալէսիի պէս շատ մը քարանձաւներ կը կազմեն։ Ահա՛ այս դիւրին օրինակով կրնանք հասկնալ թէ քարացումը ինչպէս կ՚ըլլայ։

Տեսակ մը մամուռ կայ, որ ջուրին մէջ եղած ատեն կակուղ է, բայց երբ ջուրը չոգիանայ, ինքը այնքան կարծր քար մը կը դառնայ, որ մուրճով անգամ չի կոտրիր։

Գայլախազ, ածուխ, ելն. պարունակող ջուրերը շատ անգամ կը պատահի որ երկաթախառն ջուրերէ և աւազի շարքերէ անցնելով՝ աւազի հատերը իրարու կը կպցնեն, և ասոնք բոլոր բովանդակ քար կը կտրին, երբ իրենց ջուրերը ցնդին։

Երբեմն կը պատահի որ տերեւներ, տունկեր և մինչեւ անգամ ձուկեր ջուրին մէջ եղած ատեննին կակուղ խաւերու կը հանդիպին, և ջուրը ցնդելով երբ խաւը կը սկսի կարծրանալ՝ իրեն հետ գտնուող ամէն բան իր մէջը կը մնայ. եթէ հոն մնացած մարմինները դիմացկուն մարմիններ չեն, խոնաւութենէ կը քայքայուին ու կը փտտին. սակայն իրենց պատկերը քարին վրայ կը դրոշմուի։ Այս պատճառով է որ ձուկերու քարացման պատկերներ շատ կան քարերու վրայ։

ԳԱԼՈՒՍՏ ԿՈՍՏԱՆԴԵԱՆ[1]

17 Ուղղագրութեան օրէնքներու համեմատ սրբագրել հետեւեալ խօսքերուն մէջի սխալները.

*Երբ գործողութիւնը խորհրդածութենէն առաջ անցնի, զղչումը կը հէտէվի անոր։ — Առտուն ընելիք բարիքըդ իրիկվան կամ ւաղվան մի՛ ձգեր։ — Իրավունք ունէնալը չի բավեր, պետք է մարդ իր գաղափարները պաշտպանե խէլացութեամբ և արժանապատուութեամբ, և ոչ թե անմիտ խօսքերով։ — Բարիքը տէսակ մը սափոր է։ — Խէլացի մարդը միշտ խէն-*

(1) Իզմիրցի հայ գիտուն որ թողած է գիտական աշխատասիրութիւններ. մեռած է 1898ին։

դէն կը վախնաս։ — Չկայ աւելի անհաճոյ բան մը որքան դաժան կերպարանք մը։ — Տուն դարձայ։ — Թախիծ չունիմ։ — Գրականութեամբ կը զբաղիմ և անով կը սփոփուիմ։

---

## ՁԿՆՈՐՍԸ

Կոհակը կը մռնչէր, կոհակը կ'ուռէր, ձկնորս մը նստեր էր ծովափը. հանդարտ՝ կարթին կը նայէր, մինչեւ սրտին խորը զովութեամբ կազդուրուած։ Եւ մինչ նստեր՝ կը դիտէր, ալիքը բարձրացաւ ու ճեղքուեցաւ, և ծփացիկ կոհակին ալքերէն ջրաթաթաւ պարիկ մը դուրս ելաւ աղմուկով։

Եւ երգեց անոր ու ըսաւ. «Ինչո՞ւ մարդկային խորամանկութիւններով ու հնարքներով ձուկերս վեր կը քաշես դէպի մահաղդեցիկ ջերմութիւնը։ Ո՜հ, եթէ գիտնայիր թէ փոքրիկ ձուկը ինչ հանգիստ է կոհակներուն խորքին մէջ, դուն ալ հոն պիտի իջնէիր, և հանգիստ պիտի ըլլայիր։

«Չե՞ս տեսներ չքնաղ արեւը, լուսինը որ ծովուն մէջ կու գան զովանալ։ Իրենց դէմքը ալիքներուն վէտվէտումին մէջ կրկնապէս չէ՞ գեղեցկանար։ Դուն ալ չե՞ս հմայուիր սա խորունկ երկինքէն, սա նամէտ և շողշողուն կապոյտէն. չե՞ս հմայուիր նոյն իսկ քու պատկերէդ որ կը ցոլանայ յաւերժական ցօղին մէջ։»

Կոհակը կը մռնչէր, կոհակը կ'ուռէր, կը թրջէր անոր բոպիկ ոտքը, և սիրտն ալ լեցուեցաւ ըղձանքներով։ Եւ պարիկը խօսեցաւ անոր, երգեց անոր. ա՛լ մարդուն գործը լմնցեր էր։ Քիչ մը ծովուն պարիկը քաշեց զայն, քիչ մըն ալ ան ձգեց ինքզինքը, և ա՛լ երբեք երեւան չելաւ ձկնորսը։

ԿԷՕԹԷ[1]

---

(1) Գերմանացի մեծ բանաստեղծ, խորհող, գիտուն և արուեստագէտ. ծնած է Ֆրանկֆորթի մէջ 1749ին, և մեռած 1832ին։

18. Գոց սորվիլ այս հատուածը, և բարձրաձայն արտասանել զայն։

19. Լուծել բերանացի այս հատուածին վերջին վեց տողերը։

20. Գլխագիր ընել հետեւեալ խօսքերուն մէջ հարկ եղած տեղերը.

*ժԸ. դարուն մէջ պոլսեցի հայ աղջիկ մը՝ մարիամ քարաքաշեան գրած է անձն հոգւոյ անուն գիրք մը, որ տպուած է վենետիկ։ — քանըհինգ տարի առաջ օրիորդ մենիկ (տիկին Թագուհի մելիք ազարեանց) գրած է գարնան մի աստղ անուն նորավէպ մը, որ հրատարակուած է իզմիր։ — օրիորդ կեսարացեան հրատարակած է էջկիրառ անուն Թերթ մը։ — տիկին տասիէ ֆրանսացի գրագիտուհին Թարգմանած է հոմերոսը իր լեզուին։ — տիկին տը մէնԹընոն՝ ֆրանսացի՝ լուդովիկոս ժդ.ի զաւակները դաստիարակած է։ — սէկիւր ֆրանսացի կոմսուհին տղոց յարմար վիպակներ գրած է։ — էլիզապէԹ պարէԹ պրաունինկ ժԹ. դարուն մէջ անգլիոյ նշանաւորագոյն բանաստեղծուհին եղած է։ — տիկին տը սէվինեէի նամակները մայրական սիրոյ հրաշակերտներ են։*

# ՏԱՌԱԴԱՐՁՈՒԹԻՒՆ

## ՅԱՏՈՒԿ ԱՆՈՒՆՆԵՐ

**104.** ՀԻՆ ՕՏԱՐ ԱՆՈՒՆՆԵՐ. — *Այն յատուկ անունները, որոնք կը վերաբերին հին ազգերու, հայերէնի վերածուած են եւ կը վերածուին ըստ այն հնչմանց զոր հայ տառերը ունէին երբեմն։ Այդ տառադարձութեան սկզբունքները ճշդելու համար կը դնենք հետեւեալ ցուցակը, հիմ ունենալով մեզի լատինական տառերը, և տառադարձուած անուններուն քով կը նշանակենք ֆրանսերէն ձեւերը, որոնք լատիներէնէ աւելի ծանօթ են հայ ուսանողներուն.*

| Լատին տառ | Հայ տառ | Հայերէն | Ֆրանսերէն |
|---|---|---|---|
| *a* | *ա* | *Արիստոփան* | Aristophane |
| *b* | *բ* | *Բաքոս* | Bacchus |
| *c, k, q* | *կ* | *Կատոն* | Caton |
| *d* | *դ* | *Դամոկլէս* | Damoclès |
| *e* | *ե կամ է* | *Մերոպէ* | Mérope |
| *f* | *փ* | *Աֆրիկէ* | Afrique |
| *g* | *գ* | *Գողգոթա* | Golgotha |
| *h* | *հ* | *Հիպոկրատ* | Hippocrate |
| *i* | *ի* | *Իսրայէլ* | Israël |
| *j* | *յ* | *Յուդիթ* | Judith |
| *l* | *լ կամ ղ* | *Աղեքսանդր, Պղատոն* | Alexandre, Platon |
| *m* | *մ* | *Մենելաս* | Ménélas |
| *n* | *ն* | *Նումա* | Numa |

| | | | |
|---|---|---|---|
| *o* | ո կամ ով | Ոսիրիս, Ենովք | Osiris, Enoch |
| *p* | պ | Պենելոպ | Pénélope |
| *r* | r կամ ռ | Արկադիա, Ռաֆայել | Arcadie, Raphaël |
| *s* | ս | Ժազոն | Jason |
| *t* | տ | Տիթիւս | Titus |
| *u* | ու | Պլիւտոն | Pluton |
| *v* | ւ կամ վ | Վեստա, Դավիդ | Vesta, David |
| *x* | քս | Քսերքսես | Xerxès |
| *y* | իւ կամ ի | Կիւրիւս, Սֆինքս | Cyrus, Sphinx |
| *z* | զ | Զենոն | Zénon |
| *ch* | ք | Քրիստ | Christ |
| *ph* | փ | Սոփոկլ | Sophocle |
| *th* | թ | Թալես | Thalès |
| *au* | աւ, ով կամ օ | Կովկաս, Կօկազ; Պօղոս | Caucase, Paul |
| *eu* | եւ | Եւրոպա | Europe |
| *aë* | այէ կամ այե | Իսրայէլ | Israël |
| *aü* | աիւ | Սաիւլ | Saül |
| *aï* | այի | Թեբայիդ | Thébaïde |
| *oa* | ովա | Ժօաշիմ | Joachim[1] |

**104.** L տառը թէ՛ ղով եւ լով կը տառադարձուի, և գրողներուն ճաշակին համեմատ երկուքն ալ գործածուած են. Ալեքսանդր և Աղեքսանդր։

**105.** S տառը ընդհանրապէս սի կը վերածուի, ինչպէս Սկիպիոն, *Scipion*, Ստրաբոն, *Strapon*. սակայն բ, գ, դ, մ և ն տառերէն առաջ զի կը փոխուի, ինչպէս. Զմիւռնիա, *Smyrne*, եւայլն։

**106.** V տառը բառերուն սկիզբը միշտ վի, և

---

(1) Նոյնպէս ao կ՚ըլլայ օյ կամ օա, ae է կամ է. oe է կամ է, oë ոէ. եւայլն։

մէջտեղը կամ վերջը –ի կը փոխուի , ինչպէս Վ ատիկան , Vatican , Բատաւիա , Batavia . բայց երբ բառերուն մէջտեղ V գայ , ձայնաւորէն ետքը միշտ Վ կը դրուի , — երկբարբառին հետ չշփոթելու համար . Ովիդիոս , Ovide :

**107.** R գիրը բառերուն սկիզբը Ռ ի կը փոխուի, ինչպէս . Ռափայէլ, Raphaël ; և բառերուն մէջտեղն ու վերջը ր ի կը փոխուի ընդհանրապէս , ինչպէս . Սոկրատ, Socrate , Պիւթագոր , Pytagore : Իսկ Ն տառէն առաջ՝ միշտ –ի կը փոխուի . Կոռնելիոս , Cornelius , Բառնաբաս , Barnabé :

**108.** Շատ անգամ բառերուն սկիզբը –էն առաջ Հ կը դրուի . Հռոմ , Rome :

**109.** Սովորութիւն եղած է շատ տեղ Ն տառը զեղչել տառադարձութեան մէջ. Կոստանդնուպոլիս, Constantinople , Ադրիանուպոլիս , Andrinople , Վաղէս, Valens :

**110.** Us և um լատին վերջաւորութիւնները ընդհանրապէս յունական ձևով կը գրուին ոս և ոն . Արգոս, Argus . Փրանսերէնի մէջ յաճախ այդ վերջաւորութիւնները կը ջնջուին , իսկ հայերէնի մէջ քիչ անգամ . Հերետիկոս , hérétique :

**111.** Պէտք է դիտել թէ հին յատուկ անունները հայերէնի վերածուած են ընդհանրապէս հետեւողութեամբ յոյն, լատին կամ ասորի ձեւերուն, որոնցմէ կը տարբերին երբեմն փրանսական ձեւերը :

**112.** ՆՈՐ ՕՏԱՐ ԱՆՈՒՆՆԵՐ . — Բոլոր այն օտար յատուկ անունները , որոնք կը վերաբերին նոր ազգերու , հայերէնի մէջ կը գրուին հայ տառերու արդի հնչմանց և իւրաքանչիւր ազգի բնիկ արտասանութեան համաձայն , ինչպէս . Նիւ-Եորք (*New York*), Մանչեսթըր (*Manchester*) , Պորտօ (*Bordeaux*), Պոքաչչիօ (*Bo-*

caccio)։ Այս սովորութիւնը մուտ գտած է վերջին ատեններս թէ՛ աշխարհաբար և թէ՛ գրաբար գրուածքներու մէջ, թէև կարգ մը նոր անուններ ալ հին անուններու տառադարձութեամբ կը գործածուին յաճախ, ինչպէս. Միլտոն, փոխանակ՝ Միլթընի (Milton), Նևտոն, փոխանակ՝ Նիութընի (Newton), Կոպեռնիկոս, փոխանակ՝ Քոփերնիքի (Copernic), և այլն։

**113.** Օտար հնչումները հաւատարմօրէն արտայայտելու համար, զանազանութիւն չի դրուիր հիմայ բ եւ փ, դ եւ թ, գ եւ ք, ց եւ ձ, չ եւ ջ, ո եւ օ, կ եւ կ տառերուն միջեւ, ու անոնք հաւասարապէս կրնան գործածուիլ. սակայն աւելի յաճախ կը գործածուին բ, թ, ք, ց, չ, օ, կ:

ՀԱՍԱՐԱԿ ԱՆՈՒՆՆԵՐ

**114.** ՀԻՆ ԼԵԶՈՒՆԵՐՈՒ ՅԱՏՈՒԿ ԲԱՌԵՐ. — Յունարէնի յատուկ կարգ մը հասարակ անուններ ալ յատուկ անուններու տառադարձութեան սկզբունքներուն համաձայն հայերէնի վերածուելով գործածուած են մեր լեզուին մէջ, ինչպէս. կաղաւնար, փոս, մեղեդի, փիլիսոփայ, եւայլն։ Իսկ շատ մը պարսկերէն, արաբերէն, ասորերէն բառեր ալ հայացած են զանազան տառերու փոփոխմամբ, ինչպէս. աբեղայ, գուբ, թարգման, ղումայ, կատու, եւայլն (ասորերէնէ), ազապ, բակլայ, սպատինճան, եւայլն (արաբերէնէ), հազար, պատուհան, դահլիճ, շտապ, եւայլն (պարսկերէնէ)։

**115.** ՆՈՐ ԼԵԶՈՒՆԵՐՈՒ ՅԱՏՈՒԿ ԲԱՌԵՐ.—Նոր լեզուներու յատուկ (ֆրանսերէն, անգլիերէն, եւայլն) հասարակ անունները հայերէնի մէջ կը գրուին ընդհանրապէս ճի՛շդ այնպէս ինչպէս կը հնչուին այդ լեզուներուն մէջ. ալքօլ, ռըսքլիկօթ, պիֆթեք, ֆռաք, ֆագիլօ, ֆլանէլ, քայ-լայֆ, եւայլն։

## ՀՐԱՀԱՆԳՆԵՐ

---

## ՊՂԱՏՈՆ

*Պղատոն յոյն փիլիսոփայ մըն էր, որ ծաղկեցաւ Աթէնքի մէջ Քրիստոսէ 430 տարի առաջ։ Ութը տարի Սոկրատի աշակերտելէ ետքը, անոր մահէն յետոյ թողուց Աթէնքը, եւ շրջեցաւ Արեւելք ու Եգիպտոս, ուր կրօնական եւ գիտական վարդապետութեանց միջամտեց։ Դարձին՝ բնակեցաւ Սիրակուսա, երկու Դիոնեսիոսներուն ապարանքը, որոնցմէ նախ սիրուեցաւ, ու յետոյ հալածուեցաւ։ Պղատոն օրէնք տուաւ Կրետացւոց եւ Թրակացւոց, ու մեռաւ գրեթէ ութսուն տարեկան, մեծարուելով բոլոր լուսաւորեալ աշխարհէն։ Պղատոն Աթէնքի մէջ՝ Ակադեմոսի պարտէզը դաս կու տար, որով իր դպրոցը Ակադեմիա կոչուեցաւ։ Պղատոնի վերագրուած շատ մը գրուածներ կան, որոնց գլխաւորներէն է Սոկրատայ ջատագովութիւն կոչուած գիրքը, խօսակցութեան կամ տրամախօսութեան ձեւով գրուած։*

**ՄԱՏԱԹԻԱ ԳԱՐԱԳԱՇԵԱՆ** (1)

**21.** Չրուցագրել այս հատուածը, յետոյ բերանացի ըսել թէ անոր մէջ գտնուած յատուկ անուններուն գիրերը լատինական ո՛ր տառերուն կը համապատասխանեն.

**22.** Հետեւեալ ֆրանսերէն յատուկ անուններուն հայերէնները նշանակել տառադարձութեամբ.

Mentor, Atlas, Nestor, Memphis, Péloponèse, Hector, Patrocle, Lacédémone, Agamemnon, Crète, Priam, Cupiton, Pandore, Triton, Amphitrite, Thétis, Narcisse, Adonis, Iris, Cadmus, Philoctète, Pan, Castor, Hippolyte, Danube, Cicéron, Brutus, Daphnis, Melpomène, Philémon, Marcellus.

---

(1) Մատաթիա Գարագաշեան՝ ծանօթ հայագէտ և քերական, ոսկեդարեան գրաբար հայերէնով թարգմանած է Լաֆօնթէնի Առակները, և ուրիշ գործեր, ինչպէս նաև հեղինակած կարեւոր դասագիրքեր։ Ծնած է 1818ին։

**Օրինակ.** — Mentor, *Մենտոր*։

23. **Հետեւեալ յատուկ անուններուն հայերէնները նշանակել ոս աւելցնելով.**

Thésée, Olympe, Orphée, Egypte, Chypre, Morphée, Tartare, Saturne, Tantale, Esope, Paul, Quintilien, Sisyphe, Dédale.

**Օրինակ.** — Thésée, *Թեսէ…*։

24. **Հետեւեալ յատուկ անուններուն հայերէնները նշանակել իրենց վերջի e ն ա ի փոխելով.**

Hellade, Phèdre, Italie, Asie, Cythère.

**Օրինակ.** — Hellade, *Հելլադ…*։

25. **Հետեւեալ յատուկ անուններուն հայերէնները նշանակել իրենց վերջի e ն *էս* ի փոխելով.**

Achille, Eschyle, Archimède, Démosthène, Diogène, Diomède, Euripide.

**Օրինակ.** — Achille, *Աքիլլ…*։

26. **Հայ տառերով գրել հետեւեալ նոր յատուկ անունները, և բացատրել անոնց ով կամ ինչ ըլլալը.**

Béranger, Beethoven, Franklin, Gambetta, Lohengrin, Massillon, Garibaldi, Cervantès, Fénelon, Rossini, La Rochefoucauld, Molière, Machiavel, Leibniz, Kant, Gibbon, Boileau, Racine, Bonifacio, Sadi Carnot, André Chénier, Cuvier, Beaconsfield, Faust, Lamennais, Cook, Eugène Delacroix, François Coppée, Sarah Bernardth, Le Sage, Goethe, Irkoutsk, Stockholm, Sandwich, Tolstoï, Adam Smith, Georges Sand, Cambridge, Camoëns, Walter Scott, Wagner, Kamtchatka.

**Օրինակ.** — Béranger, *Պէրանժէ, ֆրանսացի նշանաւոր բանաստեղծ, ծնած է* 1780*ին և մեռած* 1857*ին*։

27. **Հետեւեալ ֆրանսերէն հասարակ անունները, որոնք յունարէնէ առնուած են, վերածել հայերէնի՝ տառադարձութեամբ.**

Citron, sybille, méthode, barbare, hérétique, jacinthe, sphinx, zénith, oasis.

**Օրինակ.** — Citron, *կիտրոն։*

**28.** **Նոր օտար լեզուներու վերաբերող հետեւեալ հասարակ անունները գրել հայ տառերով.**

Omnibus, tunnel, landau, album, macaroni, confetti, gondole, guitare, club, wagon, whist, ananas, quinine, quinquina, tapioca.

**Օրինակ.** — Omnibus, *օմնիպիւս։*

---

## ՄԱՆԻՇԱԿԻՆ ԻՂՁԸ

*Ծաղիկներու դըշխոյն՝ Փլոր*
*Երբ մանիշակն յօրինեց*
*Թիթեռնիկին Թեւաւոր*
*Նուրբ իրանէն լուսայեղց,*
*Եւ դըրաւ բոյր խընկահոտ*
*Անոր ծոցին մէջ բեհեզ,*
*Հարցուց ծաղկին ամըչկոտ.*
*«Դեռ ի՞նչ կ'ուզես որ տամ քեզ.*
*«Տամե՞ր ծաւի, փուշե՞ր սուր,*
*«Ըսէ, աղչիկս իմ փափուկ։*
*«—Քիչ մը տերև ինծի տո՛ւր*
*«Որ զիս պահէ միշտ ծածուկ։»*

**ՀԵՏԵՒՈՂՈՒԹԻՒՆ**

**29.** **Գոց սորվիլ և արտասանել այս ոտանաւորը։**

---

## ՃԱՆՃԱՀԱՒԸ

*Շնչաւոր էակներուն մէջ՝ ամէնէն վայելչաձեւը եւ ամէնէն պաճուճափայլն է ճանճահաւը։ Մարդկային արուեստով յղկուած քարերն ու մետաղները չեն կրնար համեմատուիլ բնութեան այս գոհարին հետ։ Բնութիւնը թռչուններու կարգին մէջ՝ մեծութեան մասին ամէնէն յետին աստիճանին վրայ դրեր է զայն։ Իր հրաշակերտն*

է ճանճահաւը, որուն վրայ միացուցեր է բոլոր այն ձիրքերը, որոնցմէ մէյ մէկ մաս միայն բաշխած է ուրիշ թռչուններու. թեթեւութիւն, արագաշարժութիւն, արագամտութիւն, շնորհք եւ պերճանք, ասոնք ամէնքն ալ տուած է իր փոքրիկ սիրականին։ Զմրուխտը, սուտակը. տպազիոնը կը շողան անոր հանդերձներուն վրայ, զորս երբեք չ'աղտոտեր գետնի փոշիէն, եւ իր օդաալացիկ կեանքին մէջ՝ հազիւ երբեմն կը դպչի մարմանդներուն. միշտ եթերին մէջ կ'ապրի ծաղկէ ծաղիկ սլանալով, եւ անոնց թարմութիւնը ունի, ինչպէս ունի անոնց ցոլքը. անոնց նեկտարովը կը սնանի, եւ կը բնակի այն կլիմաներուն տակ, ուր ծաղիկները մշտանորոգ կը փթթին։

Նոր Աշխարհի ամէնէն ջերմիկ երկիրներուն մէջ կը գտնուին ամէն տեսակ ճանճահաւեր։ Բաւական բազմաթիւ են, եւ կարծես ամէնքն ալ երկու արեւադարձներուն միջեւ քաշուած են, վասն զի ամառը բարեխառն գօտիներու տակ ճամբորդողները շատ քիչ կը կենան. կարծես արեւուն ետեւէն կը պտտին. անոր հետ կը յառաջանան, անոր հետ կը նահանջեն, ու զեփիւռին թեւերուն վրայ կը թռչին յարափթիթ գարունի մը ետեւէն վազելով։

Իրենց կտուցը նուրբ ասեղ մըն է, եւ լեզունին՝ փափուկ դերձան մը. իրենց սեւ աչուկները երկու փայլուն կէտերու կը նմանին. թեւերնուն փետուրը այնքան կակուղ, այնքան բարակ է որ, թափանցիկ երեւոյթ մը կու տայ իրենց։ Այնքան կարճ ու պզտիկ է տոտիկնին որ հազիւ կը տեսնուի. շատ քիչ կը գործածեն զանոնք. միայն գիշերները կը թառին, իսկ ցորեկը օդին մէջ կը սաւառնին։ Իրենց սլացքը անդադրում, բզզուն եւ արագ է. իրենց թեւաբախումը թռչունին թեւածման չափ սաստիկ է, եւ երբ օդին մէջ կենան, ոչ միայն անշարժ՝ այլ եւ կատարելապէս անգործ կ'երեւան։ Մէկ քանի րոպէ կանգ կ'առնեն ծաղիկի մը առջեւ, յետոյ, նետի պէս կը նետուին ուրիշի մը մօտենալու համար։

Այս փոքրիկ թռչունները արտակարգ կերպով եռանդոտ՝ քաջասիրտ՝ կամ լաւ եւս, յանդուգն են. իրենցմէ քան անգամ մեծ թռչուններ կը հալածեն կա-

*տաղութեամբ, անոնց մարմինին կը փակչին, ու հետեր-նին կը թռչին, ճամբան՝ շարունակ կտուցի հարուած-ներ տալով անոնց մինչեւ որ պզտիկ զայրոյթնին յագե-նայ։ Երբեմն ալ իրենց մէջ սաստիկ կռիւներ կ՚ընեն։ Անհամբերութիւնը իրենց հոգին է կարծես. եթէ ծա-ղիկի մը մօտենալով՝ տեսնեն որ խամրած է, շտապով անոր թերթերը մէկիկ մէկիկ կը փետտեն կը նետեն, ինչ որ իրենց զայրոյթը ցոյց կու տայ։ Երգել չեն գիտեր, միայն փոքրիկ ճիչ մը ունին* **սֆռէ՛ք, սֆռէ՛ք**, *զոր կ՚ար-ձակեն յաճախ ետեւէ ետեւ, պուրակին մէջ, արշալոյսէն սկսեալ մինչեւ որ արեւը ճառագայթները սփռէ. յետոյ ամէնքը մէկէն կը թռին, կը ցրուին դաշտերուն մէջ։*

**ՊԻՒՖՕՆ** (1)

**29.** Այս հատուածին հետեւեալ բառերը գործածել մէյ մէկ նախա-դասութեան մէջ.

*Գունափայլ, յղկուած, հրաշակերտ, պերճանք, տուտակ, օդասլացիկ, մարմանդ, եթեր, սլանալ, ցոլք, արեւադարձ, սաւառնիլ, Թեւաբախում, հալածել։*

**30.** Համառօտելով գրել այս հատուածը։



(1) Պիւֆօն, նշանաւոր բնապատում, որ նաև ամէնէն մեծ գրա-գէտներէն մէկն է Ֆրանսայի, ծնած է 1707ին և մեռած 1788ին։ Գրած է Չորքոտանիներու բնական պատմութիւնը։

# ՏՐՈՀՈՒԹԻՒՆ

---

## ԿԱՆՈՆՆԵՐ

**116.** Գրելու եւ կարդալու ատեն բառերը եւ խօսքերը իրարմէ զատելը տրոհութիւն կը կոչուի։ Տրոհութիւնը երկուքի կը բաժնուի. տողադարձ եւ կէտադրութիւն։

### ՏՈՂԱԴԱՐՁ

**117.** Բառի մը մէկ մասը տողին ծայրը թողլով՝ միւս մասը յաջորդ տողը անցընելու կանոնը կը կոչուի տողադարձի կանոն։

**118.** Բառի մը մէկ մասը մէկ տողէն միւսը փոխադրելու ատեն՝ տողին վերջը ենթամնայ նշանը կը դրուի, որ հետեւեալ ձեւը ունի ( ‿ )։

**119.** Տողադարձի, ինչպէս հեգումի համար, հարկ է բառը վանկ վանկ բաժնել. ա-ռողջ, ան-տա-ռա-կոյս։

**120.** Միավանկ բառերը չեն բաժնուիր, ինչպէս. հաց, ջուր, կազմ, կողմ, պարտք։

**121.** Բազմավանկ բառերու մէջ, երբ երկու ձայնաւորի միջեւ մէկ բաղաձայն գիր կայ, բաղաձայնը յաջորդ վանկին կ՚անցնի, ինչպէս. բա-րի, ա-նոյշ։

**122.** Երբ երկու ձայնաւորի միջեւ երկու կամ աւելի բաղաձայն գիր կայ, ընդհանրապէս վերջինը յաջորդ ձայնաւորին կ՚անցնի, ինչպէս. վար-ժուհի, հանգ-չիլ, անձ-կութիւն, շնչաս-պառ, քանաս-տեղծ, պաշտ-պան. նոյնպէս որդ-ւոյ, հոգ-ւոյ, գին-ւոյ, որովհետեւ հոս ւ ձայնաւորը բաղաձայնի ոյժ ունի։

**123**. Երբ բառի մը մէջ գտնուած բաղաձայններուն միջեւ ը հնչումը կը լսուի, տողադարձի ատեն գիրը կը նշանակուի հոն ուր կը հնչուի. **ձեռըն-տու**, **եր-կըրպագու**, **անըզ-գոյշ**, **անպը-տուղ**, **անտըր-տում**, **ծըն-ծղայ**, **սըրս-կել**, **մըշ-տընջենաւոր**:

**124**. Երբ վերջին բաղաձայնը նայ (ղ, լ; ն, մ, ր, ռ) սուր է, կամ թոյլ (ֆ, ս, ժ, շ) բաղաձայն է, ոմանք երկու վերջին բաղաձայնները վար կ'առնեն, ինչպէս. **պա-տրանք**, **եր-կրորդ**, **մա-քրել**, **բար-ձրացնել**, **ա-փսէ**, **ար-բշիռ**, եւայլն: Սակայն հիմայ ընդհանուր կանոնը կը գործադրուի սովորաբար, եւ կը գրուի **պատ-րանք**, **երկ-րորդ**, **մաք-րել**, **բարձ-րացնել**, **ափ-սէ**, **արբ-շիռ**, **դափ-նի**, **ակ-ռայ**, **պատ-րուակ**, **թարգ-ման**, եւայլն:

**125**. Բարդ եւ ածանցեալ բառերու մէջ բացառաբար կարելի է երկու բաղաձայն վար առնել, երբ վերջին բաղաձայնը նայ է կամ թոյլ, եւ վար առնուած մասը արմատ մը կամ բառ մըն է ինքնին. **մեծա-հրաշ**, **մարդա-բնակ**, **նորա-նշան**, **մատենա-գրել**, **նորա-հնար**, **ան-շնորհ**, **ան-բնական**, եւայլն: Այս պարագային երբեք ը տառը չի գրուիր վար առնուած բաղաձայններուն միջեւ, նոյն իսկ երբ հնչուի. այսպէս, չի գրուիր **գերա-կըշիռ**, **աղքատա-խընամ**, **փառա-պըսակ**, եւայլն:

**126**. Երբ բառի մը մէջ երկբարբառներ կան, ընդհանրապէս չեն բաժնուիր, ինչպէս. **պա-տուէր** (եւ ո՛չ **պա-տու-էր**), **պա-տուա-ւոր** (եւ ո՛չ **պա-տու-աւոր**):

**127**. Երբ երկբարբառի մը մէջ ը ը կը հնչուի, կարելի է, տողադարձի ժամանակ, ը նշանակել, եւ երկբարբառը բաժնել. **զը-ւարթ**, փոխանակ **զուարթի**, **նը-ւիրել**, փոխանակ **նուի-րելի**:

**128**. Այ, ոյ, աւ, եւ, իւ երկբարբառները կըրնան բաժնուիլ երբ յէն կամ ւէն անմիջապէս ետքը

ձայնաւոր գայ. խանան–յական, գո–յական, զօր––որ, թէ––ա–ւոր, հէ––անդ:

**129.** Երբ ձայնաւորներ իրարու քով կու գան եւ երկբարբառ չեն կազմեր, կրնան բաժնուիլ. Է-ութիւն, Սամու-էլ:

**130.** Տողադարձի առթիւ կարելի է միակ գիր մը վերի տողին ծայրը ձգել, երբ ձայնաւոր է. Ի-տալացի, Է-ապէս: Իսկ անսովոր է միակ ձայնաւոր մը վարի տողը անցընել. տեսնէ-ի, Ռումանի-ա:

**131.** Երբ տողին վերջը մինակ մնացած գիրը բաղաձայն է, պէտք է ը դնել սկիզբը կամ վերջը հնչումին համեմատ, այսպէս. ըզ-մայլիլ, ըշ-տապ, կամ ըս-տախօս, շըղ-թայ:

**132.** Կարելի չէ նաեւ տողին վերջը ձգել ապաթարց մը, ինչպէս. չ’-երթար, կ’-ուտէ:

ԿԵՏԱԴՐՈՒԹԻՒՆ

**133.** Կէտադրութիւնը կը սորվեցնէ գործածութիւնը այն զանազան նշաններուն, որոնք պարբերութիւնները, նախադասութիւնները եւ նախադասութեան մասերը իրարմէ կը բաժնեն:

**134.** Կէտադրութեան գլխաւոր նշանները են.

| | | | |
|---|---|---|---|
| Բութ | ( ` ) | Կախման կէտեր | ( . . . ) |
| Ստորակէտ | ( , ) | Փակագիծ | ( ( ) ) |
| Միջակէտ | ( . ) | Չակերտ | ( « » ) |
| Վերջակէտ | ( : ) | Անջատման գիծ | ( — ) |

**135.** ԲՈՒԹ. — Բութը բառի մը վերջը՝ վերի կողմը կը դրուի, ամէն անգամ որ հարկ ըլլայ այդ բառին վրայ շատ քիչ միջոց մը կանգ առնել: Բութի գործածութեան գլխաւոր պարագաները հետեւեալներն են.

1. Բացայայտիչը բացայայտեալէն երբեմն բութով կը զատուի. Պալատու Ս. Հրեշտակապետ եկեղեցին առաջին անգամ շինեցին, 1630ին, երկու հայ ճարտարապետներ՝ Մուսա եւ Խաչեր:

2. Զեղչուած կամ զօրութեամբ իմացուած բառի մը կամ նախադասութեան մը տեղ բութ կը դրուի միշտ. Ստեփան Փափազեան գրած է Պեզճեան ամիրայի եւ Անդրէաս վարժապետի կենսագրութիւնները, եւ Տոքթոր Թորգոմեան՝ շատ մը հայ բժիշկներու կենսագրութիւններ:

3. Միջանկեալ նախադասութիւնները երբեմն բութով կը բաժնուին. Ձկնորս մը՝ ծովեզերքը կեցած՝ իր ուռկանը կը նետէ:

**133.** ՍՏՈՐԱԿԷՏ. — Ստորակէտը բառի մը վերջը կը դրուի այն ատեն որ պէտք ըլլայ բութէն քիչ մը աւելի կանգ առնել: Ստորակէտի գործածութեան պարագաները հետեւեալներն են.

1. Իրարմէ կը բաժնէ կարճ նախադասութիւններ, որոնք զիրար կ'ամբողջացնեն. Հովը կը սուլէ, երկինքը կ'որոտայ, եւ ծովը հեռուն կը մնչէ:

2. Միեւնոյն նախադասութեան մէջ կը բաժնէ ենթականները, ածականները, բայերը, խնդիրները, եւլն. ինչպէս. Ղազար Փարպեցի, Անանիա Շիրակացի, Գրիգոր Նարեկացի հայ մատենագիրներ են: — Պարոնեան սրամիտ, զուարճախօս, հեգնոտ, իմաստասէր գրագէտ մը եղած է: — Եղնիկը կ'երգէ, կը խաղայ, ջուր կը խմէ եւ մեռել կը ձեւանայ: — Լուսնակին կը գտնուի Մեքսիկայի, Պրազիլիոյ, Գալիֆոռնիոյ եւ Ուրալ լեռներուն մէջ:

3. Կը բաժնէ միջանկեալ նախադասութիւնները. Կեանքը, կ'ըսէ Սոկրատ, պէտք է ըլլայ յարատեւ խորհրդածութիւն մը մահուան վրայ:

4. Կը բաժնէ կոչականները, ըլլան միջանկեալ կամ ոչ. Տղա՛ս, ուղիղ ճամբէն գնա: Հեռացի՛ր, զաւա՛կս, չարերէն:

**137.** *Երբ երկու բառեր կամ չափ պզտիկ նախադասութիւններ միացած են շաղկապով մը, երբեք ստորակէտ չեն առներ. Կոնկենին և հարսնուկը ծաղիկներ են: Յասմիկը դեղին կամ ճերմակ կ'ըլլայ: Սունկը ի՞նչ բոյս է ի՞նչ կենդանի: Աղբիւրը կը խոխոջէ և ջրվէժը կը շառաչէ:*

**138.** *Իսկ երբ երկու երկար նախադասութիւններ միացած են շաղկապով մը, միշտ ստորակէտով կը բաժնուին. Ծաս խնայողութիւնը աղքատութեան մէջ առաքինութիւն է, և հարստութեան մէջ մոլութիւն:*

**139.** ՄԻՋԱԿԷՏ. — Միջակէտը, *որ կը կոչուի նաեւ* կէտ, *կը գործածուի.*

1. *Ամբողջ խօսքի մը գլխաւոր նախադասութիւնները իրարմէ զատելու համար. Նեղոս գետը Եգիպտոսէն կ'անցնի. զայն կը բեղմնաւորէ պարբերաբար ողողելով:*

2. *Տող մը բերուած վկայութենէ մը կամ ուրիշի մը խօսքերը յիշելէ առաջ. Մառմոնթէլ կ'ըսէ. Տխմարները մարդկային սեռին փշուշներն են:*

3. *Համառօտագրութեան* (1) *ատեն. Կ. Պոլիս, Ազգ. Հիւանդանոց, Ս. Գրիգոր Լուսաւորիչ:*

**140.** ՎԵՐՋԱԿԷՏ. — Վերջակէտ *կը դրուի ամբողջ եւ լրացած խօսքէ մը վերջը. Գետերը գնայուն ճամբաներ են:*

**141.** ԿԱԽՄԱՆ ԿԷՏ. — Կախման կէտ *կը դրուի.*

1. *Դիտմամբ կէս ձգուած կամ ընդմիջուած խօսքէ մը վերջը. Մի՛ մոռնար թէ քու բարեկամդ եղած եմ եւ թէ . . . :*

---

(1) Համառօտագրութեան նշաններն էին երբեմն՝ երկորեակ (''), ինչպէս. Յովհ՝ Գրիգորեան. և պատիւ ( ̄ ), ինչպէս. Ած, Յս, եւայլն. Այս նշանները հիմայ գրեթէ բնաւ չեն գործածուիր.

2. Գրուածքէ մը բերուած վկայութեան մը մէջ՝ զեղչուած բառերու տեղ. Պիւֆօն կարապը նկարագրե-լով, կ'ըսէ. «Կարապը հաճոյ է ամէն աչքի. ... կը սիրուի, կը գովուի, հիացում կ'ազդէ ... . բոլորածիր ձեւեր, շնորհալի պարոյր, պերճ եւ մաքուր սպիտա-կութիւն, ... կարապին վրայ ամէն բան կը շնչէ հեշ-տութիւն եւ հմայք:»

3. Խօսքի մը մէջ անակնկալ մը պատճառելու հա-մար. Հռոմայեցի ժողովուրդը կրկէսին մէջ ժողվուած կը սպասէր որ գայլ մը կամ առիւծ մը դուրս ելլէ. բայց երեւակայեցէք ամէնուն զարմանքը երբ տեսան ... գառ-նուկ մը:

4. Խօսքի մը վերջը տարակոյս, վարանում, եւլն. յայտնելու համար. Չեմ գիտեր թէ պիտի յաջողի՞ իր ձեռ-նարկութեանց մէջ ...:

**142** ՓԱԿԱԳԻԾ. — Փակագիծը նախադասութեան մը կամ բառի մը երկու կողմը կը դրուի, երբ այդ նա-խադասութիւնը կամ բառը պարբերութեան մէջ անջատ իմաստ մը ունի. Անիրաւ խօսքի մը առջեւ լռելը վատու-թիւն է (եթէ սակայն համր չէ մարդ): Կրկին փակագիծ ([ ]) կը գործածուի երբ արդէն փակագծի մէջ գտնուող նախադասութեան մը մէջ ուրիշ փակագծի պէտք ըլլայ. Հեռման Կուտշմիթ (1887 փետրուար 15ին [Ն. Տ. 2 մարտ] մեռած) գերման գիտուն մըն է որ զբաղած է հայ հնա-խօսութեամբ:

**143**. ՉԱԿԵՐՏ. — Չակերտը կը դրուի.

1. Առաջ բերուած խօսքի մը սկիզբը եւ վերջը. Տըղին կ'ըսէ. «Ամէն տարիք իր հաճոյքը, իր հրապոյրը ունի:»

5. Երբեմն կը դրուի նաեւ առաջ բերուած խօսքին իւրաքանչիւր տողին սկիզբը. Ժան Էքառ ֆրանսացի քերթողը գրած է հետեւեալ տողերը.

արեւէն ժամ մը եռքը մարը կը մտնէր, հիմայ կամաց կամաց կիջնէր դէպ ի ծով, երկինքը ճերմակ էր, երկիրը թուխ. եւ լուսինէն բեկորներ կոհակէ կոհակ կոստոստէին, ինչպէս ոսկի գնտակներ ձեռնածուի մը ձեռքին մէջ.

Քառորդ մը եռքը ճամբայ ելայ դէպ ի Ապվիլ; միշտ սիրած եմ վերջալոյսի ատեն ճամբորդելը, այդ պահուն բնութիւնը կը ձեւազեղծի ու ցնորական երեւոյթ մը կը ստանայ. ծառերը լուսավառ աչքեր ունին կարծես, կընձնիները չարաչուք կիսադէմքեր ունին կամ քահ քահ խնդալէն կը մարին, կիյնան; դաշտը մութ, խոշոր գիծ մը կը դառնայ, ուր լուսինը կը խորասուզի մէկ ծայրէն ու տակաւ կանհետի, օրաններն, խուրձերը, կանգուն արտերուն մէջ ճամբուն եզերքը, հոն խմբուած ուրուականուներու ազդեցութիւնը կընեն վրադ, որոնք ցած ձայնով կը խօսակցին; մերթ ընդ մերթ ոչխարներու երամակի մը կը հանդիպիս, որոնց հովիւը փոքր մը անկիւնը չիփ չիտակ կայնած տարօրինակ կերպով մը կը նայի քեզի, կառքը ցած ձայնով կը տրտնջայ ճամբուն խճճէնքէն պտուտակները, անիւը, ձիալուծերը, ամէնքը մէյ մէկ տկար հեծկլտուք կարձակեն սուր կամ ծանր. երբեմն կը լսուի հեռուէն կանոնաւորապէս չարժող ճութ, մը բոժոժներու ճնկլտուքը որ հետզհետէ կաւելնայ, յետոյ կը պակսի ու կը մարի, ուրիշ կառք մըն է որ հեռաւոր ճամբէ մը կանցնի, ուր կերթայ, ուրկէ կու գայ: ամէն բան գիշերուան մէջ կը թաղուի համաստեղութեանց լոյսովը որոնք հարիւրաւոր չքեղ պատկերներ կը գծագրեն երկինքին երեսը կը տեսնես շուրջդ դէմքեր, որ կը քնանան եւ կառքը երազներով լեփ լեցուն կերեւայ քեզի:

ՎԻՔԹՈՐ ՀԻՒԿՕ [1]

**35.** Ջրուցագրել այս հատուածը, ու կէտադրութեան, առոգանութեան, ուղղագրութեան նշաններ և գլխագիրներ դնել հարկ եղած տեղերը:

---

(1) Վիքթոր Հիւկօ, ԺԹ. դարու Ֆրանսացի ամէնէն նշանաւոր բանաստեղծը, ծնած է 1802ին Պէզանսոնի մէջ և մեռած 1885ին Բարիզ: Թաղուած է Բարիզի Բանթէոնին մէջ: Շատ մը քերթուածներ, վէպեր, թատերախաղեր գրած է:

# ԲԱՌԱԿԱԶՄՈՒԹԻՒՆ

---

## ԿԱՆՈՆՆԵՐ

**146.** *Բառերը կ'ըլլան* արմատ, բարդ *եւ* ածանցեալ:

**147.** ԱՐՄԱՏ ԲԱՌԵՐ. — Արմատ *կամ* պարզ *կ'ըսուին բառերը իրենց նախնական ձեւին մէջ, առանց ունենալու մասնիկ մը կամ բառ մը իբրեւ յաւելուած: Արմատ բառեր են կեանք, մահ, լոյս:*

**148.** *Կան արմատներ, որոնք թէ՛ գրաբարի եւ թէ՛ աշխարհաբարի մէջ՝ մինակ չեն գործածուիր, այլ ածանցմանց եւ բարդութեանց մէջ երեւան կու գան. տանջ (տանջանք, մտատանջ, տանջել). զբաղ (զբաղանք, զբաղում, զբաղիլ). բարիշտ (ամբարիշտ, ամբարշտանալ, ամբարշտութիւն). մեղ (մեղք, մեղանչել, մեղքնալ, մեղսաւոր, անմեղ, մեղսակից):*

**149.** *Կան արմատներ, որոնք իբր անջատ բառ չեն գործածուիր գրաբարի մէջ, այլ աշխարհաբարի մէջ կը գործածուին. շարժ (շարժիլ, շարժումն, շարժում, դիւրաշարժ), սաստկ (սաստկում, սաստկել), ծեծ (բռածեծ, ծեծել, ծեծկռուք):*

**150.** *Կան արմատներ ալ որոնք իբր անջատ բառ չեն գործածուիր աշխարհաբարի մէջ, այլ գրաբարի մէջ կը գործածուին. ընդ (ընդասուն, ընդելուզել, ընդհատել), ձեռն (ձեռնտու, ձեռնասուն, ձեռնարկ, ձեռնածու), ոտն (ոտնլուայ, ոտնակոխ, ոտնաւոր):*

**151.** ԲԱՅԱՐՄԱՏ. — Բայարմատ *կը կոչուին բայերուն արմատները. սիրելին բայարմատն է սէր, զբաղիլին՝ զբաղ, շարժիլին՝ շարժ:*

**160.** *Երբ բառի մը վերջը է- կամ եա- գտնուի, բարդութեան կամ ածանցման ատեն հետեւեալ փոփոխութիւնները կը կրէ. 1. Է- կը փոխուի ու-ի.* **արժէ — արժուենի**, **կռէ — կռուարար**, **հազէ — հազուագիւտ** : 2. *Եայ կը փոխուի է-ի.* **քրիստոնեայ — քրիստոնէական**, **պաշտօնեայ — պաշտօնէութիւն** :

**161.** *Բարդութեան եւ ածանցման ժամանակ ք տառը դուրս կը ձգուի յօդակապէն առաջ եւ բառին վերջը, երբ արմատական չէ.* **մեղք — մեղաւոր — անմեղ**, **փառք — փառաւոր — անփառ** : *Իսկ անջինջ կը մնայ երբ արմատական է.* **քաղաք — քաղաքացի — մայրաքաղաք**, **թոք — թոքախտ — շիաթոք** :

**162.** *Բացառիկ են՝ աշխարհաբարի յատուկ* **հանք — հանքային**, **խելք — անխելք**, **շնորհք — անշնորհք**, **աչք — ծակաչք** *բառերը, որոնց մէջ թէեւ ք գիրը արմատական չէ, սակայն անջինջ կը մնայ* ։

**163.** ՅՕԴԱԿԱՊ. — Յօդակապ *կ՚ըսուի ա ձայնաւորը, որ ածանցման եւ բարդութեան մէջ՝ բառ մը կը կապէ ուրիշ բառի կամ մասնիկի մը, երբ այդ բառը կամ մասնիկը բաղաձայնով սկսած է.* **լուսաւոր**, **աստուածավախ** :

**164.** *Իսկ երբ այդ բառը կամ մասնիկը ձայնաւորով սկսի, յօդակապ չի դրուիր.* **թռչնոց**, **թռչուն** :

**165.** *Կան կարգ մը բարդ եւ ածանցեալ բառեր, որոնց վերջին բառը բաղաձայնով կը սկսի թէեւ, սակայն որոնց մէջ ա յօդակապը չի գործածուիր բացառաբար.* **ջրհոր**, **հրթիռ**, **անեղնիգ**, *եւայլն* ։

**166.** *Քանի մը բառերու մէջ սովորութիւն եղած է ա-ի տեղ ե յօդակապ գործածել.* **ծաղկեփունջ**, **հաշտեցում**, **հարսնեւոր** :

**167.** *Բարդութեան եւ ածանցման մէջ, երբ առաջին բառը է գրով կ՚աւարտի, եւ երկրորդ բառը բա-*

ղաձայնով կը սկսի, էն ե ի կը փոխուի, եւ ա յօդակապը չի դրուիր. **շոգէ—շոգենաւ**, փոխանակ **շոգէանաւի**, **տարէ—տարեկից**, փոխանակ **տարէակիցի**, **կղզէ—կղզեցի**, փոխանակ **կղզէացիի**:

**168.** Երբ առաջին բառը միավանկ է եւ է՞կը վերջանայ, է գիրը եւ ա յօդակապը կը մնան միշտ. **ձէ—ձէաւոր**, **մէ—մէաւոր**, **դէ—դէապաշտ**:

**169.** Քանի մը պարագաներու մէջ էն բոլորովին կը կորսուի, ինչպէս. **եկեղեցէ—եկեղեցական**:

---

## ՀՐԱՀԱՆԳՆԵՐ

Խոնարհը իր գիտութեան, խոհեմութեան, յաջողութեան եւ ուրիշ յատկութեանց վրայ չի պարծիր, ու երբ ուրիշները կը գովեն զինքը, բնաւ չի բարձրամտիր, այլ իր պակասութիւնները միտքը բերելով՝ ինքզինքը անարժան կը համարի այն գովեստին. իսկ հպարտը իր մտքին մէջ ինքզինքը գովութեան արժանի կը նկատէ, եւ ուրիշները անարգ եւ նուաստ կը համարի: Խոնարհը երբ դժուար գործի մը ձեռք զարնելու ըլլայ, իմաստուն եւ փորձառու մարդոց խորհուրդ կը հարցնէ, եւ ուրիշէ խրատ առնել ամօթ չի նկատեր. իսկ հպարտը այնպէս կը կարծէ թէ իրմէ խելացի մարդ չի գտնուիր աշխարհիս վրայ, ուստի մէկու մը հետ խորհրդակցութիւն չ՚ըներ: Խոնարհը ինքզինքը պակասաւոր կը ճանչնայ, եւ իր բարքն ու վարմունքը օր ըստ օրէ կը շտկէ, իսկ հպարտը իր պակասութիւնները բնաւ չի տեսներ: Իր մոլորութիւնները սովորութիւն կը դառնան, եւ ինք միշտ խակ ու անուղղայ կը մնայ: Խոնարհը եթէ պատուոյ արժանի բան մը ընէ, չի նայիր որ հասարակութիւնը զինքը պատուէ: Իսկ հպարտը թէեւ հանրութեան օգուտ մը չընէ, միշտ իր անձին համար պատիւ ու մեծարանք կը

խնդրէ, վասն զի այնպէս կը կարծէ թէ ամէն մարդ՝ պարտական է զինքը պատուելու։

Բայց որչափ հպարտը պատուուիլ կ՚ուզէ, պատիւն ալ այնքան հեռու կը փախչի իրմէ։ Իսկ խոնարհը որչափ պատիւ չի փնտռեր, այնչափ աւելի պատիւ կը գտնէ։

ԳՐԻԳՈՐ ՓԷՇՏԻՄԱԼՃԵԱՆ (1)

**36.** Զրուցագրել այս հատուածը։

**37.** Բացատրել այս հատուածին մէջ գտնուած հետեւեալ պարզ կամ ածանցեալ բառերը. և մէյ մէկ խօսք շինել անոնցմով.

*Խոհեմութիւն, փորձառու, յաւակնութիւն, անարգ, բարձրամտիլ, խօ-լորութիւն, խակ, հանրութիւն, անուղղայ, պակասաւոր։*

**38.** Որոշել հետեւեալ պարզ կամ ածանցեալ բառերը, և գտնել անոնց մէջ կորսուած կամ փոխուած ձայնաւորները.

*Սրատես, վրիժահան, Թիկնաթոռ, մանկաձեւ, Թզենի, աղմուկ, ջըր-վէժ, խնկաման, գրաւոր, ողջամիտ, ոսկեգէտ, քրմապետ, ձկնկիթ, ծած-կամիտ, սգաւոր, հրաբուխ, սրտայոյզ, մարդկային, հոգեւոր, ժրագլուխ, մեծապարծ, հրեղէն, գերութիւն, կանխադատ, դիտակ, կրային, հոգա-գիւտ, լուսափայլ, հաշուակալ, դռնակ, ատենապետ, նռնենի, գունագեղ, մատենագիր, միգամած, վզնոց, քրքմագոյն։*

**39.** Լուծել այս հատուածին առաջին հինգ նախադասութիւնները։

---

## ՏԵՐԵՒՆԵՐՈՒՆ ՊԱՐԸ

*Կ՚անցնին աշնան ցուրտ հովեր,*
*Ու կը տանին բըռնավար*
*Թըռչունները դէպ ՚այեր,*
*Տերեւներն ալ դէպ ՚անտառ։*

---

(1) Գրիգոր Փէշտիմալճեան՝ Նշանաւոր Հայազգի ուսուցիչ՝ ծնած է 1773ին և մեռած 1837ին Կ. Պոլսոյ մէջ։ Իր Հեղինակութեանց կարեւորագոյնն է Հայկազեան լեզուի բառգիրքը։ Գրած է նաև քերթուածներ ու դասագիրքեր։

Գաղջ օրե՛ր, մի՛նչ հեշտաբեր
Անհետացան ընդ երկար.
Պարեցէք, հէ՛ք տերեւներ,
Վալսեցէք դուք իբր յիմար։

Ճամբաններու քովն ի վեր,
Հիւսիսէն կամ հարաւէն,
Տե՛ս, կը վալսեն տերեւներ,
Մահուան պարը կը պարեն։

Հրաւիրածին չափ տերեւ,
Հովը երբեք չի գտներ։
Դարձէք, դարձէք հեւ ի հեւ,
Վալսեցէք, հէ՛ք տերեւներ։

Ամէն տերեւ վար կ'իյնայ
Կընձնի, Թըմբի կամ կաղնի,
Եւ ամէն մարդ, ծեր, տըղայ,
Մահուան ծոցը կը Թաղուի։

Եւ երազներն աշխարհին
Երբեք երկար չեն տեւեր։
Հետեւեցէք ձեր պարին,
Վալսեցէք, հէ՛ք տերեւներ։

ԺՕԼ ԺԻՒՅԷՐԱ (1)

**40.** Գոց սորվիլ և բարձրաձայն արտասանել այս ոտանաւորը։



(1) Ժօլ Ժիւյէրա՝ Ֆրանսացի ժամանակակից բանաստեղծ։

# ԲԱՌԱԿԱԶՄՈՒԹԻՒՆ (Շար.)

## ԲԱՐԴՈՒԹԻՒՆ

### ԿԱՆՈՆՆԵՐ

**170.** ԲԱՐԴ ԲԱՌԵՐ. — *Սովորաբար բարդութիւնը երկու բառով կ'ըլլայ, ինչպէս.* **նաւ-պետ**, **գր-տուն**, **առագ-տիպ**, *բայց կան բարդութիւններ ալ երեք բառով.* **ճր-գր-պետ**, **հեռ-գր-տուն**, **ջուր-վիժ-տիպ**։ *Երեք բառէ կազմուած բարդութեանց շատերը խորթ են. իսկ երեք բառէ աւելի բառերով բարդութիւնները բոլորովին հակառակ են ճաշակի, ինչպէս.* **ջուր-վիժ-տպ-գրել**։

**171.** *Բարդութեամբ կը կազմուին գոյականներ, ածականներ, մակբայներ եւ բայեր։*

**172.** *Հայերէնի մէջ բարդ բառերը առատ են, որովհետեւ հայ բառերը իրարու կցուելով կրնան միշտ նոր բարդութիւններ կազմել։ Համբակները պէտք է սակայն զգուշանան նոր բարդութիւններէ, որոնց մէջ յաջողելու համար լեզուի խորունկ հմտութիւն եւ կիրթ ճաշակ կը պահանջուի։*

**173.** *Բարդութիւնք հետեւեալ ձեւերով կ'ըլլայ.*

*Ա. Երկու բառ առանց յօդակապի միացած, ինչպէս.* **մահազդ**, **խնկաման**, **ձնծիծաղ**, **ջրհաւ**։

*Բ. Երկու բառ — յօդակապով միացած.* **ժամ-ցոյց**, **ջուր-փայլ**, **ճանճ-հաւ**։ *Այս է բարդութեան սովորական ձեւը։*

*Գ. Երկու բառ ու — կամ ե — շաղկապով միացած.* **տուն—տեր**, **վար—ցան**, **եղ-մտական**։ *Այս ձեւով բարդուած բառերը շատ քիչ են։*

Դ. Կան քանի մը բառեր գրաբարի ձեւով բարդուած զ, ը եւ ընդ նախդիրներով. գոյնզգոյն, հետզհետէ, զառիվայր, զառիվեր, գիրկընդխառն, ուսընդանութ, եւայլն:

**174.** Կորուսման եւ փոփոխման կանոնը ընդհանրապէս կը յարգուի, երբ բարդուածի մը առաջին բառէն ետքը ձայնաւոր գիր գայ, իսկ չի յարգուիր՝ աշխարհաբարի յատուկ բարդութեանց մէջ՝ երբ բաղաձայն գայ.

| | |
|---|---|
| Ձայնաւոր | երէց—երիցատուն |
| Բաղաձայն | երէց—երէցկին |
| Ձայնաւոր | սուտ—ստախօս |
| Բաղաձայն | սուտ—սուտզրոյց |
| Ձայնաւոր | սիրտ—սրտառուչ |
| Բաղաձայն | սիրտ—սիրտհատնում: |

Բացառիկ են կիսկատար, գիսնաղ, գիրնաղ, սրտմաշուք, կրծկալ, եւայլն:

**175.** Երբ երկու բառ ու կամ և շաղկապով կը բարդուին, կորուսման եւ փոփոխման կանոնները չեն յարգուիր. գիրուգան, տուրեւառ, թուխումուր:

**176.** Տեսնել, դնել, տալ, եւ ասոնց պէս ուրիշ քանի մը բայեր կան որոնցմով բարդութիւն կազմուած ատեն, այդ բայերուն արմատները կը գործածուին, ինչպէս. հեռատեսել, մեղադրել, վարձատրել:

**177.** Բարդ բառերը կը կազմուին գլխաւորաբար.

Ա. Գոյական գոյականի հետ. Օձաձեւ (օձի ձեւ ունեցող), սրտադող (սրտի դող), այծամարդ (այծ եւ մարդ):

Բ. Գոյական՝ ետքը բայարմատ. Ձկնորս (ձուկ որսացող), դեղթափ (թոյնը կտրող), բանթող (աշխատանքէ դադարում), դիւահար (դեւէ բռնուած):

Գ. Ածական՝ ետքը գոյական. Չարասիրտ (չար սիրտ ունեցող), մանրալուր (մանր լուր), Նորավէպ (նոր վէպ):

Դ. Մակբայ՝ ետքը բայարմատ. Մշտահոս (միշտ հոսող), յարատեւ (միշտ տեւող), դեռաբողբոջ (նոր բացուող)։

Ե. Բայարմատ բայարմատի հետ. Ասուլիս (ըսել եւ լսել), ելեւէջ (ելլել եւ իջնել)։

**178. ԿՐԿՆԱՒՈՐ ԲԱՌԵՐ.** — Կրկնաւոր կը կոչուին այն բարդ բառերը, որոնց մէջ միեւնոյն բառը կրկնուած է. մանմրիկ, տարատառ, կասկարմիր, ծուռմուռ։

**179.** Կրկնաւոր բառերը երեք տեսակ են.

Ա. Արմատ բառ մը կրկնուած իր ձեւով կամ ձայնաւորին կորուստով. դողդղալ, չափչփել, չարչարել, պլպլել, թափթփել, ծակծկել, վազվզել, մանմնալ, ծփծփալ, պլպլալ, փոփխալ, խշխշալ, եւայլն։ Նոյնպէս տարտալ, գրգռել, բարբառ, կարկառ, եւայլն, որովհետեւ հայ լեզուի արմատ բառերուն մէջ՝ ռ գրէն ետքը սովորաբար ն բաղաձայնէն ուրիշ բաղաձայն չի գար, եւ երբ ուրիշ բաղաձայն գայ, ռ գիրը ր ի կը փոխուի։ Բացառիկ են քանի մը ժողովրդական բառեր. վռվռալ, թռթռալ, խռխռալ, կռկռալ, եւայլն։

Այս ձեւով կազմուած կրկնաւորներուն մէջ երբեմն ա յօդակապ կամ և շաղկապ ալ կը դրուի, ինչպէս. չար–չար, զան–զան, այլ–այլ, եւայլն։

Բ. Բառին մէկ վանկը պզտիկ փոփոխութեամբ մը բառին սկիզբը կը դրուի եւ տեսակ մը գերադրական ածական կը կազմուի, ինչպէս. կասկարմիր, սեփսեւ, ճեփճերմակ, միսմինակ, դեփդեղին, չոփչոր, շիփշիտակ, եւայլն։

Գ. Նոյն բառը երկրորդ անգամ կը կրկնուի նոր ձեւով, ինչպէս. ծուռ–մուռ, խաժ–մաժ, բարձր–բրձր, խորտ–բորտ, ծակ–ծուկ։

## ՀՐԱՀԱՆԳՆԵՐ

### ՄԱՑՐԵՆԻ ՍԷՐ

*Մօր սէրը չի մեռնիր, կենդանի կը մնայ ան՝ զաւկին մահէն ալ, անոր ապերախտ մոռացութենէն ալ ետքը։ Այրերուն համար հայրութիւնը կարծես դէպք մըն է. կնոջ համար մայրութիւնը կեանքն իսկ է։ Դիտէ՛ զայն, երբ իր զաւկին առաջին քայլափոխը տեսնէ, երբ լսէ անոր բերնին առաջին մրմունջը, երբ ընդունի անոր վերջին հառաչանքը։ Եթէ կ՚ուզես գիտնալ թէ ինչպէս կը խօսին հրեշտակները, թէ ի՛նչ անուշութիւն կայ անոնց նայուածքին մէջ, թէ ի՛նչ է անոնց անպատում զմայլանքը, լսէ՛ մօր հնարած լեզուն, տե՛ս անոր աչքին ցոլմունքը։ Երբ որդին մեռնի, հայրը կու լայ ծանրաթախիծ. այլ ժամանակը անոր այս ցաւը միւս ցաւերէն աւելի չի յարգեր։ Բայց տարիներով ետքը, նայէ՛ մօր սիրտը՝ դեռ նոյն վէրքը արիւնահոս է։ Արարչագործութեան մէջ այն սիրոյն նմանող բան չկայ. մէկ վայրկեանի մէջ կը ծնի սուրբ, անհուն, անմուած։ Անոր համար ոչ զարգանալ, ոչ նուազիլ կայ՝ վասնզի այսպիսի փոփոխութիւններ անկատարութեան նշաններ են։*

**ԹՈՎՄԱՍ ԹԵՐԶԵԱՆ** [1]

**41.** Կարդալ այս հատուածը բարձրաձայն, յետոյ բերանացի բացատրել։

**+42.** Տարբեր կերպով շարադրել այս հատուածը, մէջը գտնուած բարդ և ածանցեալ բառերուն տեղ ուրիշ բառեր գործածելով, առանց իմաստը այլայլելու։

**Օրինակ.** — *Մօր սէրը անմահ է. կենդանի կը մնայ ան նոյն իսկ երբ զաւակը մեռնի, կամ մոռնայ իր մայրը՝ ապերախտ գտնուելով անոր։*

**√43.** Հետեւեալ բարդ բառերը իրենց պարզ ձեւին վերածել իրարմէ զատելով.

*Տնաւեր, զինեմոլ, գործակից, քնաբեր, խաշնարած, շնորհալի, լայնածաւալ, քարակոփ, գեղադէմ, ազնուատոհմ, արծաթթաթիկ, խաժակն,*

---

(1) Թովմաս Թերզեան, ծանօթ գրագէտ և ուսուցիչ, ունի արձակ և ոտանաւոր գրուածներ։

Թռ[illegible]ի, երախտագէտ, շղթայակապ, վարդավառ, յուսախաբ, շահագրգիռ, յարաճուն, գեղածաղիկ։

**44.** Բարդ գոյականներ կազմել բարդութեան օրէնքներուն համեմատ հետեւեալ անուններէն, առաջ կամ վերջը մէյ մէկ ուրիշ գոյական, ածական կամ բայարմատ աւելցնելով.

*Սեղան, լանջք, ծով, ձիւն, գիր, լոյս, ձայն, աթոռ, կառք, այգ, ձեռք, փոշիկ, նաւ, քար, գետ, փունջ, զօրք, ռազմ, վարս, ջուր, կաթ, գունդ, շեղջ, կամար, գրիչ, գլուխ, վարդ, մանուկ, ձուկ, թռչուն, սրահ, դրամ, քանդ, խորշ, տուն, մարդ, փայտ։*

**Օրինակ.** — *Գրասեղան, կարմրալանջ, ծովակալ։*

**45.** Բարդ ածականներ կազմել հետեւեալ բառերէն, առաջ կամ վերջը բայարմատներ, գոյականներ կամ ածականներ աւելցնելով.

*Իղձ, չքնաղ, սիրտ, սուգ, կեանք, արիւն, նուրբ, թեթեւ, վրէժ, ծիծաղ, միտք, կարմիր, սպիտակ, ցուրտ, քայլ, մեղք, զուարթ, տրտում, բարձր, խոր, թանձր, [illegible]ունդ, ոլորտ, ծաղիկ, ամպ, յորդ, թուխ, կարճ, սէգ, ալիք, փոթորիկ, անուրջ, հոգի, եկեղեցի, խեցի, թի, սուր, թոյլ, շող։*

**Օրինակ.** — *Ըղձակաթ, չքնաղագեղ, քաջասիրտ։*

**46.** Գտնել հինգ կրկնաւոր գոյական, հինգ կրկնաւոր ածական, հինգ կրկնաւոր բայ։

**Օրինակ.** — *Խորխորատ, վէտվէտուն, ծփծփալ։*

---

## ՓՈՔՐԻԿ ՄԱՅՐԸ

*Դեռ տասներկու կամ տասներեք տարեկան*
*Ոսկեգանգուր, ծաղկահասակ աղջիկն այն,*
*Որ աւելի մանուկ մըն է քան թէ կին,*
*Թագուհւոյ մը կերպերն ունի բընածին։*

*Իր աչ կողմը՝ պայծառ աչքով, ճակտով լայն*
*Հայրն է, կ'ուտէ, և կ'երազէ լըռելեայն.*
*Գիտուն մըն է, ուսեալ մարդ մը որ արդէն*
*Ծերացած է իր տարիքէն ու վիշտէն։*

Եւ ձախ կողմը իր եղբայրն է պզտըլիկ,
Խոր տըխրութեան երեւոյթով հէք մանկիկ,
Որ Թերեւըս պատճառ եղած է մինակ
Իր ծընունդով մօրը մահուան դըժընդակ։

Կիսադէմքով երկար, հիւանդ, հէք էակ,
Մաշած աչքով, մորթով մոմի պէս ճերմակ,
Զոր տեսնողը կ՚ըսէ սըրտով ըզգածուած.
«Ինչպէս արդեօք զայն ըստեղծեր է Աստուած։»

Եւ այս տըխեղծ բոյսին վըրայ դողդոջուն,
Որ ծըլած է ցուրտ ձըմեռուան արեւուն,
Խորունկ խանդով, գորովանքով սիրալիր
Միշտ կը հըսկէ պըզտիկ աղջիկն ուշադիր։

Եղբօրն համար տածած սիրով գերագոյն
Ինք հոն կ՚ապրի միշտ անյողդողդ, աններկուն.
Անոր համար, և անոր մէջ, անոր շուրջ
Կը մոռնայ միշտ իր անձն անգամ անտըրտունջ։

Ու մըտքիս՝ մէջ բիւր խորհուրդներ կը լենան
Ընտանեկան այս պատկերին յանդիման։
«Նախախնամող Տէ՛ր, կ՚ըսեմ, մա՛յր գերազօր,
Քու օրէնքներդ սքանչելի են բոլոր։»

Այդ պաշտելի էակներէն բաժնըւած
Մայրը մեկներ՝ հեռուն գացեր է անդարձ,
Բայց կը Թողու որ դեռ մընայ անոնց քով,
Իր աղջըկան հոգւոյն մէջ միշտ ապրելով։

ԺԱՔ ՆՈՐՄԱՆ (1)

47. Գոց սորվիլ այս ոտանաւորը, և բարձրաձայն արտասանել։

48. Արձակի վերածել այս ոտանաւորը։

49. Զրուցագրել այս ոտանաւորը, և կէտադրութեան նշանները դնել։

---

(1) Ֆրանսացի ժամանակակից բանաստեղծ։

# ԲԱՌԱԿԱԶՄՈՒԹԻՒՆ (*Շար.*)

## *ԱԾԱՆՑՈՒՄ*

---

### ԿԱՆՈՆՆԵՐ

**180.** *Ածանցում կ'ըլլայ բառի մը սկիզբը կամ վերջը մասնիկ մը աւելցնելով, ինչպէս. **ան**կիրթ, կիրթ**—ութիւն** ։*

**181.** *Ածանցումով կը կազմուին գոյականներ, ածականներ, բայեր եւ մակբայներ. **ուրախ—ութիւն**, **ցեղ-ային**, **կոտրտել**, **ազնուօրէն** ։*

**182.** *Կորուսման եւ փոփոխման կանոնը կը գործադրուի ածանցման մէջ. բայց փոփոխման կանոնը, մանաւանդ աշխարհաբարի յատուկ ածանցմանց մէջ, չի գործադրուիր ։ Այսպէս կ'ըսուի **աղէկութիւն** եւ ոչ **աղիկութիւն**, **մէկանց** եւ ոչ **միկանց** :*

**183.** *Երբ մասնիկը բառին սկիզբը կը դրուի, կը կոչուի* նախադաս մասնիկ, *երբ բառին վերջը կը դրուի, կ'ըսուի* յետադաս մասնիկ : *Կան նաեւ բայերու յատուկ մասնիկներ, որոնք բայերուն մէջտեղը կը դրուին ։*

### ՆԱԽԱԴԱՍ ՄԱՍՆԻԿՆԵՐ

**184.** *Նախադաս մասնիկներէն **ան**, **ապ**, **չ**, **տ**, **դժ**, **տժ** բացասականները բառի մը վրայ աւելնալով, անոր հակառակը նշանակող ածականներ եւ երբեմն ալ գոյականներ, մակբայներ ու բայեր կը կազմեն.*

***ան**. — **ան**սիրտ, **ան**հանգստութիւն, **ան**երկբայ, **ան**շուք:*

***ապ**. — **ապ**ուշ, **ապ**օրինաւոր, **ապ**երասան, **ապ**աշնորհ:*

***չ**. — **չ**էք, **չ**պիտոյ, **չ**աստուած :*

տ. — տկար, տգէտ, տմոյն, տմարդի:

դժ կամ տժ. — դժբախտ, դժգոհութիւն, տժգոյն, տժգոհ:

**185.** Կարգ մը ուրիշ նախադաս մասնիկներ ալ կը ծառայեն ածանցեալ գոյականներ, ածականներ եւ բայեր կազմելու.

արտ (դուրս). — արտաքսել, արտայայտութիւն, արտադրել:

բաղ (կից). — բաղդատել, բաղխոհական, բաղկանալ:

բաց (դուրս). — բացատրել, բացառիկ, բացագանչութիւն:

գեր (վեր). — գերադասել, գերմարդկային, գերապատիւ:

դեր (փոխանակ). — դերբայ, դերանուն, դերակուն:

ենթ (տակը). — ենթարկել, ենթակայ, ենթադրական:

հակ (հակառակ). — հակոտնեայ, հակադրել, հակակշիռ:

համ կամ հոմ (նոյն, կից). — համամիտ, համաձայն, համանիշ, հոմանուն:

մակ (վրայ). — մակբայ, մակաբոյծ, մակագրել:

յար (կից). — յարաբերութիւն, յարահիւսել, յարակից:

ներ (ներս). — ներշնչում, ներածել, ներկուռ:

շաղ կամ շար (կից). — շաղկապ, շարունակել, շարամանել:

պար (շուրջ). — պարագայ, պարունակել, պարածածուկ:

ստոր (տակը). — ստորագրել, ստորերկրեայ, ստորոտ:

վեր (նորէն). — վերակոչ, վերադարձ, վերամուտ:

տար (հեռու). — տարօրինակ, տարաժամել, տարամերժել:

## ՅԵՏԱԴԱՍ ՄԱՍՆԻԿՆԵՐ

**186.** Յետադաս մասնիկները կը ծառայեն գոյականներ, ածականներ, մակբայներ կազմելու:

**187.** ԳՈՅԱԿԱՆՆԵՐ. — Հետեւեալ յետադաս մասնիկներով կը կազմուին գրեթէ միշտ գործողութեան կամ վիճակի գաղափար տուող գոյականներ.

նոց. — հաւնոց, հիւանդանոց, յիմարանոց։
ոց. — վարժոց, ծաղկոց, մարզկոց։
ստան. — Պարսկաստան, վարդաստան, բուրաստան։
րան. — ննջարան, պահարան, աղօթարան։

**190.** Հետեւեալ մասնիկներով ծագումի գաղափար տուող գոյականներ կը կազմուին.

ցի. — Պոլսեցի, Ֆրանսացի, գեղցի։
էկ. — Հնդէկ, ռամէկ, ոստանէկ։
ական. — ազնուական, աւատական, գիւղական։

**191.** Հետեւեալ մասնիկներով ընդհանրապէս գործողութեան մը արդիւնքի գաղափար տուող գոյականներ կը կազմուին.

ուք. — մանրուք, տաշուք, փակուք։
ոյց. — սառոյց, հանգոյց, այտոյց։

**192.** Հետեւեալ մասնիկներով գործիքի գաղափար տուող գոյականներ կը կազմուին.

ոց. — սղոց, փչոց, խարտոց։
իչ. — գրիչ, ծեփիչ, մանիչ։
ակ. — դիտակ, շչակ, տապակ։
ան. — խփան, հնձան, զգան։

**193.** Հետեւեալ մասնիկներով իգական գաղափար տուող յատուկ եւ հասարակ գոյականներ կը կազմուին.

ուհի. — իշխանուհի, վարժուհի, դիցուհի։
անոյշ. — դիցանոյշ, Սիրանոյշ, Հրանոյշ։
դուխտ. — Շահանդուխտ, Սանդուխտ, Զարմանդուխտ։

**194.** Հետեւեալ մասնիկներով փոքրութեան կամ փաղաքշանքի գաղափար տուող գոյականներ կը կազմուին.

ակ. — նաւակ, դիւակ, գունակ։

եկ կամ եակ . — ցլեկ , ալեակ , որդեակ :

իկ . — թռչնիկ , թաթիկ , մայրիկ :

ուկ . — գառնուկ , հարսնուկ , վարդուկ :

**195.** Հետեւեալ մասնիկները իրենց քով նշանակուած գաղափարները արտայայտող գոյականներ կը կազմեն .

էք (բանի մը սահմանուածի գաղափար). — խաղալէք, հագնելէք , ուտելէք :

ակ (նախատական գաղափար) . — իմաստակ , հետեւակ , գրչակ :

եղէն (հաւաքական գաղափար) . — մսեղէն , կաւեղէն , ջրեղէն :

ենի (տունկի , ծառի գաղափար) . — մորենի , խնձորենի , ճռճենի :

ենի (մորթի գաղափար) . — առիւծենի , այծենի , արջենի :

ի (ծառի գաղափար) . — կաղնի , թմբի , դեղձի :

կան (գործողութիւն մը կատարողի գաղափար) . — զուժկան , շաղկան , վարձկան :

նոց (արժէքի կամ չափի գաղափար) . — հինգնոց , դրամնոց , վարնոց :

անոց (այլ եւ այլ գաղափար) . — ժամանոց , ճերմականոց , դեղանոց :

չէք (վարձքի գաղափար). — աւուրչէք, կաղանդչէք:

ցու (վիճակի մը սահմանուածի գաղափար) . — փեսացու , տիրացու :

ուոր կամ աւոր (ունեցողի գաղափար) . — տնուոր , զինուոր , ձիաւոր :

**196.** ԱԾԱԿԱՆՆԵՐ. — Հետեւեալ մասնիկներով ծագումի եւ վերաբերութեան գաղափար արտայայտող ածականներ կը կազմուին .

ային . — մարդկային , դաշտային , հարաւային :

եան . — արեւմտեան , ձախակողմեան :

եայ. — առօրեայ, առժամեայ, եռամեայ:

ական. — գաւառական, հաւանական, վաւերական:

ենի. — հայրենի, վայրենի, մայրենի:

աւոր. — հոգեւոր, մտաւոր:

ցի. — Վանեցի, տեղացի, կանացի:

**197**. Հետեւեալ մասնիկներով կը կազմուին ունեցողի գաղափար արտայայտող ածականներ.

անի. — գեղանի, լեզուանի, խելանի:

աւէտ. — հոտաւէտ, ընչաւէտ, ծաղկաւէտ:

եղ. — համեղ, ուժեղ, ընչեղ:

ի. — մոլի, աղի, երկայրի:

կոտ. — ամչկոտ, վախկոտ, մոռացկոտ:

ոտ. — աղտոտ, բորոտ, նախանձոտ:

ուտ. — հրուտ, տղմուտ, վիմուտ:

ցի. — մտացի, խելացի:

աւոր. — ալեւոր, փառաւոր, ունեւոր:

**198**. Հետեւեալ մասնիկներով գործողի գաղափար արտայայտող ածականներ կը կազմուին.

ան. — խման, ածան, խածան:

իչ. — հրապուրիչ, ամոքիչ, թելադրիչ:

ող. — չարչարող, հաչող, լացող:

ուռ. — յաչուռ, նախուռ, ձախուռ:

ու. — ազդու, հատու, ահարկու:

ուկ. — պարծուկ, յեղյեղուկ:

ուն. — ժպտուն, փայլուն, շարժուն:

**199**. Հետեւեալ մասնիկները իրենց քով նշանակուած գաղափարները արտայայտող ածականներ կը կազմեն.

եղէն, է (նիւթին տեսակը ցոյց տուող գաղափար). — լուսեղէն, նիւթեղէն, արծաթէ, մետաքսէ:

օրէ (ժամանակական գաղափար). — սնօրէ, օտարօրէ, հնօրէ:

գոյն (բաղդատական գաղափար). — մեծագոյն, հզօրագոյն։

նեկ (նուաստութեան գաղափար).—ճանրնեկ, մանր-նեկ, խոշորնեկ։

ոտ (զրկումի գաղափար).—գոսոտ, ֆնոտ, ծայրոտ։

գէն (սաստկութեան գաղափար). — ուժգէն, շաչագէն։

էկ, ուկ (նուազական կամ փաղաքշական գաղափար). — փափկէկ, հեզէկ, աղուորէկ, տաքուկ, գիրուկ։

**200.** Հետեւեալ մասնիկներով այլ եւ այլ գաղափարներ արտայայտող կարգ մը ածականներ կը կազմուին.

ուկ. — խառնուկ, յաջողուկ։

ելի կամ ալի. — կասկածելի, ծիծաղելի, խղճալի, ցաւալի։

էն. — ներքէն, խորէն, մթէն։

ծու. — շինծու, պահծու, թափծու։

**201.** ՄԱԿԲԱՅՆԵՐ. — Հետեւեալները մակբայներ կազմող գլխաւոր մասնիկներն են.

ովին. — գլխովին, բոլորովին, խմբովին։

ապէս. — մեծապէս, այլապէս, փառաւորապէս։

բար. — խոնարհաբար, դիւցազնաբար, արիաբար։

կի. — փոփոխակի, որոշակի, յանկարծակի։

րէն. — արաբերէն, յունարէն, ֆրանսերէն։

օրէն. — ազնուօրէն, թեթեւօրէն, լրջօրէն։

ընց. — առտուընց, հեռուընց, մէկընց։

ԲԱՅԵՐՈՒ ՅԱՏՈՒԿ ՄԱՍՆԻԿՆԵՐ

**202.** Կանոնաւոր կարգ մը մասնիկներ որոնք, բայերուն մէջ մտնելով, գործողութեան մը կրկնուիլը կամ տեւելը ցոյց կու տան, և հետեւեալներն են.

տ. — կտրել—կտրտել, կոտրել—կոտրտել, թռչիլ—թռչտիլ։

կոտ, ռ, ոտ, ռըտ. — կոխել—կոխկռտել, փետտել—

փետռտել, ցատկել—ցատկռտել, կանչել—կանչըռտել:

շռտ, ռտ. — աւրել—աւրշռտել, խառնել—խառնշռտել, գլորել—գլորռտել:

ըռ. — պահուիլ—պահուըռտիլ, կռուիլ—կռուըռտիլ:

---

## ՀՐԱՀԱՆԳՆԵՐ

---

### ԱՍԵՂՆԱԳՈՐԾՈՒԹԻՒՆ

Ասեղը մեծ դեր կը կատարէ կնոջ կեանքին մէջ. գրեթէ անոր սեփական տարրն է։ Ասեղին շնորհիւ, աղքատ աղջիկ մը՝ գործաւորուհի մը՝ կրնայ պատուաւոր ապրուստ հայթայթել, եւ տանտիկին մը՝ կարեւոր խնայողութիւններ ընել։ Հարուստ կամ իշխանազուն տիկիններու եւ օրիորդներու համար ալ քաղցր զբաղում մըն է ասեղը. ոչ միայն դատարկակեցութեան ձանձրոյթէն կ'ազատէ զանոնք, այլ եւ առիթ կ'ընծայէ անոնց՝ իրենց ձեռքի վաստակով աղքատներ մխիթարելու։ Ասեղը ամէն ժամանակ կիներու գլխաւոր զբաղումը եղած է։ Վաղեմի քաղաքակրթուած ազգերու, մանաւանդ Յունաց եւ Հռոմայեցւոց տիկինները իրենց հագուստները իրենք կը կարէին, նոյնպէս իրենց ամուսիններուն ու զաւակներուն հանդերձները։ Մեծն Աղեքսանդր պարծանքով ցոյց կուտար իր հանդերձները, զորս իր քոյրերը կը կարէին։ Օգոստոս կայսրը իր կնոջ եւ աղջիկներուն կարած հանդերձները միայն կը հագնէր։ Մարի-Անթուանէթ՝ բանտարկութեան միջոցին՝ իր զգեստները ինք կը կարկտէր, եւ որչա՛փ կ'օրհնէր ինքզինքը, որ իր աղջկնութեան ժամանակ չէր արհամարհած ասեղնագործական աշխատութիւնները։

ԿԱՐԱՊԵՏ ԻՒԹԻՒՃԵԱՆ (1)

---

(1) Կարապետ Իւթիւճեան 1852է 1884 խմբագիրը եղած է Մասիսի, որուն արտօնատէրն է։ Ունի բազմաթիւ թարգմանութիւններ։ Ծնած է 1823ին։

50. Զրուցագրել այս հատուածը, և դնել կետադրութեան նշանները։

51. Նախադաս մասնիկներով ածանցել հետեւեալ բառերը.

Ձայն, տպել, հրաշք, ճառել, լսարան, կամք, կարգ, հիւանդ, անուն, դաշնակ, շնչել, զօրել, գիր, ուրանալ, բացում, դէպք, բաղադրել, բիծ, մեղք, քահանայ, հասուն, պատեհ, հաւասար, ածել, գեղ, երջանիկ, փոյթ, խմբել, կազմութիւն, արձակ, սահման, կեդրոն, հռչակ, պատկեր, նեխել, սեռ, ճարակ, ընկեցիկ, բաժանում։

52. Յետադաս մասնիկներով, գործողութեան կամ վիճակի գաղափար արտայայտող ածանցեալ գոյականներ շինել հետեւեալ բառերով.

Բարի, չկանել, խարշափել, սովորիլ, պարծիլ, քայլ, ապրիլ, խնդալ, տառապանալ, ծիր, մոմռալ, բամբասել, աղաչել, կործանել, կարդալ, զարդ, իղձ, հարկ, հարս, արձակ, Թշնամանել, գաղանի, ցուցնել, դղրդել, մռունչ, երեւալ, զայրանալ, լալ, հաւատալ, սպառնալ, ուտել, սիրել, Թաքչիլ, ժողով, դաշն, հիմնարկել, զանգել։

53. Յետադաս մասնիկներով, գործողութիւն մը կատարողի գաղափար արտայայտող ածանցեալ գոյականներ շինել հետեւեալ բառերով.

Ստեղծել, դրժել, հասնիլ, կառք, ժառանգել, պահել, գինի, անցնիլ, փրկել, խԹել, կցել, սայլ, դիտել, կոչել, հոսիլ, հետեւիլ, սուլել, կշիռ, քննել, գնել, բերել, Նկար։

54. Տեղի եւ ծագումի գաղափար արտայայտող գոյականներ կազմել իս, ենց, ոց, ստան, ուտ, ցի, իկ յետադաս մասնիկներով։

55. Գործողութեան մը արդիւնքի եւ գործիքի գաղափար արտայայտող գոյականներ կազմել յետադաս մասնիկներով հետեւեալ բառերէն.

Մանր, սոյլ, կարկտել, տաշել, կռել, ջնջել, զեկուցանել, կապել, խարել, ծծել։

56. Նուազականի կամ փոքրութեան գաղափար արտայայտող գոյականներ կազմել ուճի, դուխս, ակ, եկ, եակ, իկ, ուկ մասնիկներով։

57. Ակ, եղէն, ենի, ի, կան, ենց, ուց, չէն, ցու, ուոր, ւոր, յետադաս մասնիկներով գոյականներ կազմել հետեւեալ բառերէն, եւ անոնց նշանակութիւնը բացատրել.

Դեղձ, կարող, հարս, մատնի, արջ, տանձ, վիզ, բուրդ, բանիլ,

վարձել, ապուր, հող, տասը, դեղին, դատ, ուլ, ոսկի, Թև, գրիչ, խումբ, արձան, շինող, գէտ, գոգ, ղրուշ, Թշուառ, նեղ, սպիտակ։

**58.** Ցեղադաս մասնիկներով ծագումի և վերաբերութեան գաղափար արտայայտող ածականներ կազմել հետեւեալ բառերէն.

Աստուած, հոգի, քաղաք, լեռ, Անգլիա, ամիս, հիւսիս, արեւելք, գաւառ, բեւեռ, Իսրայէլ, հրէշ, մարդ, մարմին, երկինք, մեղք, դուռ, Աթէնք, այր, գիւղ, տարի, որդի, եթեր, աւիշ, յաւէրժ, Թագ, հանք, միջնադար, Նիզակ։

**59.** Ցեղադաս մասնիկներով ունեցողի գաղափար արտայայտող ածականներ կազմել հետեւեալ բառերէն.

Կասկած, տիղմ, բան, խանձ, շիկնիլ, մացառ, աչառել, պարտք, զօշոտել, Թօն, եղեռն, հիւթ, երկնչիլ, աւազ, ընտանիք, կորով, խախտել, դար, լանջք, բուրում, մօրուք, դալար, ոսկոր, տուն, առաքինութիւն, սաղարթ, պէտք, եռանդ, նշան, ծառ, ճարպ, կենդանութիւն, ոէզ, վարս, մառ, ծորել, հուր, աչք, վէմ, խոտ, քար։

**60.** Ցեղադաս մասնիկներով գործողի գաղափար արտայայտող ածականներ կազմել հետեւեալ բառերէն.

Գործ, բնակիլ, ժառանգել, աւեր, վազել, պատմել, ակնառել, գիտնալ, ողբերգ, նստիլ, ուէր, ակնածել, օրօրել, ձեռնածութիւն, հիմնարկել, վէտվէտիլ, հաւաքել, հոսիլ, խնկարկել, ճամբայ, ճռուողել, երկրպագել, զեռալ, աւելածութիւն, միջին, նաւ, շողշողել, սպասարկել, առաջին, զգալ, հոգածութիւն։

**61.** Եղէն, է, եչի, աչի, աւ, գին, իկ, ուկ յետադաս մասնիկներով ածականներ կազմել։

**62.** Ակ, ի, ին, ծու, գոյն յետադաս մասնիկներով ածականներ կազմել։

**63.** Բայերու յատուկ մասնիկներով ածանցել հետեւեալ բայերը.

Քաշել, ճանկել, փակչիլ, կանչել, պաղիլ, երերալ, կզուիլ, կպչիլ, խօսիլ, պատռել, սեղմել, փլչիլ, քակել, փախչիլ։

**64.** Ցեղադաս մասնիկներով մակբայներ կազմել հետեւեալ բառերէն.

Տեղ, կողմ, մայր, ամբողջ, ուղիղ, սիրտ, բարեկամ, գերազանց, հիմ, Գերմանիա, տէր, վստահ, կամք, մօտ, ապահով, վատ, ուժգին, երես, համառօտ, աղայ, կարեկից, Եբրայեցի, առատ, քաջ, ճշմարիտ, անցք, գիշեր, շեշտ, կրկին, ազգ, Անգլիա, բարոյական։

---

## ՇՈՒՇԱՆԸ ԵՒ ԿԱԹԻԼԸ

*Ոսկի, կապոյտ երկինքին ջերմ ցոլքին տակ,*
*Ամէն ծաղիկ երբ կը Թօռմի գլխահակ.*
*Ինչու արդեօք շըքեղ ճերմակ, ով շուշան,*
*Կը պահես դուն ճակատ մ՚աղուոր, չինչ այդքան։*
*—Զի ծոցիս մէջ շիԹ մը ցօղ՝*
*Զոր կը հեղու հոն արշալոյսը լացող,*
*Կը պահէ միշտ զովուԹիւն մը անուշիկ։*
*Այսպէս, նըման ձիւն շուշաններին, Թմբրմ աղջիկ,*
*Կը փողփողէ քուկին ճակատդ ալ կոյսի.*
*Զի սըրտիդ մէջ անմեղուԹիւն կը հոսի։*

**ԱՆԱԹՈԼ ՏԸ ՍԷԿԻՒՐ** (1)

**65.** Գոց սորվիլ եւ արտասանել այս հատուածը։



(1) Ֆրանսացի ժամանակակից գրագէտ։

# ՆՄԱՆԱՁԱՅՆ, ՀՈՄԱՆԻՇ, ՀԱԿԱՆԻՇ ԵՒ ԲԱԶՄԱՆԻՇ ԲԱՌԵՐ

## ԿԱՆՈՆՆԵՐ

**203. ՆՄԱՆԱՁԱՅՆ ԲԱՌԵՐ.** — Նմանաձայն *կ'ըսուին այն բառերը, որոնք տարբեր իմաստ, տարբեր ուղղագրութիւն ունին, բայց միեւնոյն կերպով կը հնչուին, ինչպէս.*

| | |
|---|---|
| **Բակ** (*գաւիթ կամ արեւու, լուսնի շրջանակ*) | **Փակ** (*գոց*) |
| **Բաստ** (*երջանկութիւն*) | **Փաստ** (*ապացոյց*) |
| **Բոր** (*հիւանդութիւն*) | **Փոր** (*որովայն*) |
| **Բոյթ** (*մեծ մատ*) | **Փոյթ** (*հոգ, ջանք*) |
| **Բուտ** (*անտառուտի մուտք*) | **Փուտ** (*փտած*) |
| **Գայլ** (*անասուն*) | **Քայլ** (*ոտքի շարժում*) |
| **Գամել** (*բեւեռել*) | **Քամել** (*ջուրը առնել*) |
| **Գերել** (*գերի ընել*) | **Քերել** (*մորթը չփել*) |
| **Գող** (*աւազակ*) | **Քող** (*լաչակ*) |
| **Դաւ** (*դաւաճանութիւն*) | **Թաւ** (*խիտ*) [*յականը*) |
| **Դող** (*դողալ*) | **Թո՛ղ** (*թողուլ բային հրամա-* |
| **Դոյլ** (*ջուրի աման*) | **Թոյլ** (*դանդաղ, թո՛ղ*) |
| **Դուռ** (*տան, սենեակի փակոց*) | **Թուռ** (*մեծ պատառ*) |
| **Դեր** (*դերասանի մը կատարելիք պաշտօնը*) | **Թեր** (*կողմ*) [*ճակ*) |
| **Դեմ** (*հակառակ*) | **Թեմ** (*եպիսկոպոսական վի-* |
| **Դիւր** (*դիւրին*) | **Թիւր** (*սխալ*) |
| **Դեւ** (*սատանայ*) | **Թեւ** (*բազուկ*) |
| **Դալուկ** (*դեղնութիւն*) | **Թալուկ** (*խելքի պտոյտ*) |

| | |
|---|---|
| *Դիակ* (մեռած կենդանիի մարմին) | *Թիակ* (նաւու թի) |
| *Կառ* (կարողութիւն) | *Կառ* (կարելու գործողութիւն) |
| *Համբոյր* (պագ, համբուրանք) | *Յամբոյր*, (անուշահոտ) |
| *Հանք* (մետաղ պարունակող ստորերկրեայ վայր) | *Յանգ* (ձայն, ոտանաւորի վերջաւորութիւն) |
| *Հարկ* (պէտք) | *Յարկ* (դամփկոն) |
| *Հարթ* (շիտակ) | *Յարդ* (չոր խոտ) |
| *Համր* (անխօս) | *Յամր* (կամաց) |
| *Հոյլ* (երամ) | *Յոյլ* (ծոյլ) |
| *Հոռի* (Հայոց երկրորդ ամիսը) | *Յոռի* (գէշ) |
| *Հոտ* (բոյր) | *Հօտ* (երամակ) |
| *Հոյզ* (ծառերէն վազած խէժ) | *Յոյզ* (յուզում) |
| *Ծիգ* (ջանք, յոգնութիւն) | *Ծիք* (ժժմակներու շողիք) |
| *Յեռուլ* (կոխնել) | *Հեռուլ* (հիւսել) |

**204. ՀՈՄԱՆԻՇ ԲԱՌԵՐ.** — Հոմանիշ կ՚ըսուին այն բառերը, որոնք միեւնոյն գաղափարը կը ներկայացնեն, իմաստի երանգներով միայն տարբերելով քիչ շատ իրարմէ, ինչպէս

*Ալիք, կոհակ, վէտ, ծուփ, ծփանք:*
*Անտառ, մայրաւոր, պուրակ, թաւուտ:*
*Ագահ, ժլատ, կծծի, ուիշտ, կցիր, ճղճիմ:*
*Աւարել, թալլել, յափշտակել, կողոպտել, զերթել, կապտել, շորթել, գողնալ, խլել, կորզել:*
*Գթալ, մեղքնալ, կարեկցիլ, արգահատիլ, ցաւիլ, ցաւակցիլ, վշտակցիլ:*
*Թովել, դիւթել, հմայել, հրապուրել, զգլխել, կախարդել, խայծել, կարթել:*
*Հարուստ, փարթամ, ճոխ, մեծատուն, ընչեղ:*
*Ծոյլ, յոյլ, պղերգ, դանդաղ, հեղգ, ցուրտ, թոյլ:*
*Կաթիլ, շիթ, ցող, կայլակ, շաղ, կաթ, պուտ:*

Կապոյտ, լուրթ, թիլ, սամազուն, ծաւի, խաժ, պլուզ, շափիւղայ:

Կարմիր, հիր, ծիրանի, շառագոյն, բոսոր, շէկ:

Ձոր, հովիտ, ծործոր, եմակ, ծմակ:

Կողով, սակառ, սփրիդ, տառապան, կայթ, կրոց, զամբիւղ:

Ցաւ, թախիծ, վիշտ, մորմոք, կսկիծ, տառապանք, տուայտանք, տաղտապանք, ղկանք, չարչարանք, տանջանք:

Ցուպ, գաւազան, մական, ճոկան, ձաղկ, բիր:

Խումբ, ջոկատ, գունդ, վաշտ, խուժան, ամբոխ, պար, տարմ, հոյլ, բոյլ, հօտ, երամակ, վոհմակ, նախիր, ջողիր, պառակ, ջոկ, ճահուկ, հորան, վտառ, դասակ:

Մռնչել, գոչել, գոռալ, խանչել, կանչել, կոշել, հռնչալ, ոռնալ, խորդալ, բառաչել, պոռչալ, պոռալ, պոռոչել, բնչել:

Պայծառ, յստակ, ջինջ, ականակիտ, անապակ, մաքուր:

Տնակ, խրճիթ, հիւղ, խղիկ, վանիկ:

Վերջ, վախճան, ամբոկ, լրում, կատարած, յ

Մառ, մառախուղ, մշուշ, մէգ, մռայլ:

**205. ՀԱԿԱՆԻՇ ԲԱՌԵՐ.** — Հականիշ կ'ը այն բառերը, որոնք իրարու հակառակ նշանակութիւ ունին.

Տաք—ցուրտ, մեծ—պզտիկ, սուր—բութ, աղուոր—տգեղ, բարակ—հաստ, լոյս—մութ, շիտակ—ծուռ, արագ—յամր, խիտ—ցանցառ, թեթեւ—ծանր, երկայն—կարճ, ցորեկ—գիշեր, մանկութիւն—ծերութիւն, առտու—իրիկուն, հրճուանք—վիշտ, պարզութիւն—պաճուճանք, գիրութիւն—նիհարութիւն, լիճ—կղզի, լեռ—անդունդ, ծով—ցամաք:

**206.** Ասոնցմէ մաս մըն ալ ան, ող, ը, ոծ, ըծ, ըծ մասնիկներով կը կազմուին.

Հանգիստ—անհանգիստ, օրինաւոր—ապօրինաւոր, գի-տութիւն—տգիտութիւն, պատեհ—դժպատեհ, գունաւոր—տժգոյն:

**207. ԲԱԶՄԱՆԻՇ ԲԱՌԵՐ.** — Բազմանիշ կը կոչենք այն բառերը, որոնք մէկէ աւելի իմաստ ունին.

**Այս** (չար ոգի, ասիկա), **բեւեռ** (աշխարհի ծայրը, գամ), **բարակ** (նուրբ, որսի շուն), **դար** (հարիւր տարի, զառիվայր), **խոհ** (մտածում, կերակուր), **ժամ** (եկեղեցի, ժամանակի միջոց), **կալ** (ցորենի կալ, արեւու կամ լուսնի շրջանակ), **կաթ** (սննդարար հեղուկ, կաթիլ), **կոյս** (աղջիկ, կողմ), **կուշտ** (յագեցած, կող), **հաւ** (մեծ հայր, անասուն), **մայր** (ծնող, թեղօշ), **մորի** (գազանի բոյն, մորենիի ծառ), **ուշ** (միտք, անագան), **պար** (խումբ, ոտքի խաղ), **պուտ** (կարի խաչխաչ, կաթիլ), **ցանկ** (ցուցակ, ճիւղերով շինուած պատ), **լորտ** (ծոյլ, անգլիացի ազնուական), **մարտ** (գարնան ամիս, պատերազմ), **հազար** (տասը անգամ հարիւր, բոյս), **ստոր** (վար, ստորակէտ), **գէշ** (յոռի, դիակ)։

---

## ՀՐԱՀԱՆԳՆԵՐ

---

## ԾԻՏԻՆ ՊԱՐՏՔԸ

Սեւ կաշիէ մեծկակ պայուսակ մըն էր զոր ատու իրիկուն իր ձեռքը բռնած կ'երթար փողոցներէն։ Իր կեանքին անբաժան ընկերն էր այս տոկուն կաշիէ պարկը, որով ամէն իրիկուն իր տան պիտոյքը, հացն ու միսը կը տանէր, կամ պտուղը իր երկու փոքրիկ զաւակներուն, որոնք գրան առջեւէն՝ այս խոստմնալից ու խոստմնապահ պայուսակին շուրջը կը բոլորուէին։ Այս մարդուն բոլոր յոգնաջան վաստակն ու քրտնաթոր գոր-

Կապոյտ , լուրթ , թիլ , սանմագուն , ծաւի , խաժ , պղուզ , շափիւղայ :

Կարմիր , հիր , ծիրանի , շառագոյն , բոսոր , շէկ :

Ձոր , հովիտ , ծործոր , եմակ . ծմակ :

Կողով , սակառ , սփրիդ , տառապան , կայթ , կթոց , զամբիւղ :

Ցաւ , թախիծ , վիշտ , մորմոք , կսկիծ , տառապանք , տուայտանք , տաղտապանք , ղլկանք , չարչարանք , տանջանք :

Ցուպ , գաւազան , մական , ճոկան , ձաղկ , բիր :

Խումբ , ջոկատ , գունդ , վաշտ , խուժան , ամբոխ , պար , տարմ , հօյլ , բոյլ , հօտ , երամակ , վոհմակ , նախիր , ջոկեր , պառակ , ջոկ , ճահմակ , հօրան , վտառ , դասակ :

Մռնչել , գոչել , գոռալ , խանչել , կանչել , կոչել , հռնդալ , ոռնալ , խորդալ , բառաչել , պոռչտալ , պոռալ , պոռոչել , բնչել :

Պայծառ , յստակ, ջինջ, անպանակիս , անապակ, մաքուր:

Տնակ , խրճիթ , հիւղ , խղիկ , վանիկ :

Վերջ , վախճան , ամբոկ , լրում , կատարած , յանգ :

Մառ , մառախուղ , մշուշ , մէգ , մռայլ :

**205. ՀԱԿԱՆԻՇ ԲԱՌԵՐ.** — Հականիշ կ'ըսուին այն բառերը , որոնք իրարու հակառակ նշանակութիւն ունին .

Տաք—ցուրտ , մեծ—պզտիկ , սուր—բութ , աղուոր—տգեղ , բարակ—հաստ , լոյս—մութ , շիտակ—ծուռ, արագ—յամր , խիտ—ցանցառ , թեթեւ—ծանր , երկայն—կարճ , ցորեկ—գիշեր , մանկութիւն—ծերութիւն, առտու—իրիկուն, հրճուանք—վիշտ, պարզութիւն—պաճուճանք , գիրութիւն—նիհարութիւն , լիճ—կղզի , լեռ—անդունդ , ծով—ցամաք :

**206.** Ասոնցմէ մաս մըն ալ ան , ապ , ա , դժ , դժ մասնիկներով կը կազմուին .

*Հանգիստ*—*անհանգիստ*, *օրինաւոր*—*ապօրինաւոր*, *գիտութիւն*—*տգիտութիւն*, *պատեհ*—*դժպատեհ*, *գունաւոր*—*դժգոյն*։

**207. ԲԱԶՄԱՆԻՇ ԲԱՌԵՐ.** — Բազմանիշ *կը կոչենք այն բառերը, որոնք մէկէ աւելի իմաստ ունին*.

*Այս* (*չար ոգի*, *ասիկա*), **բեւեռ** (*աշխարհի ծայրը*, *գամ*), **բարակ** (*նուրբ*, *որսի շուն*), **դար** (*հարիւր տարի*, *զառիվայր*), **խոհ** (*մտածում*, *կերակուր*), **ժամ** (*եկեղեցի*, *ժամանակի միջոց*), **կալ** (*ցորենի կալ*, *արեւու կամ լուսնի շրջանակ*), **կաթ** (*սննդարար հեղուկ*, *կաթիլ*), **կոյս** (*աղջիկ*, *կողմ*), **կուշտ** (*յագեցած*, *կող*), **հաւ** (*մեծ հայր*, *անասուն*), **մայր** (*ծնող*, *թեղօշ*), **մորի** (*գազանի բոյն*, *մորմենիի ծառ*), **ուշ** (*միտք*, *անագան*), **պար** (*խումբ*, *ոտքի խաղ*). **պուտ** (*վայրի խաշխաշ*, *կաթիլ*), **ցանկ** (*ցուցակ*, *ճիւղերով շինուած պատ*), **ճոռ** (*ծոյլ*, *անպիտանցի ազնուական*), **մարտ** (*գարնան ամիս*, *պատերազմ*), **հազար** (*տասը անգամ հարիւր*, *բոյս*), **ստոր** (*վար*, *ստորակէտ*), **գէշ** (*յոռի*, *դիակ*)։

---

## ՀՐԱՀԱՆԳՆԵՐ

---

## ԾԻՏԻՆ ՊԱՐՏՔԸ

Սեւ կաշիէ մեծկակ պայուսակ մըն էր զոր առտու իրիկուն իր ձեռքը բռնած կ'երթար փողոցներէն։ Իր կեանքին անբաժան ընկերն էր այս տոկուն կաշիէ պարկը, որով ամէն իրիկուն իր տան պիտոյքը, հացն ու միսը կը տանէր, կամ պտուղը իր երկու փոքրիկ զաւակներուն, որոնք գրան առջեւէն՝ այս խոստմնալից ու խոստմնապահ պայուսակին շուրջը կը բոլորուէին։ Այս մարդուն բոլոր յոգնաջան վաստակն ու քրտնաթոր գոր-

Կապոյտ, լուրթ, բիլ, սանկագոյն, ծաւի, խաժ, պղուզ, շափիւղայ:

Կարմիր, հիր, ծիրանի, շառագոյն, թուխ, շէկ:

Ձոր, հովիտ, ծործոր, եհնակ, ծմակ:

Կողով, սակառ, սփրիդ, տառապան, կայթ, կթոց, զամբիւղ:

Ցաւ, թախիծ, վիշտ, մորմոք, կսկիծ, տառապանք, տուայտանք, տաղտապանք, ցլկանք, չարչարանք, տանջանք:

Ցուպ, գաւազան, մական, ճոկան, ձաղկ, բիր:

Խումբ, ջոկատ, գունդ, վաշտ, խուժան, ամբոխ, ապար, տարմ, հոյլ, բոյլ, հօտ, երամակ, վոհմակ, նախիր, ջոկիր, պառակ, ջոկ, ճահմակ, հօրան, վտառ, դասակ:

Մռնչել, գոչել, գոռալ, խանչել, կանչել, կօշել, հնչալ, ոռնալ, խորդալ, բառաչել, սոռնչալ, սոռալ, սոռոնչել, բնչել:

Պայծառ, յստակ, ջինջ, ականակիտ, անապակ, մաքուր:

Տնակ, խրճիթ, հիւղ, խղիկ, վանիկ:

Վերջ, վախճան, ամբոկ, ղրուհ, կատարած, յանգ:

Մառ, մառախուղ, մշուշ, մէգ, մռայլ:

**205.** ՀԱԿԱՆԻՇ ԲԱՌԵՐ. — Հականիշ *կ'ըսուին այն բառերը, որոնք իրարու հակառակ նշանակութիւն ունին.*

Տաք—ցուրտ, մեծ—պզտիկ, սուր—բութ, աղուոր—տգեղ, բարակ—հաստ, լոյս—մութ, շիտակ—ծուռ, արագ—յամր, խիտ—ցանցառ, թեթեւ—ծանր, երկայն—կարճ, ցորեկ—գիշեր, մանկութիւն—ծերութիւն, առոյգ—իրիկուն, հրճուանք—վիշտ, պարզութիւն—պաճուճանք, գիտութիւն—անգիտութիւն, լիճ—կղզի, լեռ—անդունդ, ծով—ցամաք:

**206.** *Ածանցմէ մաս մըն ալ ան, ող, ք, ոծ, ած մասնիկներով կը կազմուին.*

Հանգիստ—անհանգիստ, օրինաւոր—ապօրինաւոր, գիտութիւն—տգիտութիւն, պատեհ—դժպատեհ, գունաւոր—դժգոյն:

**207. ԲԱԶՄԱՆԻՇ ԲԱՌԵՐ.** — Բազմանիշ կը կոչենք այն բառերը, որոնք մէկէ աւելի իմաստ ունին.

Ալս (չար ոգի, սարկա), **բերան** (աշխարհի ծայրը, գամ), **բարակ** (նուրբ, որսի շուն), **դար** (հարիւր տարի, զառիվայր), **խոհ** (մտածում, կերակուր), **ժամ** (եկեղեցի, ժամանակի միջոց), **կալ** (ցորենի կալ, արեւու կամ լուսնի չրջանակ), **կաթ** (անուշարար հեղուկ, կաթիլ), **կոյս** (աղջիկ, կողմ), **կուշտ** (յագեցած, կող), **հաւ** (մեծ հայր, անասուն), **մայր** (ծնող, թեղօշ), **մորի** (գազանի բոյն, մորմենիի ծառ), **ուշ** (միտք, անագան), **պար** (խումբ, ոտքի խաղ), **պուտ** (վարի խաչխաչ, կաթիլ), **ցանկ** (ցուցակ, ճիւղերով չինուած պատ), **ցուրտ** (ծոյլ, անզգլիացի աղնուական), **մարտ** (գարնան ամիս, պատերազմ), **հազար** (տասը անգամ հարիւր, բոյս), **ստոր** (վար, ստորակէտ), **գէշ** (յոռի, դիակ)։

---

## ՀՐԱՀԱՆԳՆԵՐ

---

### ԾԻՏԻՆ ՊԱՐՏՔԸ

Սեւ կաշիէ մեծկակ պայուսակ մըն էր զոր առտու իրիկուն իր ձեռքը բռնած կ'երթար փողոցներէն։ Իր կեանքին անբաժան ընկերն էր այս տոկուն կաշիէ պարկը, որով ամէն իրիկուն իր տան պիտոյքը, հացն ու միսը կը տանէր, կամ պտուղը իր երկու փոքրիկ զաւակներուն, որոնք գրան առջեւէն՝ այս խոստմնալից ու խոստմնապահ պայուսակին չուրջը կը բոլորուէին։ Այս մարդուն բոլոր յոգնաջան վաստակն ու քրտնաթոր գոր-

*ծունէութիւնը անոր մէջ էր, դանդայեան տակաւ զոր կը լեցնէր չարունակ երեսուն տարիներէ ի վեր առանց յաջողելու։ Իր կեանքի պայքարը հոն էր ամբողջ. այբուսաի խնդիր, օրական հացի խնդիր, որուն արհաւիրքովը լի էր մինչեւ այդ կաշին՝ պահարանը իր մշտնջենական պարապութեան։ Իր ուրախութիւնները եւ ցաւերն ալ հոն էին, իր յիշատակներն ալ։ Աղէկ օրեր ու գէշ օրեր ունէր այդ տոպրակը, երբոր պէս ճակատագիր մը յարափոփոխ, եւ անոր պէս հոգի մըն ալ ունէր կարծես։ Ո՞վ էր տէրը այս երկուքին մէջ. երեսուն տարի վերջը, երբ ձախորդութիւնը իր երկաթէ շրջապատող օղակներով զինքը կը պաշարէր, այս մարդը կը հասկընար որ այդ անզգայ տոպրակը իրեն տէրը եղած էր մինչա*

ԳՐԻԳՈՐ ԶՕՀՐԱՊ (1)

**66.** Զրոյցագրել այս հատուածը, և կէտադրութեան նշաններ դնել։

**67.** Գտնել այս հատուածին մէջ գործածուած հետեւեալ բառերուն համանիշները, ու անոնցմով նորէն շարադրել զայն.

*Կաշի, պայուսակ, անբաժան, տոկուն, պարկ, յոգնաջան, պայքար, արհաւիրք, պարապութիւն, ուրախութիւն. ցաւ, օրական, աղէկ, գէշ, ճակատագիր, յարափոփոխ, շրջապատող, անզգայ։*

**68.** Գտնել տասը *նմանաձայն* բառեր, և գործածել զանոնք զոյգ զոյգ միեւնոյն խօսքին մէջ։

**Օրինակ.** — *Բակին դուռները փակ էին։*
*Թոյլ տուէ՛ք որ դոյլերս լեցնեմ։*

**69.** Գտնել հետեւեալ բառերուն *համանիշները* և բացատրել զանոնք.

*Դայլայլիկ, ջրվէժ, ուղէշ, խիստ, զրոյց. գուեհ, վանել, աւերակ, ժայռ, խարձ, ձաղկել, ագի, ծեփել, վաշտ, մագիլ, մալել, շիրիմ, մահիճ, շքեղ, ոստն, մոխիր, մորոս, մոցել, կորիճ, զառիթափ, զառամ, կարկամիլ, կարկաչ, կայթել, կափուլ, մրափել, տար, բուռ, աւար, տրփի, յեղուզակ, դարպաս, հնոց, ձորձ, վարմ։*

---

*(1) Գրիգոր Զօհրապ, ծանօթ դրագէտ եւ փաստաբան, ծնած 1860ին, հրատարակած է նորավէպեր եւ յօդուածներ հայ պարբերականներու մէջ։*

**70.** Գտնել հետեւեալ բառերուն հականիշները, կամ անոնց իմաստը հակառակ դարձնել *ան*, *ապ*, *տ*, *տժ*, *դժ* մասնիկներով.

*Սեթեւեթ, լայն, դանդաղ, սրամիտ, փութկոտ, աւերակ, խաղաղ, աղտոտ, քաջ, ժլատ, լռութիւն, մերժում, ընդլայնում, հեռաւոր, զգայուն, մերձենալ, եղեռնաւոր, մօրուանի, պատուաւոր, անուշահոտ, շահեկան, պատշաճ, կշտամբանք, պարզութիւն, բեղմնաւոր, պարարտ, խաւար, հալած, պայծառ, ճկուն, անօթի, տեսական, հարթ, ժուժկալ, ծոյլ, ձեռնհաս, լուրջ, հպարտ, հսկայ, փոթորիկ, գթութիւն։*

**71.** Մէյ մէկ նախադասութեան մէջ գործածել հետեւեալ բազմանիշ բառերը իրենց կրկին նշանակութիւններովը զատ զատ.

*Մայր, կուշտ, ցանկ, բարակ, մորի, դար, ձաւ, ժամ, բեւեռ, կալ, ուշ, պուտ։*

**Օրինակ.** — *Մեր տան վայրապատին մէջ բազմաթիւ հաւեր կան։*
*Մեր ծերունի հայրը սիրուն պատմութիւններ կը պատմէ իր թոռներուն։*

---

## ԼՈՒՍՆԻ ԼՈՅՍՈՎ

*Ծովն է խաղաղ, գորշ անսահման*
*Հոն հիւ կու գայ աչքս հազիւ.*
*Ըսկիզբ չունի, ոչ ալ վախճան,*
*Ոչ գիշեր է, ոչ ալ տիւ,*

*Չըկայ ալիք, ծուփք փըրփըրածայր.*
*Շող չըկայ խորն եթերին.*
*Ոչինչ մարած՝ ոչինչ է վառ.*
*Օդը՝ լոյս չէ, ոչ մըթին.*

*Ջրհաւ, որոր ճիչերով բիրտ*
*Ալկիոններ խոյս կու տան.*
*Այս մենութեանց մէջ անխըլիրտ՝*
*Խոր ձանձրոյթ մը կու գայ մանն։*

*Չըկայ շունչ մը, շըշունչ մը խուն։*
*Կողն իր փայլուն՝ պղինձէ՝*
*Հազիւ նաւը յոյլ, օրօրուն՝*
*Թուխ ջուրէն դուրս կը ցըցէ։*

Արեւելքէն լոյս մը պայծառ,
Մոխրի նըման հոլաթև,
Հորիզոնէն կը ձիւնէ վար
Ծուպերով նուրբ ու թեթև։

Ու կը լողայ, կ'անձրեւէ ցող,
Բողբոջելով զերդ ծաղիկ.
Կը պըտուտկի սըփռած զերդ քող
Մէգն իր բարակ թափանցիկ։

Տըժգոյն բոց մը կը ցայտէ վեր
Կ'ակօսէ ծովը ատլասու
Երկինքին մէջ մարգարտայեռ
Լուսինն յուշիկ կու գայ ժուռ։

ԼԸ ԳՈՆԹ ՏԸ ԼԻԼ (1)

77. Գոց սորվիլ այս ոտանաւորը, և բարձրաձայն արտասանել։

78. Մէյ մէկ նախադասութեան մէջ գործածել հետեւեալ բառերը.

Հիռ գալ, թիրտ, անխլիրտ, հոլաթև, ծուփ, պտուտկիլ, մէգ, ցայտել, մարգարտայեռ, ժուռ գալ։



(1) Լը Գոնթ տը Լիլ՝ ժամանակակից Ֆրանսացի նշանաւոր բանաստեղծ։

**223.** Բացառիկ են թոռ, եզ, զառ, դուռ, մաս, ձեռ, քեռ բառերը, որոնք եր էն առաջ ն մը կ'առնեն յոգնակիի մէջ. թոռներ, եզներ, զառներ, եւայլն։ Այս բացառութեանց պատճառը այն է որ այդ բառերը գրաբարի մէջ միշտ ն ով գործածուած են, ինչպէս. թոռն, եզն, զառն, եւայլն։

**224.** Մէկ ու կէս վանկ ունեցող բառերը եր ով յոգնակի կ'ըլլան, երբ կէս վանկը բառին վերջն է. արկղ—արկղեր, սանր—սանրեր։ Այս կարգի բառերը միշտ ձայն տառերով կը վերջանան։

**225.** Մէկուկէս վանկ ունեցող բառերը ներ ով յոգնակի կ'ըլլան, երբ կէս վանկը բառին սկիզբն է. դրամ—դրամներ, մշակ—մշակներ։ Այս բառերուն առաջին մասին մէջ ընդհանրապէս ձայն կամ թոյլ տառեր կը գտնուին։

**226.** Բազմավանկ բառերը ներ ով յոգնակի կ'ըլլան. երկիրներ, բերաններ, պաշտօնեաններ։

**227.** Կարգ մը ք ով վերջացող բառեր, որոնք գրաբարի մէջ անեզական են, աշխարհաբարի մէջ իբր եզակի կը գործածուին, եւ եր ով կամ ներ ով յոգնակի կ'ըլլան. դիրք—դիրքեր, կրօնք—կրօնքներ, ընտանիք—ընտանիքներ, եւայլն։

Ծնողք եւ Նախնիք բառերը, որոնք յոգնակի իմաստ ունին, կրկին յոգնակի կ'ըլլան հետեւեալ ձեւով. ծնողքներ, նախնիքներ։ Կ'ըսենք. Գրիգորին ծնողքը, եւ Գրիգորին ու Յովհաննէսին ծնողքները. Ֆրանսացւոց նախնիքը, եւ Ֆրանսացւոց ու Իտալացւոց նախնիքները։

**228.** Երբ անձայն յ ով վերջացող գոյականը յոգնակի ըլլայ, յն կը ջնջուի. քահանայ—քահանաներ, հաւաքածոյ—հաւաքածոներ։

**229.** Գրաբարի ձեւով, այսինքն ք ով յոգնակի կրնան ըլլալ.

1. Ցի մասնիկով վերջացող յատուկ և հասարակ անունները. Կեսարացի—Կեսարացիք, քաղաքացի—քաղա-քացիք։

2. Կան մասնիկով վերջացող յատուկ և հասարակ անունները. Ղեւտական—Ղեւտականք, պահպանողական—պահպանողականք։

3. Եան վերջացող յատուկ և հասարակ անունները. Օսմանեան—Օսմանեանք, սկեպտիկեան—սկեպտիկեանք։

Այս բառերը ազգի մը, կրօնքի մը, ընտանիքի մը, կուսակցութեան մը կամ միջավայրի մը պատկանող մարդիկ կը ներկայացնեն ընդհանրապէս։

**230.** Մատ, ձեռք, ոտք, աչք, ծունկ բառերը, երբ նշանակեն մարդոց անդամները, սա ձեւով ալ յոգ-նակի կրնան ըլլալ. մատուըներ, ձեռուըներ, ոտուըներ, աչուըներ, ծունկուըներ։

**231.** Մատ կ'ըլլայ միշտ մատներ, երբ նշանակէ դաշնակի ստեղ։

**232.** Ոտք կ'ըլլայ միշտ ոտքեր, երբ նշանակէ ո-տանաւորի չափ, սեղանի կամ ուրիշ կարասիի ոտք, կամ երկարութեան չափ։

**233.** Ծունկ կ'ըլլայ միշտ ծունկեր, երբ նշանակէ բոյսի մայրան։

**234.** Քով յոգնակի կրնան ըլլալ նաեւ կարգ մը ազգերու անուններ. Ղպտիք, Հրեայք, Հելլենք, Պուլ-կարք, եւայլն։

**235.** Հետեւեալ կերպով ալ յոգնակի կրնան ըլ-լալ սա բառերը. տղայ—տղաք, կին—կանայք, մարդ—մարդիկ, տեղ—տեղուանք, կտոր—կտորուանք։

**236.** ԲԱՐԴ ԲԱՌԵՐՈՒ ՅՈԳՆԱԿԻՆ. — Երբ բարդ բառի մը վերջին բառը բազմավանկ է, երբ բազմա-վանկ բառ, միշտ ներ ով յոգնակի կ'ըլլայ. քեռորդի—քեռորդիներ, երկբարբառ—երկբարբառներ։

**237.** Երբ բարդ բառին վերջին բառը միավանկ է, այն ատեն երբեմն երով, երբեմն ներով յոգնակի կ'ըլլայ, հետեւեալ կանոններուն համաձայն.

Ա. Երբ այս կարգի բարդ բառ մը առանց յօդակապի կամ շաղկապի միացած է, միշտ ներով յոգնակի կ'ըլլայ. բառգիրքներ, ծովափներ, խառայրներ, եւայլն:

Բ. Երբ բարդ բառին վերջին մասը բայարմատ է, միշտ ներով յոգնակի կ'ըլլայ. գրագիրներ (գիր՝ գրել բային արմատն է), հրաշակերտներ (կերտ՝ կերտել բային արմատն է), ղեկավարներ (վար՝ վարել բային արմատն է), վարուցաններ (ցան՝ ցանել բային արմատն է):

Գ. Երբ բարդ բառին վերջին մասը գոյական է, հարկ է զանազանել հետեւեալ պարագաները.

1. Ամէն անգամ որ բարդ բառն ալ գոյական մըն է, երով յոգնակի կ'ըլլայ. հաշուետուներ, հնդկահաւեր, ծառաստանքեր: Բացառութիւն են սիրամարգ գոյականը, որ կ'ըլլայ սիրամարգներ, եւ բան, պետ, տուն, ձեռ գոյականներով վերջացող գոյականները որոնք ներով յոգնակի կ'ըլլան. յառաջաբաններ, վերջաբաններ, վարդապետներ, նաւապետներ, գինետուններ, դպրատուններ, աղերսաձեռներ, ընկալաձեռներ:

2. Ամէն անգամ որ բարդ բառը ածական մըն է, որ գոյականաբար կը գործածուի, ներով յոգնակի կ'ըլլայ. քաջասիրտներ, սրամիտներ, սեւամորթներ, միավանկներ:

**238** ՅՕԴՆԱԿԻԻ ԳՈՐԾԱԾՈՒԹԻՒՆԸ. — Անորոշ (այսինքն առանց յօդի) գոյական մը յոգնակիի տեղ կրնայ նաեւ եզակի գործածուիլ, մանաւանդ թուական եւ անորոշ ածականներու առջեւ, երբ խօսքին իմաստը ինքնին կը յայտնէ թէ յոգնակի է. Տաս ձուկ եկաւ: Քանի հոգի կար հոն: Քանի մը տուն այրեցաւ: Չորս ձի լծեր էին կառքին: Ծառերը ծաղիկ տուին:

**239.** *Բայց երբ գոյականը որոշ ըլլայ, պէտք է միշտ յոքնակի դնել.* Զեր տեսած երկու տղաքը հոս են: Սա ծառին բոլոր պտուղները թափեցան: Նկարուած երկու պատկերներուն չհաւնեցայ:

**240.** *Գոյականը թուական ածականէ մը ետքը յոքնակի կը դրուի նաեւ գաղափարին սաստկութիւն տալու համար.* Իր խանն հազար ոսկիները չկրցան զինքը փրկել. երկու աչքերովս տեսայ. երկու ականջներովս լսեցի:

**241.** *Չափ եւ աստիճան ցուցնող բառերը երբեք յոքնակի չեն դրուիր թուական ածականներէն ետքը.* Ութը փարսախ, տասը օխա, հինգ կանգուն:

**242.** *Շատ անգամ գոյական մը յոքնակիի տեղ եզակի կը դրուի, երբ իր նախընթաց յոքնակի բառէն կամ նախադասութեան իմաստէն յայտնի է յոքնակիի իմաստ ունենալը.* Ամենուն սիրտը յուզուած էր: Տղոց կամքը կոտրելու է:

**243.** *Սոքնակի անուններու քով նմանութեան համար գործածուած գոյականները սովորաբար եզակի կը մնան.* Ընկոյզի չափ կարկուտի հատիկներ տեղացին: Մարգրտի պէս ճերմակ ակռաներ ունի: *Այս պարագային մէջ կարելի է սակայն յոքնակի ալ դնել.* Զիերու պէս կը վազէին:

---

## ՀՐԱՀԱՆԳՆԵՐ

### ԱՇԽԱՏՈՒԹԻՒՆ

*Մարդս կը ծնի մերկ եւ տկար, տկար, այո՛, քան շատերը կենդանիներէն, որոնք մասամբ գոգցես աւելի նպաստաւորուած են բնութենէն, որ զգեցուցած է զանոնք, եւ տուած է իւրաքանչիւրին զէնքեր անձին պաշտպանութեան համար։ Փիղը ունի իր վրիժակները,*

առիւծը իր ճիրանները, ցուլը իր եղջիւրները, արծիւը իր մագիլները, մեղուն իր խայթոցը, իժը իր թոյնը. բայց մարդը, տկար Ֆիզիգապէս, ունի իր իմացականութիւնը, որով իրեն կը հպատակեցնէ բնութեան զօրութիւնները, կը նուաճէ հակառակամարտ ոյժերը, եւ իր մարմնոյն տկարութեան օժանդակ տալով զանոնք, կ'ապահովէ իր կեանքը, եւ կը ստեղծէ իր երջանկութիւնը։ Մարդուս ամէն կարողութիւնները, Ֆիզիգական թէ իմացական, սաղմնական վիճակի մէջ տրուած են իրեն. հարկ է որ զարգացնէ զանոնք, եւ գործածէ իր պիտոյքը գոհացնելու։ Հարուստն ու աղքատը, գիտունը թէ տգէտը, գործաւորը թէ դրամատէրը, տէրը թէ ծառան հաւասարապէս ստիպուած են աշխատիլ. ան որ չունի՝ պէտք է որ շահի, եւ ունեցողը պէտք է ջանայ չկորսնցնել, այլ ընդհակառակը աճեցնել իր ունեցածը. եւ յետոյ ոչ ոք անկարօտ է. պէտքն ու կարօտութիւնը անհուներեւք են, աղքատութիւնը բազմաձեւ է, եւ կը բնակի այնքան հարուստին ապարանքը, որչափ աղքատին խրճիթը. ոսկիով հարուստը աղքատ է խելքով. ուսեալը պէտք ունի դրամի. մտքով կամ ինչքով զօրաւորը՝ տկար է մարմնով, եւ կը կարօտի Ֆիզիգական զօրութեան։ Բնութիւնը կը պահանջէ որ ամէն ձեռքի մէջ գործիք մը ըլլայ. նաւավարը՝ իր թիակը ունենայ, մշակը՝ իր բահը, երկաթագործը՝ իր մուրճը, կօշկակարը՝ իր հերիւնը, հիւսնը՝ իր ուրագը; երկրաչափն ու ճարտարապետը՝ իրենց կարկինը, մեքենագործը՝ իր մեքենան, բժիշկը՝ իր ականջափողը, նկարիչը՝ իր վրձինը, արձանագործը՝ իր դրոշը, երաժիշտը՝ իր դաշնակը, կինը՝ իր ասեղը, մատենագիրը՝ իր գրիչը։ Վատ ու անարժան է անգործ ձեռքը. պէտք է որ փոխանայ ան։ Մարդը արարչութեան թագաւոր կոչուած են, ուրեմն գործիքն է անոր մականը։

Ռ. Յ. ՊԵՐՊԵՐԵԱՆ (1)

---

(1) Ռ. Յ. Պէրպէրեան, ուսուցիչ և գրագէտ, հիմնադիր տնօրէն Պէրպէրեան վարժարանին. ծնած է 1851ին։ Գրած է Առաջին ցոլեր, Մտոյիկ եւ իրք, եայլն։ Ունի բազմաթիւ արձակ և ոտանաւոր գրուածներ Հայ հանդէսներու և թերթերու մէջ։

74. Զրուցագրել այս հատուածը։

75. Բացատրել այս հատուածին մէջ գործածուած հնական բառերը.

*Նպատաւորուիլ. վրիժակ, մազիլ, խայթոց, բահ, մուրճ, հերիւն, ուրագ, կարկին, ականջափող, գրոց, գօտանալ, մական։*

76. Լուծել քերականօրէն այս հատուածին առաջին պարբերութիւնը։

77. Ցուցնակի ընել այս հատուածին մէջ գտնուած պարզ բառերը։

78. Ցուցնակի ընել հետեւեալ բարդ բառերը.

*Ծովեզր, երէցկին, հիւսխայզ, զառիթափ, կրծկալ, գրքակալ, աստուածավախ, շողեշարժ, շատախօս, ուրեւառ, աստղիս, ելեւէջ, երթեւեկ, կերուխում, գրաձախ, Թեզանոթանիգ, ազգատոհմ, ծովարոյս, Թատերաբեմ, ծառուղի, կափամարտ, յողացու, մարտանաւ, արծաթուղթ, հօրաքոյր, աղօթագիրք, գաղթավայր, ածխահանք, ահուդող, ծեծուփեռ, վանահայր, նորավէպ, զանգրահեր, վատասիրտ, միավանկ, ծրագիր, լրագիր, սղագիր, նկարագիր, ձայնագիր, կռատուն, նաւապետ, սառնատուն, առագաստապետ, լեռնաբոյս, բթամատ, յօդակապ, բաժնետոմս, պատուատոմս, այցաքարտ, խաղաքարտ, մեծամիտ, խանութպան, գեղագէտ, ճարտարապետ, գլխարկ, գիշերազգեստ, կաթնտուն, մարդատեաց, կառախումբ, նաւարշաւ, հեծելանիւ։*

79. Գտնել հինգ մետաղի, հինգ գիտութեան, հինգ արհեստի անուն եւ մէյ մէկ խօսք շինել անոնցմով.

80. *Մաս, ոտ* եւ *ծունկ* բառերը իրենց տարբեր նշանակութիւններով գործածել մէյ մէկ նախադասութեան մէջ։

81. Ամբողջացնել հետեւեալ խօսքերը մէյ մէկ յարմար բառ դնելով կէտերուն տեղ.

*Այս տարի մեր վարդենիները բնաւ ... չտուին։*
*Մեր դրացուն բոլոր . . լիճը ինկան։*
*Օրը եօթը ... աւելի չեմ կրնար աշխատիլ։*
*Բոլոր հանդիսականները ... վեր վերցուցին։*
*Այս տղաքը ... պէս այտեր ունին։*
*Ձեր աղջիկները ... նման կ'երգեն։*
*Վարժարանին աշակերտները ... ստացան։*
*Անցեալ տարի շատ ... առի հիւանդութեանս պատճառաւ։*

---

# ԿՈՅՍԻ ՄԸ ՄԱՀԸ

Ինչպէս ոստին վըրայ վարդը մայիսի
Գեղափըթիթ թարմ ծաղկումովն իր նախկին
Եւ վառ գոյնով նախանձ կ'ազդէ երկինքին,
Երբոր արցունքն այգուն վըրան կը հոսի,

Թերթերուն մէջ՝ սէր և շնորհ կայ կուսի,
Որ կը խընկէ ծառն ու պարտէզ քաղցրաբոյր,
Բայց ծեծուելով տապէն, թօնէն անհամբոյր,
Կը թալկանայ, թերթ թերթ, կեանքը կը խուսի։

Այսպէս չըքնաղ տարիքիդ մէջ խուսարծի,
Երբոր երկինք երկիր քեզմով կը պարծի,
Մեռա՛ր, մոխիր դարձաւ քու կեանքըդ կուսի։

Շիրմիդ վըրայ ընդունէ՛ ցաւս ու լալիք,
Բաժակ մը կաթ, լեցուն կողով մը ծաղիկ,
Որ ողջ, մեռած, միշտ վարդ ըլլաս մայիսի։

**ՌՕՆՍԱՌ** (1)

**82.** Գոց սորվիլ և բարձրաձայն արտասանել այս ոտանաւորը։



(1) Ռոնսառ, Հռչակաւոր բանաստեղծ Փրանսացի, ծնած է 1524ին, և մեռած 1585ին։

# ՀՈԼՈՎՈՒՄ

---

## ԿԱՆՈՆՆԵՐ

**244.** *Անունի մը վերջաւորութեան փոխուելուն հոլովում կ'ըսուի ։*

**245.** *Վեց հոլով կայ.* Ուղղական, հայցական, սեռական, տրական, բացառական, գործիական *:*

**246.** *Հոլովման ընդհանուր կանոնն է թէ՛ հասարակ եւ թէ՛ յատուկ անուններու համար.*

| | Եզակիի մէջ | | Յոգնակիի մէջ | |
|---|---|---|---|---|
| Ուղղ. Հայց. | *Հայ* | *Գրիգոր* | *Հայեր* | *Գրիգորներ* |
| Սեռ. Տրակ. | *Հայէ* | *Գրիգորէ* | *Հայերու* | *Գրիգորներու* |
| Բաց. | *Հայէ* | *Գրիգորէ* | *Հայերէ* | *Գրիգորներէ* |
| Գործ. | *Հայով* | *Գրիգորով* | *Հայերով* | *Գրիգորներով* |

**247.** *Աշխարհաբարի հոլովմանց մէջ, ձայնաւորներու փոփոխման կանոնը գրեթէ միշտ չի գործադրուիր.* պարտէզ, պարտէզէ. վայրկեան, վայրկեանէ. արշալոյս, արշալոյսէ. պաշտօնեայ, պաշտօնեայէ. Յովսէփ, Յովսէփէ, *եւայլն ։*

ՀԱՍԱՐԱԿ ԱՆՈՒՆՆԵՐ

**248.** *Հասարակ անուններու եզակի հոլովման բացառութիւններն են հետեւեալները.*

**249.** *Ա.. է վերջացող գրեթէ բոլոր բազմավանկ անունները սեռականի մէջ կ'ըլլան նաև ւոյ.* հոգէ, հոգւոյ, հոգիէ, հոգիով. եկեղեցւոյ, սիրելւոյ, *եւայլն ։ Կան քանի մը է վերջացող բառեր որոնք միշտ ընդհանուր օրէնքին համեմատ կը հոլովուին ներքաշնակութեան համար, ինչպէս.* մատնիէ, հայլիէ, կաղնիէ, *եւայլն ։*

**250.** Տեղի բառը սեռականի մէջ կ'ըլլայ միշտ տեղւոյ. տեղւոյն Հայերը: Տեղի բառը ուղղականի և հայցականի մէջ երբեք չի գործածուիր. բացառիկ է տեղի տալ բացատրութիւնը:

**251.** Բ. —ութիւն վերջացող ածանցեալ անունները կ'ըլլան միշտ —ութեան, —ութենէ, —ութեամբ. բարութիւն, բարութեան, բարութենէ, բարութեամբ:

**252.** Գ. —ում վերջացող ածանցեալ անունները կը հոլովուին նաև ման, մամբ. զեղծում, զեղծման, զեղծումէ, զեղծմամբ: Իսկ արմատականները միշտ ընդհանուր կանոնին համեմատ կ'ըլլան. դդում, դդումի. քրքում, քրքումի:

**253.** Դ. ի— վերջացող գոյականները ընդհանուր կանոնին մէջ կ'իյնան հոլովուիլ. բացառաբար անոնց մէկ մասը կ'ըլլան նաև ւոյ, ւէ, ւով. թի, թւոյ, թւէ, թւով. այսպէս. ամի, պատի, կողի, եւայլն. և մէկ մասն ալ կ'ըլլան ւոյ, ւէ, ւով. հաշի, հաշւոյ, հաշւէ, հաշւով. այսպէս. արծի, հոգի, եւայլն:

**254.** Ե. ել և ալ վերջացող աներևոյթները կ'ըլլան. ելու, ելէ, ելով. ալու, ալէ, ալով. երգել, երգելու, երգելէ, երգելով. խաղալ, խաղալու, խաղալէ, խաղալով:

**255.** Զ. իլ վերջացող աներևոյթներուն էն ե ի կը փոխուի հոլովման ատեն. տրտմիլ, տրտմելու, տրտմելէ, տրտմելով. լսուիլ, լսուելու, լսուելէ, լսուելով:

**256.** Է. ուլ վերջացող աներևոյթներէն երկուքը միայն կը հոլովուին. թողուլ կ'ըլլայ թողելու, թողելէ, թողլով կամ թողելով: Զգենուլ կ'ըլլայ զգենելու, զգենելէ, զգենելով: Մնացեալները չեն հոլովուիր:

**257.** Ը. Վերջին վանկին մէջ ա ունեցող անունները հոլովման մէջ ա-ը չեն կորսնցներ. սաւան, սաւանի, սաւանէ, սաւանով: Բացառիկ են. ճակատ, ճակտի. բերան, բերնի. զաւակ, զաւկի:

**258.** Թ. է պարունակող միավանկ բառերը, ինչպէս վերջին վանկին մէջ է պարունակող բազմավանկ բառերը երբեմն էն կը պահեն հոլովման մէջ. ձէրք, ձէրքէ. Նէգ, Նէգէ։ Այսպէս. խիփ, շիփ, դիրք, կիրք, փուռն, աւետիս, հայրիկ, խաւիծ, սկիհ, գուիհ, գրգիռ, կարկին, սկիզբ, դաշինք, ապառիկ, խաղալիք, ախտանիշ, եւայլն։ Կան այս կարգի բառեր ալ որոնք կը կորսնցնեն էն. գէրք, գրքի. սէրտ, սրտի. մէտք, մտքի։ Այսպէս. գիր, բաժին, մարմին, գետին, ջուսին, ծաղիկ, ռամիկ, առիթ, խնդիր, երկիր, անկողին, աղախին, եւայլն։

**259.** Սովորութեամբ է որ կը սորվուի թէ ե՛րբ էն կը մնայ և ե՛րբ կը կորսուի՝ այս կարգի բառերուն հոլովման մէջ։ Կարելի է սակայն հետեւեալ կանոնները սահմանել այդ բառերէն ոմանց համար։

**260.** Հոլովման մէջ էն կը պահեն.

1. Այն միավանկ բառերը, որոնք իով կը սկսին. իժ, իղձ, իլ, ինձ, իր, եւայլն։

2. Այն միավանկ և բազմավանկ բառերը, որոնց մէջ էն միեւնոյն բաղաձայններուն միջեւ կը գտնուի. բիբ, ցից, շիշ, հիւսիս, մատիտ, ծարիր, շաղիղ, բզիզ, փթիթ, եւայլն։

3. Այն բառերը որոնք օտար լեզուէ առնուած են. ապրիլ, մայիս, յունիս, յուլիս, զենիթ, նատիր, մետրապոլիտ, մագնիս, եւայլն։

4. էք վերջացող բառերը. աղէք, ընտանէք, հայրենէք, ոտէք, հարսնէք, բաղնէք, եւայլն։

5. Գոյականաբար գործածուած ածականները. ուրիշ, հետաքրքիր, նորածին, քաջասիրտ, ջուսաւիտ, անկարեկիր, եւայլն։

6. Երբ բառին մէջ իէն առաջ ու գայ. գրուիչ, առուին, եւայլն։

7. Երբ բառին մէջ ի ն վերջը ւն գայ. արիւն, գոչիւն, հեծիւն, եւայլն։

**261**. Հոլովման մէջ ի ն կը կորսնցնեն.

1. Բոլոր այն բարդ բառերը որոնք կիր, կիր, կից բայարմատներով վերջացած են. մասնակից, դրօշակիր, թղթակից։

2. Իչ մասնիկով վերջացող բառերը. ջրատարիչ, հաւաքիչ, կախարիչ, փրկիչ։ Այս կարգի բառերուն մէջ ի ն անջինջ կը մնայ երբ անոր ջնջմամբ բաղաձայններու խճողում յառաջ գայ. սափրիչ, զրահնիչ, փորագրիչ։

**262**. Ժ. ու պարունակող միավանկ բառերը, և վերջին վանկին մէջ ու պարունակող բազմավանկ բառերը գրեթէ միշտ ու ն կը պահեն հոլովման ատեն. ուս, ուսի. գաղութ, գաղութի։ Այսպէս. գիտուն, զուարթուն, քաղուց, ջրմուղ, հարբուխ։ Բացառիկ են սակաւաթիւ բառեր միայն. օգուտ, օգտի. տեսուչ, տեսչի. հողաբուր, հողաբրի. զօրախումբ, զօրախմբի. հեծելագունդ, հեծելագնդի։

**263**. Ու պարունակող միավանկ բառեր և վերջին վանկին մէջ ու պարունակող կարգ մը բառեր կան, որոնք բացառիկ սեռականներ ալ ունին, և հետեւեալներն են. տուն, տան. շուն, շան. աշուն, աշնան. գարուն, գարնան. անուն, անուան. մականուն, մականուան. դերանուն, դերանուան. ժողովուրդ, ժողովրդեան. մանուկ, մանկան. մատուռ, մատրան. դուռ, դրան։

**264**. ԺԱ. Կարգ մը միավանկ բառեր կան, որոնց սեռականը ու կ'ըլլայ. մարդ, մարդու. մանչ, մանչու. ձի, ձիու։ Այսպէս կ'ըլլան ընդհանրապէս. ծով, կով, գի, դի, թի, էշ, հաւ, նաւ, արջ, պահ, գահ, այգ։

**265**. Սակայն երբ այս բառերէն բարդ բառեր կազմուին, սովորաբար ընդհանուր կանոնին համեմատ

*ծունէութիւնը անոր մէջ էր, դանդաղեան տակաւ զոր կը լեցնէր չարունակ երեսուն տարիներէ ի վեր առանց յաջողելու։ Իր կեանքի պայքարը հոն էր ամբողջ. ապրուստի խնդիր, օրական հացի խնդիր, որուն արհաւիրքովը մի՛ էր մինչեւ այդ կաշիէ պահարանը իր մշտնջենական պարապութեամբ։ Իր ուրախութիւնները եւ ցաւերն ալ հոն էին, իր յիշատակներն ալ։ Աղէկ օրեր ու գէշ օրեր ունէր այդ տոպրակը, տէրոջը պէս ճակատագիր մը յարափոփոխ, եւ անոր պէս հոգի մըն ալ ունէր կարծես։ Ո՞վ էր տէրը այս երկուքին մէջ. երեսուն տարի վերջը, երբ ձախորդութիւնը իր երկաթէ շրջապատող օղակներով զինքը կը պաշարէր, այս մարդը կը հասկընար որ այդ անզգայ տոպրակը իրեն տէրը եղած էր միշտ*

ԳՐԻԳՈՐ ԶՕՀՐԱՊ (¹)

**66.** Զրուցագրել այս հատուածը, և կենսագրութեան նշաններ դնել։

**67.** Գտնել այս հատուածին մէջ գործածուած հետեւեալ բառերուն հոմանիշները, ու անոնցմով նորէն շարադրել զայն.

*Կաշի, պայուսակ, անբաժան, տոկուն, պարկ, յոգնաջան, պայքար, արհաւիրք, պարապութիւն, ուրախութիւն, ցաւ, օրական, աղէկ, գէշ, ճակատագիր, յարափոփոխ, շրջապատող, անզգայ։*

**68.** Գտնել տասը *նմանաձայն* բառեր, և գործածել զանոնք զոյգ զոյգ միեւնոյն խօսքին մէջ։

**Օրինակ.** — *Բակին դուռները փակ էին։*
*Թոյլ տուէ՛ք որ դոյլերս լեցնեմ։*

**69.** Գտնել հետեւեալ բառերուն *հոմանիշները* և բացատրել զանոնք.

*Դայլայլիկ, ջրվէժ, ուղէշ, խիստ, զրոյց. գռեհ, վանել, աւերակ, ժայռ, խարձ, ձաղկել, ագի, ծեփել, վաշտ, մագիլ, մալել, շիրիմ, մահիճ, շքեղ, ոսոխ, մոխիր, մորոս, մոցել, կորիճ, զառիթափ, զառամ, կարկամիլ, կարկառ, կայթել, կափուլ, մրափել, ատր, բուռ, աւար, արփի, յեղուզակ, դարպաս, հնոց, ձորձ, վարմ։*

(¹) Գրիգոր Զօհրապ, ծանօթ գրագէտ և փաստաբան, ծնած 1860ին, հրատարակած է նորավէպեր և յօդուածներ հայ պարբերականներու մէջ։

**70. Գտնել հետեւեալ բառերուն հականիշները, կամ անոնց իմաստը հակառակ դարձնել ան, ապ, չ, տժ, դժ մասնիկներով.**

*Սեթեւեթ, լայն, դանդաղ, սրամիտ, փութկոտ, աւերակ, խաղաղ, աղտոտ, քաջ. ժլատ, լռութիւն, մերժում, ընդլայնում, հեռաւոր, զգայուն, մարմնեղ, եղեռնաւոր, մօրուանի, պատուաւոր, անուշահոտ, շահեկան, պատշաճ, կշտամբանք, պարզութիւն, բեղմնաւոր, պարարտ, խաւար, հալած, պայծառ, ճկուն, անօթի, տեսական. հարթ, ժուժկալ, հլու, ձեռնհաս, լուրջ, հպարտ, հսկայ, փոթորիկ, գթութիւն։*

**71. Մէյ մէկ նախադասութեան մէջ գործածել հետեւեալ բազմանիշ բառերը իրենց կրկին նշանակութիւններովը զատ զատ.**

*Մայր, կուշտ, ցանկ, բարակ, մորի, դար, հաւ, ժամ, բեւեռ, կալ, ուշ, պուտ։*

**Օրինակ.** — *Մեր տան վայրապատին մէջ բազմաթիւ հաւեր կան։*
*Մեր ծերունի հաւը սիրուն պատմութիւններ կը պատմէ իր թոռներուն։*

---

# ԼՈՒՍՆԻ ԼՈՅՍՈՎ

*Ծովն է խաղաղ, գորշ անսահման*
*Հոն հիւ կու գայ աչքս հազիւ.*
*Ըսկիզբ չունի, ոչ ալ վախճան,*
*Ոչ գիշեր է, ոչ ալ տիւ,*

*Չըկայ ալիք, ծուփք փըրփրածայր,*
*Շող չըկայ խորին եթերին.*
*Ոչինչ մարած՝ ոչինչ է վառ.*
*Օդը՝ լոյս չէ, ոչ մըթին։*

*Ջրհաւ, որոր ճիչերով բիրտ*
*Ալկիոններ խոյս կու տան.*
*Այս մենութեանց մէջ անխըլիրտ՝*
*Խոր ձանձրոյթ մը կու գայ ման։*

*Չըկայ շունչ մը, շըշունչ մը խուն։*
*Կողն իր փայլուն՝ պղինձէ՝*
*Հազիւ նաւը յոյլ, օրօրուն՝*
*Թուխ ջուրէն դուրս կը ցըցէ։*

Արեւելքէն լոյս մը պայծառ,
Մոխրի նըման հոլաթև,
Հորիզոնէն կը ձիւնէ վար
Ծուպերով նուրբ ու թեթև։

Ու կը լողայ, կ'անձրեւէ ցօղ,
Բողբոջելով զերդ ծաղիկ.
Կը պըտուտկի սըփռած զերդ քօղ
Մէջն իր բարակ Թափանցիկ։

Տըժգոյն բոց մը կը ցայտէ վեր
Կ'ակօսէ ծովը սարսուռ
Երկինքին մէջ մարգարտայեռ
Լուսինն յուշիկ կու գայ ժուռ։

ԼԸ ԳՈՆԹ ՏԸ ԼԻԼ (1)

**72.** Գոց սորվիլ այս ոտանաւորը, և բարձրաձայն արտասանել։

**73.** Մէյ մէկ նախադասութեան մէջ գործածել հետեւեալ բառերը.

*Հիռ գալ, բիրտ, անխլիրտ, հոլաթև, ծուփ, պտուտկիլ, մէգ, ցայտել, մարգարտայեռ, ժուռ գալ։*



(1) Լը Գոնթ տը Լիլ՝ ժամանակակից Ֆրանսացի նշանաւոր բանաստեղծ։

**223.** *Բացառիկ են թոռ, եզ, գառ, դուռ, մատ, ձեռ, բեռ բառերը, որոնք եր էն առաջ ն մը կ՚առնեն յոգնակիի մէջ. թոռներ, եզներ, գառներ, եւայլն։ Այս բացառութեան պատճառը այն է որ այդ բառերը գրաբարի մէջ միշտ նով գործածուած են, ինչպէս. թոռն, եզն, գառն, եւայլն։*

**224.** *Մէկ ու կէս վանկ ունեցող բառերը եր ով յոգնակի կ՚ըլլան, երբ կէս վանկը բառին վերջն է. արկղ—արկղեր, սանդր—սանդրեր։ Այս կարգի բառերը միշտ նայ տառերով կը վերջանան։*

**225.** *Մէկուկէս վանկ ունեցող բառերը ներ ով յոգնակի կ՚ըլլան, երբ կէս վանկը բառին սկիզբն է. դրամ—դրամներ, մշակ—մշակներ։ Այս բառերուն առաջին մասին մէջ ընդհանրապէս նայ կամ թոյլ տառեր կը գտնուին։*

**226.** *Բազմավանկ բառերը ներ ով յոգնակի կ՚ըլլան. երկիրներ, բերաններ, պաշտօնեաներ։*

**227.** *Կարգ մը ք ով վերջացող բառեր, որոնք գրաբարի մէջ անեզական են, աշխարհաբարի մէջ իբր եզակի կը գործածուին, եւ եր ով կամ ներ ով յոգնակի կ՚ըլլան. դիրք—դիրքեր, կրօնք—կրօնքներ, ընտանիք—ընտանիքներ, եւայլն։*

*Ծնողք եւ Նախնիք բառերը, որոնք յոգնակի իմաստ ունին, կրկին յոգնակի կ՚ըլլան հետեւեալ ձեւով. ծնողքներ, նախնիքներ։ Կ՚ըսենք. Գրիգորին ծնողքը, եւ Գրիգորին ու Յովհաննէսին ծնողքները. Յունացւոց նախնիքը, եւ Յունացւոց ու Իտալացւոց նախնիքները։*

**228.** *Երբ անձայն յով վերջացող գոյականը յոգնակի ըլլայ, յն կը ջնջուի. քահանայ—քահանաներ, հաւաքածոյ—հաւաքածոներ։*

**229.** *Գրաբարի ձեւով, այսինքն ք ով յոգնակի կրնան ըլլալ.*

1. ցի մասնիկով վերջացող յատուկ և հասարակ անունները. Կեսարացի—Կեսարացիք, քաղաքացի—քաղաքացիք։

2. կան մասնիկով վերջացող յատուկ և հասարակ անունները. Ղեւտական—Ղեւտականք, պահպանողական—պահպանողականք։

3. եան վերջացող յատուկ և հասարակ անունները. Օսմանեան—Օսմանեանք, սկեպտիկեան—սկեպտիկեանք։

Այս բառերը ազգի մը, կրօնքի մը, ընտանիքի մը, կուսակցութեան մը կամ միջավայրի մը պատկանող մարդիկ կը ներկայացնեն ընդհանրապէս։

**230.** Մատ, ձեռք, ոտք, աչք, ծունկ բառերը, երբ նշանակեն մարդոց անդամները, սա ձեւով ալ յոգնակի կրնան ըլլալ. մատուըներ, ձեռուըներ, ոտուըներ, աչուըներ, ծունկուըներ։

**231.** Մատ կ'ըլլայ միշտ մատներ, երբ նշանակէ դաշնակի ստեղ։

**232.** Ոտք կ'ըլլայ միշտ ոտքեր, երբ նշանակէ ոտանաւորի չափ, սեղանի կամ ուրիշ կարասիի ոտք, կամ երկարութեան չափ։

**233.** Ծունկ կ'ըլլայ միշտ ծունկեր, երբ նշանակէ բոյսի մայրան։

**234.** Քով յոգնակի կրնան ըլլալ նաեւ կարգ մը ազգերու անուններ. Ղպտիք, Հրեայք, Հելլենք, Պուլկարք, եւայլն։

**235.** Հետեւեալ կերպով ալ յոգնակի կրնան ըլլալ սա բառերը. տղայ—տղաք, կին—կանայք, մարդ—մարդիկ, տեղ—տեղուանք, կտոր—կտորուանք։

**236.** ԲԱՐԴ ԲԱՌԵՐՈՒ ՅՈԳՆԱԿԻՆ. — Երբ բարդ բառի մը վերջին բառը բազմավանկ է, իբր բազմավանկ բառ, միշտ ներ ով յոգնակի կ'ըլլայ. քեռորդի—քեռորդիներ, երկբարբառ—երկբարբառներ։

**237**. Երբ բարդ բառին վերջին բառը միավանկ է, այն ատեն երբեմն երով, երբեմն ներով յոգնակի կ՚ըլլայ, հետեւեալ կանոններուն համաձայն.

Ա. Երբ այս կարգի բարդ բառ մը առանց յօդակապի կամ շաղկապի միացած է, միշտ ներով յոգնակի կ՚ըլլայ. բառգիրքներ, ծովափներ, խարայրներ, եւայլն:

Բ. Երբ բարդ բառին վերջին մասը բայարմատ է, միշտ ներով յոգնակի կ՚ըլլայ. գրագիրներ (գիր՝ գրել բային արմատն է), հրաշակերտներ (կերտ՝ կերտել բային արմատն է), ղեկավարներ (վար՝ վարել բային արմատն է), վարուցաններ (ցան՝ ցանել բային արմատն է):

Գ. Երբ բարդ բառին վերջին մասը գոյական է, հարկ է զանազանել հետեւեալ պարագաները.

1. Ամէն անգամ որ բարդ բառն ալ գոյական մըն է, երով յոգնակի կ՚ըլլայ. հաշուետոմսեր, հնդկահաւեր, ծառասունկեր: Բացառութիւն են սիրամարգ գոյականը, որ կ՚ըլլայ սիրամարգներ, եւ բան, դէմ, տուն, էջ գոյականներով վերջացող գոյականները որոնք ներով յոգնակի կ՚ըլլան. յառաջաբաններ, վերջաբաններ, վարդադէմներ, նուռադէմներ, գինետուններ, դպրատուններ, աղերսաէջներ, ընկալաէջներ:

2. Ամէն անգամ որ բարդ բառը ածական մըն է, որ գոյականաբար կը գործածուի, ներով յոգնակի կ՚ըլլայ. քաջասիրտներ, սրամիտներ, սեւամորթներ, միավանկներ:

**238** ՅՈՔՆԱԿԻԻ ԳՈՐԾԱԾՈՒԹԻՒՆԸ. — Անորոշ (այսինքն առանց յօդի) գոյական մը յոգնակիի տեղ կրնայ նաեւ եզակի գործածուիլ, մանաւանդ թուական եւ անորոշ ածականներու առջեւ, երբ խօսքին իմաստը ինքնին կը յայտնէ թէ յոգնակի է. Տաս հոգի եկաւ: Քանի հոգի կար հոն: Քանի մը տուն այրեցաւ: Չորս ձի լծեր էին կառքին: Ծառերը ծաղիկ տուին:

**239.** Բայց երբ գոյականը որոշ ըլլայ, պէտք է միշտ յոքնակի դնել. Ձեր տեսած երկու տղաքը հոս են: Սա ծառին բոլոր պտուղները թափեցան: Նկարուած երկու պատկերներուն չհաւնեցայ:

**240.** Գոյականը թուական ածականէ մը ետքը յոքնակի կը դրուի նաեւ գաղափարին սաստկութիւն տալու համար. Իր խանն հազար ոսկիները չկրցան զինքը փրկել. երկու աչքերովս տեսայ. երկու ականջներովս լսեցի:

**241.** Չափ եւ սահման ցուցնող բառերը երբեք յոքնակի չեն դրուիր թուական ածականներէն ետքը. Ութը փարսախ, տասը օխա, հինգ կանգուն:

**242.** Շատ անգամ գոյական մը յոքնակիի տեղ եզակի կը դրուի, երբ իր նախընթաց յոքնակի բառէն կամ նախադասութեան իմաստէն յայտնի է յոքնակիի իմաստ ունենալը. Ամենուն սիրտը յուզուած էր: Տղոց կամքը կոտրելու է:

**243.** Յոքնակի անուններու քով նմանութեան համար գործածուած գոյականները սովորաբար եզակի կը մնան. Ընկոյզի չափ կարկուտի հատիկներ տեղացին: Մարգրտի պէս ճերմակ ակռաներ ունի: Այս պարագային մէջ կարելի է սակայն յոքնակի ալ դնել. Ձիերու պէս կը վազեին:

---

## ՀՐԱՀԱՆԳՆԵՐ

---

### ԱՇԽԱՏՈՒԹԻՒՆ

Մարդս կը ծնի մերկ եւ տկար, տկար, այո՛, քան շատերը կենդանիներէն, որոնք մասամբ գոգցես աւելի նպաստաւորուած են բնութենէն, որ զգեցուցած է զանոնք, եւ տուած է իւրաքանչիւրին զէնքեր անձին պաշտպանութեան համար: Փիղը ունի իր վրիժակները,

առիւծը իր ճիրանները , ցուլը իր եղջիւրները , արծիւը իր մագիլները , մեղուն իր խայթոցը , իժը իր թոյնը . բայց մարդը , տկար Ֆիզիգապէս , ունի իր իմացականութիւնը , որով իրեն կը հպատակեցնէ բնութեան զօրութիւնները , կը նուաճէ հակառակամարտ ոյժերը, եւ իր մարմնոյն տկարութեան օժանդակ տալով զանոնք , կ՚ապահովէ իր կեանքը , եւ կը ստեղծէ իր երջանկութիւնը ։ Մարդուս ամէն կարողութիւնները , Ֆիզիգական թէ իմացական , տարրական վիճակի մէջ տրուած են իրեն . հարկ է որ զարգացնէ զանոնք , եւ գործածէ իր պիտոյքը գոհացնելու ։ Հարուստն ու աղքատը , գիտունը թէ տգէտը , գործաւորը թէ դրամատէրը , տէրը թէ ծառան հաւասարապէս ստիպուած են աշխատիլ . ան որ չունի՝ պէտք է որ շահի , եւ ունեցողը պէտք է ջանայ չկորսնցնել , այլ ընդհակառակը աճեցնել իր ունեցածը . եւ յետոյ ոչ ոք անկարօտ է . պէտքն ու կարօտութիւնը ամենուրեք են , աղքատութիւնը բազմաձեւ է , եւ կը բնակի այնքան հարուստին ապարանքը , որչափ աղքատին խրճիթը . ոսկիով հարուստը աղքատ է խելքով . ուսեալը պէտք ունի դրամի . մտքով կամ ինչքով զօրաւորը՝ տկար է մարմնով , եւ կը կարօտի Ֆիզիգական զօրութեան ։ Բնութիւնը կը պահանջէ որ ամէն ձեռքի մէջ գործիք մը ըլլայ . նաւավարը՝ իր թիակը ունենայ , մշակը՝ իր բահը , երկաթագործը՝ իր մուրճը , կօշկակարը՝ իր հերիւնը , հիւսնը՝ իր ուրագը ; երկրաչափն ու ճարտարապետը՝ իրենց կարկինը , մեքենագործը՝ իր մեքենան , բժիշկը՝ իր ականջափողը , նկարիչը՝ իր վրձինը , արձանագործը՝ իր գրոցը , երաժիշտը՝ իր դաշնակը , կինը՝ իր ասեղը , մատենագիրը՝ իր գրիչը ։ Վատ ու անարժան է անգործի ձեռքը . պէտք է որ գօսանայ ան ։ Մարդը արարչութեան թագաւոր կոչած են , ուրեմն գործիքն է անոր մականը ։

Ռ. Յ. ՊԷՐՊԷՐԵԱՆ [1]

---

[1] Ռ. Յ. Պէրպէրեան. ուսուցիչ և գրագէտ, հիմնադիր տնօրէն Պէրպէրեան վարժարանին. ծնած է 1851ին։ Գրած է Առագիլ տերեւ, Մարդիկ եւ իրք, եւայլն։ Ունի բազմաթիւ արձակ և ոտանաւոր գըրուածներ հայ հանդէսներու և թերթերու մէջ։

**74.** Ձուլագրել այս հատուածը։

**75.** Բացատրել այս հատուածին մէջ գործածուած հետեւեալ բառերը.

*Նպատաւորութիւն. վրիժակ, մագիլ, խայթոց, քաղ, մուրճ, հերիւն, ուրագ, կարկին, ականջափող, գրոց, զօդանալ, մականա։*

**76.** Լուծել քերականացի այս հատուածին առաջին պարբերութիւնը։

**77.** Ցուցակի բերել այս հատուածին մէջ գտնուած բարդ բառերը։

**78.** Ցուցակի բերել հետեւեալ բարդ բառերը.

*Ծովեզր, երէցկին, հիւսխայզ, զառիթափ, կրծկալ, գրքակալ, աստուածավախ, շողեշարժ, շատախօս, տուրեւառ, ասուլիս, ելեւէջ, երթեւեկ, կերուխում, գրածախ, Թնդանօթաձիգ, ազգատոհմ, ծովաբոյս, Թատերաբեմ, ծառուղի, կռփամարտ, լողացաւ, մարտանաւ, արժեթուղթ, հօրաքոյր, աղօթագիրք, զայթավայր, ածխահանք, ահուդող, ծեծուփետ, վանահայր, նորավէպ, զանգահարեր, վառատիրոտ, միավանկ, ծրագիր, լրագիր, սղագիր, նկարագիր, ձայնագիր, կրատուն, նաւապետ, սառնատուն, ուղղակայեն, լեռնաբոյս, բթամատ, յօդակապ, բաժնետոմս, պատուատոմս, այցաքարտ, խաւաքարտ, մեծամիտ, խանութպան, գեղագէտ, ճարտարապետ, գլխարկ, գիշերազգեստ, կաթնտու, մարդատեաց, կառախումբ, նաւարշաւ, հեծելանիւ։*

**79.** Գտնել հինգ մետաղի, հինգ գիտութեան, հինգ արհեստի անուն եւ մէյ մէկ խօսք շինել անոնցմով։

**80.** *Մաս, ոտք* եւ *ծունկ* բառերը իրենց տարբեր նշանակութիւններով գործածել մէյ մէկ նախադասութեան մէջ։

**81.** Ամբողջացնել հետեւեալ խօսքերը մէյ մէկ յարմար բառ դնելով կէտերուն տեղ.

*Այս տարի մեր վարդենիները բնաւ ... չտուին։*
*Մեր դրացւոյն բոլոր .. լիճը ինկան։*
*Օրը եօթը ... աւելի չեմ կրնար աշխատիլ։*
*Բոլոր հանդիսականները ... վեր վերցուցին։*
*Այս տղաքը ... պէտք այսեր ունին։*
*Ձեր աղջիկները ... նման կ'երգեն։*
*Վարժարանին աշակերտները ... ստացան։*
*Անցեալ տարի շատ ... առի հիւանդութեան պատճառաւ։*

---

## ԿՈՅՍԻ ՄԸ ՄԱՀԸ

Ինչպէս ոստին վըրայ վարդը մայիսի
Գեղափթիթ թարմ ծաղկումին իր նախկին
Եւ վառ գոյնով նախանձ կ'ազդէ երկինքին,
Երբոր արցունքն այգուն վըրան կը հոսի,

Թերթերուն մէջ՝ սէր և շնորհ կայ կոյսի,
Որ կը խընկէ ծառն ու պարտէզ քաղցրաբոյր,
Բայց ծեծուելով տապէն, Թօնէն անհամբոյր,
Կը թալկանայ, թերթ թերթ, կեանքը կը խուսի։

Այսպէս չըքնաղ տարիքիդ մէջ խուարծի,
Երբոր երկինք երկիր քեզմով կը պարծի,
Մեռա՛ր, մոխիր դարձաւ քու կեանքըդ կոյսի։

Շիրմիդ վըրայ ընդունէ՛ ցաւս ու լալիքս,
Բաժակ մը կաթ, լեցուն կողով մը ծաղիկ,
Որ ողջ, մեռած, միշտ վարդ ըլլաս մայիսի։

ՌՈՆՍԱՐ (1)

82. Գոց սորվիլ և բարձրաձայն արտասանել այս ոտանաւորը։



(1) Ռոնսար, հռչակաւոր բանաստեղծ Փրանսացի, ծնած է 1524ին, և մեռած 1585ին։

# ՀՈԼՈՎՈՒՄ

## ԱՆՈՒՆՆԵՐ

**244.** *Անունի մը վերջաւորութեան փոփոխուելուն* հոլովում *կ'ըսուի ։*

**245.** *Վեց հոլով կայ. Ուղղական, հայցական, սեռական, տրական, բացառական, գործիական :*

**246.** *Հոլովման ընդհանուր կանոնն է թէ՛ հասարակ եւ թէ՛ յատուկ անուններու համար.*

| | Եզակիի մէջ | | Յոգնակիի մէջ | |
|---|---|---|---|---|
| Ուղղ. Հայց. | Հայ | Գրիգոր | Հայեր | Գրիգորներ |
| Սեռ. Տրակ. | Հայի | Գրիգորի | Հայերու | Գրիգորներու |
| Բաց. | Հայէ | Գրիգորէ | Հայերէ | Գրիգորներէ |
| Գործ. | Հայով | Գրիգորով | Հայերով | Գրիգորներով |

**247.** *Աշխարհաբարի հոլովմանց մէջ, ձայնաւորներու փոփոխման կանոնը գրեթէ միշտ չի գործադրուիր. պարտէզ, պարտէզէ. վայրկեան, վայրկեանէ. արշալոյս, արշալոյսէ. պաշտօնեայ, պաշտօնեայէ. Յովսէփ, Յովսէփէ, եւայլն ։*

### ՀԱՍԱՐԱԿ ԱՆՈՒՆՆԵՐ

**248.** *Հասարակ անուններու եզակի հոլովման բացառութիւններն են հետեւեալները.*

**249.** *Ա. Ի վերջացող գրեթէ բոլոր բազմավանկ անունները սեռականի մէջ կ'ըլլան նաեւ —ոյ. հոգի, հոգւոյ, հոգիէ, հոգիով. եկեղեցւոյ, սիրելւոյ, եւայլն ։ Կան քանի մը ի վերջացող բառեր որոնք միշտ ընդհանուր օրէնքին համեմատ կը հոլովուին ներդաշնակութեան համար, ինչպէս. մատնիի, հայրիի, կաղնիի, եւայլն ։*

**250.** Տեղի բառը սեռականի մէջ կ'ըլլայ միշտ տեղւոյ. տեղւոյս Հայերը: Տեղի բառը ուղղականի և հայցականի մէջ երբեք չի գործածուիր. բացառիկ է տեղի տալ բացատրութիւնը:

**251.** Բ. ութիւն վերջացող ածանցեալ անունները կ'ըլլան միշտ ութեան, ութենէ, ութեամբ. բարութիւն, բարութեան, բարութենէ, բարութեամբ:

**252.** Գ. ում վերջացող ածանցեալ անունները կը հոլովուին նաև ման, մամբ. զեղծում, զեղծման, զեղծումէ, զեղծմամբ: Իսկ արմատականները միշտ ընդհանուր կանոնին համեմատ կ'ըլլան. դդում, դդումէ. խխում, խխումէ:

**253.** Դ. ի վերջացող գոյականները ընդհանուր կանոնին այլ կրնան հոլովուիլ. բացառաբար անոնց մէկ մասը կ'ըլլան նաև ւոյ, ուէ, ուով. թի, թւոյ; թուէ, թուով. այսպէս. ամի, պաշտի, կոչի, եւայլն. և մէկ մասն ալ կ'ըլլան ւոյ, ուէ, ւով. հաշի, հաշւոյ, հաշուէ, հաշուով. այսպէս. արծի, հովի, եւայլն:

**254.** Ե. ել և ալ վերջացող աներևոյթները կ'ըլլան. ելոյ, ելէ, ելով. ալոյ, ալէ, ալով. երգել, երգելոյ, երգելէ, երգելով. հազալ, հազալոյ, հազալէ, հազալով:

**255.** Զ. իլ վերջացող աներևոյթներուն էն և ի կը փոխուի հոլովման ատեն. սրսփիլ, սրսփելու, սրսփելէ, սրսփելով. լսուիլ, լսուելու, լսուելէ, լսուելով:

**256.** Է. ուլ վերջացող աներևոյթներէն երկուքը միայն կը հոլովուին. թողուլ կ'ըլլայ թողլոյ, թողլէ, թողլով կամ թողելով: Զգենուլ կ'ըլլայ զգենլոյ, զգենլէ, զգենլով: Մնացեալները չեն հոլովուիր:

**257.** Ը. Վերջին վանկին մէջ ա ունեցող անուններ հոլովման մէջ ա ը չեն կորսնցներ. սաւան, սաւանի, սաւանէ, սաւանով: Բացառիկ են. ճակատ, ճակտի. բերան, բերնի. զաւակ, զաւկի:

սեռական կ'ըլլան. հիւսիսայգ, հիւսիսայգի. շոգենաւ, շոգենաւի. հնդկահաւ, հնդկահաւի:

**266.** Պապ, երբ նշանակէ մեծ հայր, կ'ըլլայ պապու, իսկ երբ նշանակէ Հռոմի քահանայապետը, կ'ըլլայ Պապի:

**267.** Շահ, երբ նշանակէ վաստակ, կ'ըլլայ շահու, իսկ երբ նշանակէ Պարսկաստանի վեհապետը, կ'ըլլայ Շահի:

**268.** Դաս երբ նշանակէ դասակարգ, կ'ըլլայ դասու, իսկ երբ նշանակէ դասախօսութիւն, եկեղեցւոյ դաս, կ'ըլլայ դասի:

**269.** Մէկ թուական ածականը, երբ գոյականաբար գործածուի, սեռականի մէջ կ'ըլլայ մէկու:

**270.** Արեւ կ'ըլլայ արեւու:

**271.** ԺԲ. Ժամանակ ցուցնող անունները երեք դասակարգի կը բաժնուին.

1. Ամառ, ամառուան, ամառուընէ կամ ամառէ, ամառով: Այսպէս կը հոլովուին ձմեռ, երեկ, հիմակ, ցորեկ, գիշեր: Իրիկուն կ'ըլլայ իրիկուան, իրիկունէ, իրիկունով: Վաղը կ'ըլլայ վաղուան, վաղուընէ, վաղով: Առտու կ'ըլլայ առտուան, առտուընէ, առտուով:

2. Ատեն, ատենուան կամ ատենի, ատենէ, ատենով: Այսպէս. ժամանակ, օր, կէս օր, [illegible], [illegible]: Տարի կ'ըլլայ տարիի կամ տարուան կամ տարւոյ, տարիէ, տարիով: Տարի սեռականի մէջ կ'ըլլայ նաեւ տարու, երբ մարդու տարիք նշանակէ. Բանն տարու է: Տարիի բացառականը կ'ըլլայ տարուէ հետեւեալ բացատրութեան մէջ. տարուէ տարի:

3. Ժամ, ժամուան կամ ժամու, ժամէ, ժամով: Այսպէս. հեղ, անգամ: Շաբաթ կ'ըլլայ շաբթուան կամ շաբթու, շաբթուընէ կամ շաբաթէ, շաբաթով: Ամիս, ամսուան կամ ամսու, ամսէ, ամսով: Մահ, թէպէտ

ժամանակ ցոյց չի տար, բայց սեռականին մէջ կ'ըլլայ մահուան կամ մահու։ Դար որ ժամանակ ցոյց կու տայ, չ'ըլլար դարուան այլ դարու։

**272.** Ծ. Գ. Ազգականութեան կապ ցոյց տուող անուններն ալ երեք դասակարգի կը բաժնուին.

1. **Հայր, հօր, հօրմէ, հօրմով**։ Այսպէս. **մայր, եղբայր**, և իրենց բոլոր բարդերը. **սանամայր, կնքամայր**, եւայլն, նոյն իսկ երբ ազգականութեան կապ ցոյց չեն տար. **վանահայր, վանամայր, ջուսեղբայր**, եւայլն։

2. **Աղջիկ, աղջկան, աղջիկէ, աղջիկով**։ Այսպէս. **երիկ, կնիկ**։

3. **Ներ, ներոջ, ներոջմէ, ներոջմով**։ Այսպէս. **աներ, տալ, տագր, քոյր, մօրաքոյր, հօրաքոյր, կեսուր, կին, ընկեր, տէր, տէրտէր** բառերը, որոնց վերջին երեքը ազգականութիւն ցոյց չեն տար։

**273.** Ծ. Դ. Անկանոն կերպով կը հոլովուին հետեւեալ բառերը.

**274.** **Կայսր, կայսեր, կայսրէ, կայսրով**։

**275.** **Ճամբայ, ճամբու, ճամբէ, ճամբով**. այսպէս. **տղայ**։

**276.** **Լեռ, լերան, լեռնէ, լեռնով**. այսպէս. **դուռ, թոռ** որուն սեռականն է **թոռան**։

**277.** **Եզ, եզան, եզէ, եզով**. այսպէս. **բեռ, հիմ**։

**278.** **Ջուր, ջրոյ, ջրէ, ջրով**։

**279.** **Սէր, սիրոյ, սէրէ, սիրով**։

**280.** **Խնդիր** և **մարմին** բառերը սեռականի և տրականի մէջ կ'ըլլան նաև **խնդրոյ** և **մարմնոյ**։

**281.** Հոգի գործիականի մէջ կ'ըլլայ նաև **հոգւով**, ինչպէս. **հոգւով մարմնով, բոլոր հոգւովս**։

**282.** Գլուխ, երբ մարդու կամ անասունի գլուխ նշանակէ, կ'ըլլայ **գլխու**, իսկ երբ նշանակէ գրքի **գլխակարգութիւն, պետ, գագաթ** կամ երբ բարդ բառ

կազմէ, կ'ըլլայ՝ գլուխի կամ գլխի, դրանագլխի, սան-ճանագլխի:

**283.** Ք վերջացող բառերը, ընդհանուր կանոնին հետեւելով կը հոլովուին, և կը պահեն իրենց Քն. հաւատք, հաւատքի, հաւատքէ, հաւատքով. այսպէս. կրօնք, փառք, շինուածք, դժոխք, աչք, ոտք, ձեռք, շրթունք, ռնգունք, հարկինք, բոլորտիք, ծնողք, նախնիք, եւայլն: Այս բառերը յոգնակի մէջ ընդհանուր կանոնին համեմատ կը հոլովուին. շրթունքներու, ծնողքներէ, նախնիքներով, եւայլն:

**284.** Կտորուանք, տեղուանք յոգնակիները եզակի ձեւով կը հոլովուին և կ'ըլլան. կտորուանքի, կտորուանքէ, կտորուանքով. տեղուանքէ, եւայլն:

**285.** Երբ բառերը անջատ կը մնան միշտ ընդհանուր օրէնքին համեմատ կը հոլովուին, այսպէս. Զօրայեանի Ընթերցանութիւններէն էջ մը: Վիքթոր Հիւկոյի Սոսկալի տարիին մէջ:

**286.** Հասարակ անուններու յոգնակի հոլովման բացառութիւններն են.

**287.** Ա. ցիք վերջացող յոգնակիները կը հոլովուին այսպէս. քաղաքացիք, քաղաքացւոց, քաղաքացիներէ, քաղաքացիներով:

**288.** Բ. կանք վերջացողները կ'ըլլան. միապետականք, միապետականաց, միապետականներէ, միապետականներով:

**289.** Գ. եանք վերջացողները կ'ըլլան. ձախակողմեանք, ձախակողմեանց, ձախակողմեաններէ, ձախակողմեաններով:

**290.** Դ. ութիւն և ում վերջացող անունները յոգնակի սեռականի և տրականի մէջ կ'ըլլան նաև հետեւեալ կերպով. սովորութեանց, ուսմանց, եւայլն:

**291.** Տղաք կ'ըլլայ տղոց, տղոցմէ, տղոցմով:

**292.** Մարդիկ կ'ըլլայ մարդոց, մարդոցմէ, մարդոցմով:

**293.** Կանայք սեռականի և տրականի մէջ կ'ըլլայ կանանց, ինչպէս. կանանց յատուկ պատարագ:

**294.** Նախնիք սեռականի և տրականի մէջ կ'ըլլայ նաև նախնեաց, ինչպէս. նախնեաց ոսկորներ:

**295.** Հասարակ անուններու քանի մը յոգնակի հոլովման ձևեր կան որոնք անփոփոխ կը գործածուին աշխարհաբար ալ, կարգ մը բացառութեանց մէջ. Կուսանաց վանք, Ծննդոց գիրք, Վարք սրբոց, ևայլն:

## ՅԱՏՈՒԿ ԱՆՈՒՆՆԵՐ

**296.** Յատուկ անուններու եզակի հոլովման բացառութիւններն են.

**297.** Ա. ա վերջացող անունները, ըլլան անձի անուն կամ աշխարհագրական անուն, ընդհանուր օրէնքին համեմատ կը հոլովուին, միայն թէ ա էն ետքը յ կ'առնեն. Եւրոպա, Եւրոպայի, Եւրոպայէ, Եւրոպայով. այսպէս. Մայտա, Քանասա, Աննա, Սելմա, ևայլն:

**298.** Բ. է ով վերջացող անձի անուններն ալ ընդհանուր օրէնքին կը հետևին, միայն յ կ'առնեն էն ետքը. Արաքսէ, Արաքսէյի, Արաքսէյէ, Արաքսէյով:

**299.** Գ. է ով վերջացող աշխարհագրական անունները հետևեալ կերպով կը հոլովուին. Ովկիանէ, Ովկիանէյի, Ովկիանէյէ, Ովկիանէյով: Սոփէ և Գօնէ բացառաբար կ'ըլլան սեռականի և տրականի մէջ Սոփէյի և Գօնէյի:

**300.** Դ. օ վերջացող անունները այսպէս կը հոլովուին. Սանթիակօ, Սանթիակօյի, Սանթիակօյէ, Սանթիակօյով:

**301.** Ե. ուէ վերջացող անունները կ'ըլլան.

Կոստանդնուպօլիս, Կոստանդնուպօլսոյ, Կոստանդնուպօլսէ, Կոստանդնուպօլսով: Այսպէս՝ Տրիպօլիս, Ադրիանուպօլիս, եւայլն:

**302**. Զ. Վերջին վանկին մէջ ա, է, ո պարունակող յատուկ անունները այդ գիրերը չեն կորսնցներ հոլովման մէջ. Սուսան, Սուսանի. Տէրունիմ, Տէրունիմի. Կոր, Կորի:

**303**. Աստուած երբ տիեզերքի արարիչը նշանակէ, սապէս կը հոլովուի. Աստուծոյ, Աստուծմէ, Աստուծմով: Իսկ երբ նշանակէ չաստուած, այն ատեն գլխագրով չի գրուիր, և ընդհանուր կանոնին համեմատ կը հոլովուի:

**304**. Աստուածածին կը հոլովուի սապէս. Աստուածածնայ, Աստուածածնէ, Աստուածածնով. այսպէս նաև Էջմիածին: Աստուածածին երբ նշանակէ Աստուածամօր տօները, այն ատեն ընդհանուր օրէնքին կը հետևի. Աստուածածինի, Աստուածածինէ, Աստուածածինով:

**305**. Հայ և Չին կ'ըլլան սեռական և տրական մէջ. Հայու, Չինու:

**306**. Զատիկ հոլովման մէջ ի'ն կը կորսնցնէ, և կ'ըլլայ Զատկի, Զատկէ, Զատկով:

**307**. Խրում կ'ըլլայ Խրման, Խրումէ, Խրումով:

**308**. Սովորաբար գրաբարի ձևով կը հոլովուին տոհմային և կրօնական անունները. Սահակայ և Մեսրոպայ տօնը, Մծբնայ Հայրապետը, Յովհաննու Կարապետին, Արմաշու վանքը, եւայլն:

**309**. Յատուկ անուններու յոգնակի հոլովման բացառութիւններն են.

**310**. Ա. ցի+ վերջացողները կ'ըլլան. Էրզրումցի+, Էրզրումցւոց, Էրզրումցիներէ, Էրզրումցիներով:

**311**. Բ. չան+ վերջացողները կ'ըլլան. Հռոմկաչան+, Հռոմկաչանոց, Հռոմկաչաններէ, Հռոմկաչաններով:

**312.** Գ. Եան վերջացող յոքնակիները կ'ըլլան․ Յակոբեանք, Յակոբեանց, Յակոբեաններէ, Յակոբեաններով։

**313.** Գրաբարի ձեւով յոքնակի եղող ազգերու անունները կ'ըլլան՝ սեռականի և տրականի մէջ․ Հայք, Հայոց․ Յոյնք, Յունաց․ Հրեայք, Հրէից․ Հելլենք, Հելլենաց․ Պարսիկք, Պարսկաց․ Պարսք, Պարսից․ Մարք, Մարաց․ Վիրք, Վրաց․ Հնդիկք, Հնդկաց․ Պուլկարք, Պուլկարաց․ Ռուսք, Ռուսաց․ Աղուանք, Աղուանից, եւայլն։ Բոլոր այս անունները հայցականի, բացառականի և գործիականի մէջ ընդհանուր օրէնքին կը հետեւին։

**314.** Օտար յատուկ անուններու եզակի և յոքնակի հոլովման գրաբար ձեւեր կան, որոնք աշխարհաբարի մէջ ալ նոյնութեամբ կը գործածուին․ Ազախու ծով, Կասպից ծով․ եւայլն։

# ՀԱՍԱՐԱԿ ԱՆՈՒՆՆԵՐՈՒ ՀՈԼՈՎՈՒՄԸ

## ԸՆԴՀԱՆՈՒՐ ԿԱՆՈՆ

| | Եզակի | Յոգնակի | Եզակի | Յոգնակի |
|---|---|---|---|---|
| Ո. Հ. | Դաշտ | Դաշտեր | Պատկեր | Պատկերներ |
| Ս. Տ. | Դաշտի | Դաշտերու | Պատկերի | Պատկերներու |
| Բ. | Դաշտէ | Դաշտերէ | Պատկերէ | Պատկերներէ |
| Գ. | Դաշտով | Դաշտերով | Պատկերով | Պատկերներով |

## ԲԱՑԱՌՈՒԹԻՒՆՆԵՐ

### Ա.

**ի վերջացող բառեր**

| | Եզ. |
|---|---|
| Ո. Հ. | Եկեղեցի |
| Ս. Տ. | Եկեղեցւոյ |
| Բ. | Եկեղեցիէ |
| Գ. | Եկեղեցիով |

*Այսպէս. հոգի, գինի, կղզի, շոգի, ևայլն։ «Դաշտ»ին պէս մատնի, հայլի, կաղնի, ևլն։*

### Բ.

**ութիւն վերջացող բառեր**

| Եզ. | Յոգ. |
|---|---|
| Աշխատութիւն | Աշխատութիւններ |
| Աշխատութեան | Աշխատութեանց |
| Աշխատութենէ | Աշխատութիւններէ |
| Աշխատութեամբ | Աշխատութիւններով |

*Այսպէս. ծուլութիւն, ուրախութիւն, ևլն։*

### Գ.

**ում վերջացող բառեր**

| | Եզ. | Յոգ. |
|---|---|---|
| Ո. Հ. | Խոստում | Խոստումներ |
| Ս. Տ. | Խոստման | Խոստմանց |
| Բ. | Խոստումէ | Խոստումներէ |
| Գ. | Խոստմամբ | Խոստումներով |

*Այսպէս. հիացում, յուզում, ուսում, ևլն։ «Դաշտ»ին պէս. քրքում, դդում։*

### Դ.

**իւ վերջացող բառեր**

| Եզ. | Եզ. |
|---|---|
| Թիւ | Հաշիւ |
| Թուոյ | Հաշուի |
| Թուէ | Հաշուէ |
| Թուով | Հաշուով |

*«Թիւ»ին պէս. անիւ, պատիւ, կռիւ, ևլն։ «Հաշիւ»ին պէս. հովիւ, արծիւ, ևայլն։*

## Ե.

Ել և ալ վերջացող աներևույթներ

| | Եզ. | Եզ. |
|---|---|---|
| Ո. Հ. | Երգել | Հազալ |
| Ս. Տ. | Երգելու | Հազալու |
| Բ. | Երգելէ | Հազալէ |
| Գ. | Երգելով | Հազալով |

Այսպէս. սիրել, կրել, խաղալ, սողալ, ևայլն։

## Զ.

Իլ վերջացող աներևույթներ

| Եզ. | Եզ. |
|---|---|
| Խօսիլ | Լսուիլ |
| Խօսելու | Լսուելու |
| Խօսելէ | Լսուելէ |
| Խօսելով | Լսուելով |

Այսպէս. Նայիլ, Թառիլ, ապրիլ, ևայլն։

## Է.

ուլ վերջացող աներևույթներ

| | Եզ. | Եզ. |
|---|---|---|
| Ո. Հ. | Թողուլ | Զբօսնուլ |
| Ս. Տ. | Թողելու | Զբօսնելու |
| Բ. | Թողելէ | Զբօսնելէ |
| Գ. | Թողլով կամ Թողելով | Զբօսնելով |

## Ը.

Վերջին վանկին մէջ ա պարունակող երեք բառեր

| Եզ. |
|---|
| Բերան |
| Բերնի |
| Բերնէ |
| Բերնով |

Այսպէս. ճակատ, զաւակ։

## Թ.

Վերջին վանկին մէջ ի պարունակող բառեր

| | Եզ. | Յոգ. |
|---|---|---|
| Ո. Հ. | Գիրք | Գիրքեր |
| Ս. Տ. | Գրքի | Գիրքերու |
| Բ. | Գրքէ | Գիրքերէ |
| Գ. | Գրքով | Գիրքերով |

«Գիրք»ին պէս. միտք, սիրտ, զետին, ծաղիկ, մատենագիր, դրօշակիր, Թղթակից, փրկիչ, լուսաւորիչ, ևայլն։

«Դաշտ»ին պէս. իր, իղձ, հիւսիս, մատիտ, ապրիլ, մայիս, ընտանիք, հարսնիք, հետաքրքիր, ուրիշ, ցրուիչ, գոչիւն, ևայլն։

## Ժ.

Վերջին վանկին մէջ ու պարունակող բառեր

| | Եզ. | Եզ. | Յոգ. | Եզ. |
|---|---|---|---|---|
| Ո. Հ. | Տեսուչ | Տուն | Տուներ | Աշուն |
| Ս. Տ. | Տեսչի | Տան | Տուներու | Աշնան |
| Բ. | Տեսուչէ | Տունէ | Տուներէ | Աշունէ |
| Գ. | Տեսուչով | Տունով | Տուներով | Աշունով |

| | Եզ. | Եզ. | Եզ. | Եզ. |
|---|---|---|---|---|
| Ո. Հ. | Անուն | Մատուռ | Ժողովուրդ | Մանուկ |
| Ս. Տ. | Անուան | Մատրան | Ժողովրդեան | Մանկան |
| Բ. | Անունէ | Մատուռէ | Ժողովուրդէ | Մանուկէ |
| Գ. | Անունով | Մատուռով | Ժողովուրդով | Մանուկով |

«Տեսուչ»ին պէս. օգուտ, հողաբլուր, զօրախումբ, հեծելագունդ, ևն։ — «Տուն»ին պէս. շուն։ — «Աշուն»ին պէս. գարուն։ — «Անուն»ին պէս. մականուն, դերանուն, բայանուն։ — «Մատուռ»ին պէս. դուռ։

## ԺԱ.

### Կարգ մը միավանկ բառեր

| | Եզ. |
|---|---|
| Ո. Հ. | Նաւ |
| Ս. Տ. | Նաւու |
| Բ. | Նաւէ |
| Գ. | Նաւով |

«Նաւ»ին պէս. մարդ, մանչ, ձի, ծով, կով, գի, դի, Թի, էշ, արջ, հաւ, պապ, գահ, պահ, այգ, շահ, ու երբեմն աղ, դաս, մահ, ժամ, հեղ, մէկ, տարի, արև։

## ԺԲ.

### Ժամանակ ցուցնող բառեր

| | Եզ. | Եզ. | Եզ. |
|---|---|---|---|
| Ո. Հ. | Ամառ | Ատեն | Ժամ |
| Ս. Տ. | Ամառուան | Ատենուան կամ Ատենի | Ժամուան կամ Ժամու |
| Բ. | Ամառուընէ կամ Ամառէ | Ատենէ | Ժամէ |
| Գ. | Ամառով | Ատենով | Ժամով |

«Ամառ»ին պէս. ձմեռ, երէկ, հիմակ, ցորեկ, գիշեր։ Նոյնպէս. իրիկուն, վաղը, առտու։

«Ատեն»ին պէս. ժամանակ, օր, կէս օր, օրհասական, եռինք։ Նոյնպէս. տարի։

«Ժամ»ին պէս. հեղ, անգամ։ Նոյնպէս. շաբաթ, ամիս, մահ։

## ԺԳ.

### Ազգակցութեան կապ ցուցնող բառեր

| | | | |
|---|---|---|---|
| Ո. Հ. | Հայր | Աղջիկ | Ներ |
| Ս. Տ. | Հօր | Աղջկան | Ներոջ |
| Բ. | Հօրմէ | Աղջիկէ | Ներոջմէ |
| Գ. | Հօրմով | Աղջիկով | Ներոջմով |

«Հայր»ին պէս. մայր, եղբայր, սանամայր, կնքամայր, ևլն։ Նոյնպէս. վանահայր, վանամայր, լուսեղբայր, ևայլն։

«Աղջիկ»ին պէս. էրիկ, կնիկ։

«Ներ»ին պէս. աներ, տալ, քոյր, հօրաքոյր, մօրաքոյր, կեսուր, կին, տագր։ Նոյնպէս. տէր, տանտէր, տէրտէր։

## ԺԴ.

### Անկանոն հոլովումներ եզակիի մէջ

| | | | |
|---|---|---|---|
| Ո. Հ. | Մէր | Կայսր | Գլուխ |
| Ս. Տ. | Միրոյ | Կայսեր | Գլխու |
| Բ. | Մէրէ | Կայսրէ | Գլխէ |
| Գ. | Միրով | Կայսրով | Գլխով |

| | Եզ. | Յոգ. | Եզ. | Եզ. |
|---|---|---|---|---|
| Ո. Հ. | Ճամբայ | Ճամբաներ | Տղայ | Ջրօ |
| Ս. Տ. | Ճամբու | Ճամբաներու | Տղու | Ջրոյի |
| Բ. | Ճամբէ | Ճամբաներէ | Տղէ | Ջրոյէ |
| Գ. | Ճամբով | Ճամբաներով | Տղով | Ջրոյով |

| | Եզ | Յոգ. | Եզ. | Յոգ. | Եզ. | Յոգ. |
|---|---|---|---|---|---|---|
| Ո. Հ. | Լեռ | Լեռներ | Թոռ | Թոռներ | Եզ | Եզեր |
| Ս. Տ. | Լերան | Լեռներու | Թոռան | Թոռներու | Եզան | Եզերու |
| Բ. | Լեռնէ | Լեռներէ | Թոռնէ | Թոռներէ | Եզէ | Եզերէ |
| Գ. | Լեռնով | Լեռներով | Թոռնով | Թոռներով | Եզով | Եզերով |

«Լեռ»ին պէս. դուռ։ «Եզ»ին պէս. բեռ, հիմ։

## ԺԵ.

### Ցիք, կանք, եանք վերջացող յոգնակիներ

| | | | |
|---|---|---|---|
| Ո. | Քաղաքացիք | Բողոքականք | Աջակողմեանք |
| Հ. | Քաղաքացիներ | Բողոքականներ | Աջակողմեաններ |
| Ս. Տ. | Քաղաքացւոց | Բողոքականաց | Աջակողմեանց |
| Բ. | Քաղաքացիներէ | Բողոքականներէ | Աջակողմեաններէ |
| Գ. | Քաղաքացիներով | Բողոքականներով | Աջակողմեաններով |

## ԺԶ.

### Անկանոն հոլովումներ յոգնակիի մէջ

| | | | |
|---|---|---|---|
| Ո. | Մարդիկ | Կանայք | Տղաք |
| Հ. | Մարդիկ | Կիներ | Տղաք |
| Ս. Տ. | Մարդոց | Կանանց | Տղոց |
| Բ. | Մարդոցմէ | Կանանցմէ | Տղոցմէ |
| Գ. | Մարդոցմով | Կանանցմով | Տղոցմով |

# ՅԱՏՈՒԿ ԱՆՈՒՆՆԵՐՈՒ ՀՈԼՈՎՈՒՄԸ

## ԸՆԴՀԱՆՈՒՐ ԿԱՆՈՆ

| | Եզ. | Յոգ. |
|---|---|---|
| Ո. Հ. | Պետրոս | Պետրոսներ |
| Ս. Տ. | Պետրոսի | Պետրոսներու |
| Բ. | Պետրոսէ | Պետրոսներէ |
| Գ. | Պետրոսով | Պետրոսներով |

## ԲԱՑԱՌՈՒԹԻՒՆՆԵՐ

### Ա.

իա վերջացող անձի անուններ

| | Եզ. |
|---|---|
| Ո. Հ. | Եւդոքիա |
| Ս. Տ. | Եւդոքիայի |
| Բ. | Եւդոքիայէ |
| Գ. | Եւդոքիայով |

### Բ.

իա վերջացող աշխարհագրական անուններ

| Եզ. |
|---|
| Իտալիա |
| Իտալիոյ |
| Իտալիայէ |
| Իտալիայով |

### Գ.

ա վերջացող անուններ

| | Եզ. | Եզ. |
|---|---|---|
| Ո. Հ. | Աննա | Քանատա |
| Ս. Տ. | Աննայի | Քանատայի |
| Բ. | Աննայէ | Քանատայէ |
| Գ. | Աննայով | Քանատայով |

### Դ.

օ վերջացող անուններ

| Եզ. |
|---|
| Սանթիակօ |
| Սանթիակոյի |
| Սանթիակոյէ |
| Սանթիակոյով |

### Ե.

պոլիս վերջացող անուններ

| | Եզ. |
|---|---|
| Ո. Հ. | Կոստանդնուպոլիս |
| Ս. Տ. | Կոստանդնուպոլսոյ |
| Բ. | Կոստանդնուպոլսէ |
| Գ. | Կոստանդնուպոլսով |

## Զ.

### Անկանոն հոլովումներ եզակիի մէջ

| | | | |
|---|---|---|---|
| Ո. Հ. | Աստուած | Աստուածածին | Էջմիածին |
| Ս. Տ. | Աստուծոյ | Աստուածածնայ | Էջմիածնայ |
| Բ. | Աստուծմէ | Աստուածածնէ | Էջմիածնէ |
| Գ. | Աստուծմով | Աստուածածնով | Էջմիածնով |

| | | | | |
|---|---|---|---|---|
| Ո. Հ. | Հայ | Ձին | Զատիկ | Խօսում |
| Ս. Տ. | Հայու | Ձինու | Զատկի | Խօսման |
| Բ. | Հայէ | Ձինէ | Զատկէ | Խօսումէ |
| Գ. | Հայով | Ձինով | Զատիկով | Խօսումով |

## Է.

### Եանք, ցիք, կանք վերջացող յոքնակիներ

| | | | |
|---|---|---|---|
| Ո. | Օսմանեանք | Պոլսեցիք | Հռոմէականք |
| Հ. | Օսմանեաններ | Պոլսեցիներ | Հռոմէականներ |
| Ս. Տ. | Օսմանեանց | Պոլսեցւոց | Հռոմէականաց |
| Բ. | Օսմանեաններէ | Պոլսեցիներէ | Հռոմէականներէ |
| Գ. | Օսմանեաններով | Պոլսեցիներով | Հռոմէականներով |

## Ը.

### Անկանոն հոլովումներ յոքնակիի մէջ

| | | | | |
|---|---|---|---|---|
| Ո. | Հայք | Յոյնք | Հրեայք | Պարսիկք |
| Հ. | Հայեր | Յոյներ | Հրեաներ | Պարսիկներ |
| Ս. Տ. | Հայոց | Յունաց | Հրէից | Պարսկաց |
| Բ. | Հայերէ | Յոյներէ | Հրեաներէ | Պարսիկներէ |
| Գ. | Հայերով | Յոյներով | Հրեաներով | Պարսիկներով |

| | | | | |
|---|---|---|---|---|
| Ո. | Հնդիկք | Աղուանք | Պուլկարք | Մարք |
| Հ. | Հնդիկներ | Աղուաններ | Պուլկարներ | Մարեր |
| Ս. Տ. | Հնդկաց | Աղուանից | Պուլկարաց | Մարաց |
| Բ. | Հնդիկներէ | Աղուաններէ | Պուլկարներէ | Մարերէ |
| Գ. | Հնդիկներով | Աղուաններով | Պուլկարներով | Մարերով |

## ՀՐԱՀԱՆԳՆԵՐ

---

### ՇԵՓՈՐԻԿԸ

*Ժիլ Պլասի հեղինակը շատ խուլ էր, կ'ըսեն, բայց և այնպէս յետին ծայր զուարթ։ Շեփորիկ մը ունէր միշտ իր ծոցը, ու երբ լսելու պէտք զգար, զայն կը հանէր և ականջին կը տանէր։ — Այս է իմ բարերար ապաւէնս, կ'ըսէր շեփորիկը ցոյց տալով։ Երբ տեղ մը երթամ և նոր դէմքեր տեսնեմ, կարծելով որ բանիմաստ մարդիկ պիտի գտնեմ՝ շեփորիկս կը գործածեմ. երբ կը նայիմ որ յիմար են, իսկոյն շեփորիկս կը պահեմ ու կ'ըսեմ. «Պարոննե՛ր, գրաւ կը դնեմ որ իմ ուշադրութիւնս կարող չէք գրաւել»։*

*Արդ, կ'ուզե՞ս հանգիստ գտնել և նպատակիդ դիմել անվրդով, Լը Սաժի ըրածը ըրէ՛ մտապէս։ Իմ մտօք՝ երբ չորս կողմս կը տեսնեմ պիծակներ որ կը բզզան, մժղուկներ որ կը տզզան, ժժիներ որ կը ժժան՝ շուտ մը մտքիս շեփորիկը կը խցեմ, և տրմուղ կրմուղ կը դառնամ. իսկ երբ կը նայիմ որ խելք սորվելու բան կայ, նոյն իսկ տղեկի մը կողմէ, ինչպէս կ'ըսէ Ժան Ժաք Ռուսօ, պատասխանի արժանի և բանաւոր վէճի նիւթ, և հետեւապէս լոյս կայ, իսկոյն աչքս ու ականջս կը բանամ և ուշադիր մտիկ կ'ընեմ։*

**ՄԱՏԹԷՈՍ ՄԱՄՈՒՐԵԱՆ** [1]

**83.** Զուցագրել այս հատուածը, և դնել կէտադրութեան նշանները։

**84.** Գրաւոր հոլովել այս հատուածին մէջ գտնուած բոլոր յատուկ և հասարակ անունները, որոնք ընդհանուր կանոնէն տարբեր հոլովումներ ունին։

---

(1) Մատթէոս Մամուրեան (1840—1901), նշանաւոր ուսուցիչ, հրապարակագիր և գրագէտ, 1871էն մինչև իր մահը խմբագրած է Արեւելեան Մամուլ հանդէսը. ունի բազմաթիւ կարեւոր հրատարակութիւններ։

**85.** Բերանացի հոլովել հետեւեալ բառերուն եզակին.

*Թոնիր, հրթիռ, Հոռի, հունտ, ինչք. քիթ, եղունգ, Թաղիք, երդիք, կաւիճ, կորիւն, կաղին, ջոլիր, վարիչ. շամփուր, փուշ, սուտ, ճանճահաւ, ցռկանաւ, հօրեղբայր, խայթուածք, դաշինք։*

**86.** Հոլովել բերանացի հետեւեալ բառերուն յոգնակին.

*Դիցուհի, տեղ, պահարան, դռնապան, կովկասցի, հիւանդութիւն, ապասում, ծնողք. ընտանիք, ստոյիկեան, Ռուս, Աղուան, Կորնթացի, Հնդիկ։*

**87.** Հետեւեալ խօսքերուն մէջ փակագիծով գրուած բառերը պէտք եղած հոլովին դարձնել.

*Բարիզ պիտի երթամ Մարսիլիոյ (ճամբայ)։*

*Ոլիմպոսի գագաթը ելլելու համար պէտք է օրերով (լեռ) կողէն վեր մագլցիլ։*

*Մեր մէջ շատերը (եզ) միս չեն ուտեր։*

*Ձեր առաջարկութիւնները (սէր) կ'ընդունէի, եթէ (մայր) հրաման տուած ըլլայի։*

*(Աղջիկ) մը ամէնէն գեղեցիկ զարդը իր անոյշ բնաւորութիւնն է։*

*Հռոմէական Հայերը (Պապ) հոգեւոր իշխանութեան կը հպատակին։*

*Աստուածաշունչը կը սկսի (Ծնունդք) գրքով։*

*Միաբանական առաջին ուխտը հաստատած է Ս. Գրիգոր Լուսաւորիչ Իննակնեան վանքը հիմնելով, որ հիմայ (Գլակ) Ս. Կարապետ կը կոչուի։*

*(Մարք) ազգը Ասիոյ հին ժողովուրդներէն մէկն է։*

---

## ԳԵՂՋԿՈՒՀԻՈՅՆ ՅՈՒՂԱՐԿԱՒՈՐՈՒԹԻՒՆԸ

*Երբ Լուիզ մեռաւ տասնըհինգ տարու,*
*Հովէն հըլնձըւած ծաղի՛կ Թուփերու,*
*Դագաղը չունէր բազմամարդ Թափօր.*
*Քահանայ մ'եղաւ լոկ յուղարկաւոր.*
*Եւ տիրացու մը մերթ՝ ձայնով տըկար,*
*Մահուան երգերուն պատասխան կու տար։*
*Զի Լուիզ խեղճ էր, և ետքն իսկ մահէն*
*Աղքատը զուրկ է հարուստին փառքէն։*

*Տատախէ խաչ մը, ծածկոյթ մը հինուկ*
*Մ՚իսկ զարդն եղան դագաղին անշուք.*
*Եւ դիաթաղն ալ՝ մարմինն աննըման*
*Երբ իր աւանէն տարաւ գերեզման,*
*Հազիւ կոչնակը՝ գիւղին տուաւ գոյժ*
*Թէ թըռաւ իր կոյսն ամէնէն անոյշ.*
*Եւ այսպէս մեռաւ ... Թաւուտներ դալար,*
*Քաղցրաբոյր ձորեր, արտեր ու անտառ*
*Անցնելով իջաւ թափօրն այգուն հետ*
*Երբ նոր կը փըթթէր Ապրիլ ծաղկաւէտ,*
*Եւ ձիւն ծաղիկով, արցունքներով ցօղ*
*Կ՚ողողէր դագաղն որ չունէր լացող.*
*Սըրափուշն հագեր ճերմակ վարդ զոհար*
*Ամէն ոստի ծայր փունջ մը կը դողար.*
*Ամէն կողմ բոյր էր, գեղգեղանք անվերջ,*
*Ամէն մէկ թըռչուն կ՚երգէր բոյնին մէջ.*

**ՊՐԻԶԷՕ** (1)

**88.** Գոց սորվիլ և բարձրաձայն արտասանել այս ոտանաւորը.



(1) *Պրիզէօ, ֆրանսացի բանաստեղծ, ծնած է* 1806*ին և մեռած* 1858*ին.*

# ՀՈԼՈՎՆԵՐՈՒ ԳՈՐԾԱԾՈՒԹԻՒՆ

## ԿԱՆՈՆՆԵՐ

**315.** ՈՒՂՂԱԿԱՆ. — Ուղղական *հոլովը կը գործածուի*.

1. *Իբր* ենթակայ, *և կը պատասխանէ ո՞վ կամ ի՞նչ բանի հարցման. Համեստութիւնը աղջկան մը զարդն է:*

2. *Իբր* ստորոգելի, *և կը պատասխանէ ի՞նչ հարցման. Այս մարդը դեռ տղայ է:*

3. *Իբր* կոչական. *Աստուա՛ծ, ողորմէ՛ ինծի:*

4. *Իբր* բացայայտիչ. *Մարիկս [illegible]:*

5. *Իբր* ածականի խնդիր. *Քսան մետր լայն է. Հարիւր օխա ծանր է:*

**316.** ՀԱՅՑԱԿԱՆ. — Հայցական *հոլովը կը գործածուի*.

1. *Իբր* սեռի խնդիր, *և կը պատասխանէ զո՞վ կամ ի՞նչ բանը հարցման. Բարկութիւնը մարդեր կը խանդէ:*

2. *Իբր* բնութեան խնդիր.

*Ա. Երբ դէպ ի տեղ մը շարժում ցոյց կու տայ, և կը պատասխանէ (դէպ ի) ո՞ւր հարցման. Հայրս անկէ որ Պոլիս կ'երթայ: Մեր դրացւոյն տղան ծովը ինկաւ:*

*Բ. Երբ տեղի մը մէջ դադարում կը ցուցնէ, և կը պատասխանէ ո՞ւր հարցման. Ես տունը կը կենամ: Ափրիկէի անտառները զարմանալի գազաններ կան: Այս աղջիկը աչքը ակնոց դրեր է: Մարդ մասնի չկայ:*

3. *Իբր* ստորոգելի, *երբ անուանել, կոչել, կարծել, ճանչնալ, ընտրել, կարգել, ընել, դնել, և այս իմաստով գործածուած ուրիշ ներգործական բայի մը ընկերացած է, և սեռի խնդիրին ինչ ըլլալը կը ցուցնէ. Զինք Թորոս անուանեցի: Զինք հարուստ կարծեցի: Զինքը խենթ ըրի:*

**317.** ՍԵՌԱԿԱՆ. — Սեռական *հոլովը կը գործածուի.*

1. *Իբր* յատկացուցիչ, *և կը պատասխանէ որո՞ւն կամ ի՞նչ բանի հարցման. Պօղոսեանին վարագոյրը բռնկեցաւ:*

2. *Իբր* ածական.

*Ա. Երբ կը ցուցնէ տարիք, տարածութիւն, արժէք. Քսան տարու տղայ մը: Բարձրագոյն կարգի աշակերտներ: Հարիւր ոսկիի մատնի մը:*

*Բ. Վերջ, ներս, դուրս, առաջ, առջեւ, քով, ետեւ, ետք, վեր, վար, տակ, դիմաց, վրայ, և այլն բառերուն մէջ. Վերջի տողը, Ներսի հայրին, Դուրսի սեղանը:*

3. *Իբր* ածականի խնդիր. *Թղթերու հաւաքիչ, Հաշիւներու յարդարիչ:*

**318.** ՏՐԱԿԱՆ. — Տրական *հոլովը կը գործածուի իբր* բնութեան խնդիր, *հետեւեալ կերպով.*

*Ա. Երբեմն շարժում ցոյց կու տայ, և կը պատասխանէ ո՞ւր, ի՞նչ բանի հարցման. Ներեցէ՛ք ինծի: Կրակի՛ն մօտեցէք: Ս. Պատրիարքին խնդրագիր տրուեցաւ: Լուսինը ելեր էր:*

*Բ. Երբեմն ժամանակի գաղափար կու տայ, և կը պատասխանէ ե՞րբ հարցման. Մարտին զարունը կը սկսի: Վեց ժամին դուրս ելաւ: Ժամը երկուքին կ՚արթնամ: Այս առաւօտուն չյաջողեցաւ: Զինքը տեսնելուս՝ ճանչցայ: Ամառուան տաքին ճամբայ քալելը կրնայ վնասակար ըլլալ: Այս օրին դուրս ելլելու չէ: Հայոց տոմարը նորոգուեցաւ 552ին: Ամառ ձմեռ առտուան ժամը վեցին կ՚ելլեմ:*

*Գ. Ընել, ծախել, գնել, զարնել, նմանիլ, և այլն բայերուն քով յատուկ գործածութիւն մը ունի տրականը. Ասոր խենդութիւն կ՚ընէ: Այս գիրքը հինգ ղրուշի գնեցի: Այդ հագուստին գոյնը կանանչի կը զարնէ: Աս տղան հօրեղբօրը կը նմանի:*

Դ. Իբր ածականի խնդիր. Վարժութեան արժանի: Պաշտպանութեան կարօտ:

Ե. Կան ուրիշ պարագաներ ալ, որոնցմէ յիշենք մէկ քանի օրինակներ. Այս իրիկուն ձեզի եմ: Առտուէ կեցեր եմ: Հարիւրէն հինգ տոկոս կը ստանամ:

**319.** ԲԱՑԱՌԱԿԱՆ. — Բացառական հոլովը կը գործածուի.

1. Իբր ածական, երբ նիւթ կամ տեսակ ցոյց կու տայ. Մուշտակէ վերարկու: Քարէ սանդուխ:

2. Իբր բնութեան խնդիր, երբ պատասխանէ ուսկէ՞, ի՞նչ բանէ հարցմանց. Բերդէն ելեցի: Կարդացած գրքերէս գոհ եմ: Տանէն դուրս ելլել չեմ ուզեր: Քրիստոս Յովհաննէս Մկրտիչէն մկրտուեցաւ: Ծխելէ դադրեր եմ: Աշխատութենէ մի' ձանձրանար: Պաշտօնէ հրաժարեցայ: Բարկութենէն մոլեգներ էր: Կարդալէն աչքերը տկարացան:

3. Իբր ածականի խնդիր. Աչքէ հեռու: Հոգերէ զերծ: Մխիթարութենէ զուրկ:

**320.** Տրականի ձեւով և բացառականի իմաստով կը գործածուին երբեմն կարգ մը բառեր. Ընկերիս ընկերոջը' անջատ մնաց: Սաստիկ վախուն շփոթեցաւ: Ասիկա ծերերուն չէր անցներ: Լաւագոյն է սակայն, շփոթութեան տեղի չտալու համար, բացառականի ձեւով գործածել այսպէս. Ընկերիս ընկերոջմէն' անջատ մնաց: Վախէն շփոթեցաւ: Ասիկա ծերերէն չէր անցներ:

**321.** ԳՈՐԾԻԱԿԱՆ. — Գործիական հոլովը կը գործածուի.

1. Իբր բնութեան խնդիր, երբ կը պատասխանէ ինչո՞վ հարցման. Մեր հօրովը յաջողեցանք: Կողովներով ժողվեցին: Գրչով յաղթեցին:

2. Իբր գոյականի խնդիր. Արհեստով բժիշկ: Հաւատքով քրիստոնեայ: Ազգով Հայ:

3. Իբր ածականի խնդիր. Վարդերով լեցուն կողով մը: Քաջութեամբ նշանաւոր զօրավար մը:

4. Մակբայի իմաստով, երբ կը նշանակէ.

Ա. Ամբողջութիւն. Տունով տեղով մեկնեցան:

Բ. Ժամանակի երկարութիւն. Ամիսներով սպասեցինք: Այս իմաստով միշտ յոգնակի կը գործածուի:

Գ. Տեղւոյ տարածութիւն. Գետին երկայնութեամբ տարածուեր էին: Ցամաքի ծովերով պիտի երթանք:

Դ. Որոշ ժամանակ մը. Սողոմոնի օրով ոսկին եւ արծաթը արժէք չունէին:

Ե. Ժամանակի անպատեհութիւն. Գիշերով ո՞ւր կ'երթաս. Մեծ պահք օրով հաւ կ'ուտուի՞:

5. Իբր ածական, երբ նշանակէ ունեցող. Երկու փեղկով (երկփեղկ) դուռ: Չորս ոտքով (չորքոտանի) անասուն: Կարճ հասակով (կարճահասակ) աղջիկ: Այսպէս ձեւացած են ուժով, գինով, համով, խելօք ածականները:

**322.** Հայցական, սեռական, տրական, բացառական և գործիական հոլովները կը գործածուին նաև իբր նախադրութեան խնդիր, ինչպէս. իբրեւ մարդ, տան դիմացը, քեզի հետ, քեզմէ զատ, սրտով մօտ:

ԿՈՉԱԿԱՆ

**323.** Կոչական կ'ըսուի այն բառը, զոր կ'ուղղենք անձի մը կամ իրի մը, ինչպէս. Աստուա՛ծ, երկի՛նք:

**324.** Կոչականը յատուկ հոլով մըն է, որ ուղղականի և հայցականի ձեւը ունի, կրնայ ըլլալ եզակի կամ յոգնակի, ու միշտ կը շեշտուի:

**325.** Կոչականը՝ առաջին վանկին վրայ կը շեշտուի խօսակցութեան մէջ, ինչպէս. Ե՛ղբայր, դուն գիտես որ հիւանդ եմ: Իսկ երբ մինակ գործածուի, մանաւանդ մէկը կանչելու համար, վերջին վանկին վրայ կը շեշտուի. Յակո՛բ, Յակո՛բ, հո՛ս եկուր:

**326.** Կոչականը չի շեշտուիր, երբ իրմէ առաջ շեշտեալ բառ մը ունի, ինչպէս. Սիրելի՛ եղբայր. Տէ՛ր Աստուած:

**327.** *Կոչականը իր ածականին հետ, եթէ ունի, միշտ երկու ստորակէտով կը բաժնուի նախորդ ու յաջորդ բառերէն, ինչպէս. Ողորմէ՛ ինծի, Տէ՛ր Աստուած. եւ մի՛ թողուր զիս:*

---

## ՀՐԱՀԱՆԳՆԵՐ

---

### ԳԵՏԸ

*Սա տհագին բարձրութենէն վար՝ ուրկէ անցնող մարդը կրկայի մը չարժող խեցիին կը նմանի, ու պարապ անդունդ մը իր լայն երախը բացած կարծես կը յօրանջէ, այս հսկայ ապառաժներուն տակէն գետն է որ վար կու գայ։ Ալիքները՝ տափակ, մաշած քարերուն կը զարնեն խուլ շառաչմամբ, փրփուրներ, ճերմակ պղպջակներ ցատկեցնելով։ Անբնակ խոպան բնութիւնը իր աւանդական հողով ու քարով նոյնը մնացեր է. ասդին անդին օձի չապիկներ թափթփած են, ու սարդի երկայն թելեր կ'երերան մեծ պարապէն դարվար։ Վարը, գետը տմոյն, մառախլապատ, իր տիտան օձի հասակով պառկած՝ կ'երթայ երկա՛յն, գլուխ կու տայ հորիզոնին վրայ, ու կը ծռի կը կորսուի։ Բարձրէն անցնող թռչունները փետուրներ վար կը ձգեն, որ դարձդարձիկ ոլործուն պտոյտներով վար կ'իջնեն. կամ քարի կտոր մը յանկարծ մողէզի մը վազքէն փըրթելով՝ վար կը վազէ դէպ ի գետը, վարերը, խորունկը թնդացնելով։ Դէմը, հորիզոնին վրայ լեռներ կան խիտ անտառներով ծածկուած, որոնց թաւ կանանչը հոծ ստուերներու հետ կը խառնուի, ու կիսատ մթութիւն մը կու տայ։ Այդ ծառերուն մէջ պահուըտած հիւղակները ճերմակ երդիքներին կը ցուցնեն ասդին անդին կիտով թաւուտի մէջ թաթխուած։ Այս պակուցիչ բարձրութենէն վար, ուր մահուան անդունդը կոյր աչքով մը երկինքն ի վեր կը նայի, և ուր արեւուն լոյսը բեկբեկելով՝ ծիրանիի բարակ շառաւիղներ կը ցանցնէ, ուր*

*գետը իր անյատակ կռնակին վրայէն ալիքներ կը ճղէ, այս ապառաժներու բարձրութենէն մարդ մը վար ինկած է։*

ՌՈՒԲԷՆ ԶԱՐԴԱՐԵԱՆ [1]

**89.** Զրուցագրել այս հատուածը, և կէտադրութեան նշաններ դնել։

**90.** Բացատրել այս հատուածին մէջ՝ գործածուած հետեւեալ բառերը.

*խեցի, երախ, խուպան, աւանդական, գլուխ տալ, դարձդարձիկ, պակուցիչ, բեկբեկել, շառաւիղ, ճղել։*

**91.** Ըսել թէ ինչ պաշտօնով գործածուած են ստորագծուած ուղղականները հետեւեալ խօսքերու մէջ.

*Կատարը ջրային թռչուններու ամէնէն սքանչելին է։—Ծեղամարկեղը հերկելու գործիք մըն է։—Մեր մարմնին վրայ փոքրիկ փոսեր կան, որոնք ծակտիք կը կոչուին։—Օդին իշխանը, արծիւը, միշտ արեւուն կը նայի։—Ինչպէս բոցը, նոյնպէս ալ հիացումը կը պակսի, երբ չ'աւելնար։—Ռիշլիէօ Հենրիկոս Դ.ի քաղաքականութիւնը շարունակեց, և Լուդովիկոս ԺԴ.ինը պատրաստեց։—Սպարտացւոց ամէնէն մեծ փառքն էր իրենց զաւակներուն ստացած վէրքերը։*

**92.** Ըսել թէ ինչ պաշտօնով գործածուած են ստորագծուած հայցականները հետեւեալ խօսքերուն մէջ.

*Ուշադրութեամբ դիտեցէ՛ք թիթեռնիկին թեւերը, և տեսէ՛ք թէ ինչ նուրբ արուեստով յօրինուած են։—Յաճախադէպ երկրաշարժներ կը կործանեն Ամերիկայի քաղաքները։—Եթէ կայծակը որ և է մետաղի մը վրայէն անցնի, կը հալեցնէ զայն և օդին մէջ կը ցնդեցնէ։—ԺԸ. դարուն վերջերը Յովսէփ Արղութեանց Արքեպիսկոպոսը Գրիգորուպոլիս հայաբնակ քաղաքը հիմնեց Ռուսաստանի մէջ։—Հինաւուրց քաղաքները բլուրներու վրայ նստած կը ներկայանային պատկերներու մէջ։—Գիշերները կանուխ անկողին մտնել՝ և առաւօտները կանուխ ելլել՝ գլխաւոր պայմաններն են տղու մը առողջութեան։—Եթէ մեր պարտքերը հոգ մը նկատենք, դժբախտ կ'ըլլանք, իսկ եթէ ուրախութեամբ կատարենք զանոնք, ամէնուն նախանձելի կը դառնանք։—Տղաք պէտք չէ որ խնջոյք մը կարծեն կեանքը։—Կարճամիտ մարդը եթէ հարիւր անգամ ալ խաբուի, նորէն փորձառու չ'ըլլար։*

---

(1) Ռուբէն Զարդարեան, Խարբերդցի ժամանակակից գրագէտ և ուսուցիչ, հրատարակած է յօդուածներ, հէքեաթներ և քերթուածներ Հայ թերթերու մէջ։

# ԳՈՅԱԿԱՆ ԳՈՅԱԿԱՆԻ ՀԵՏ

## ՀԱՄԱՁԱՅՆՈՒԹԻՒՆ

---

### ԿԱՆՈՆՆԵՐ

**328.** *Գոյական մը՝ գլխաւորաբար երեք կերպով կրնայ ուրիշ գոյականի մը քով իյնալ.* Ա. Իբր բացայայտիչ եւ բացայայտեալ, Բ. Իբր յատկացուցիչ եւ յատկացեալ, Գ. Իբր ածական։

#### ԲԱՑԱՅԱՅՏԻՉ ԵՒ ԲԱՑԱՅԱՅՏԵԱԼ

**329.** Բացայայտիչ *կ'ըսուի այն գոյականը, որ ուրիշ գոյականի մը ո՛վ կամ ի՛նչ ըլլալը կը բացատրէ.* *Ողիմպոս լեռը, Աւետիք Պատրիարքը։ Ողիմպոս և Աւետիք* բացայայտիչ *են։*

**330.** Բացայայտեալ *կ'ըսուի այն գոյականը, որուն ի՛նչ կամ ո՛վ ըլլալը բացայայտիչով մեկնուած է.* *Ողիմպոս լեռ, Աւետիք Պատրիարք։ Լեռ և Պատրիարք* բացայայտեալ *են։*

**331.** *Բացայայտիչը կամ բացայայտեալը ընդհանրապէս յատուկ անուն կ'ըլլայ, բայց երբեմն կրնան երկուքն ալ հասարակ անուն ըլլալ, ինչպէս. Շատ կը սիրեմ քաղաքը՝ [illegible] [illegible] [illegible]։*

**332.** *Բացայայտիչը ընդհանրապէս բացայայտեալէն առաջ կը դրուի, երբ երկուքը իրարմէ անանջատ բառեր են, այսինքն երբ բութով կամ ստորակէտով չեն զատուիր. այս պարագային բացայայտիչը ոչ յօդ կ'առնէ և ոչ կը հոլովուի. Նեղոս գետն անցանք, Կարմիր ծովուն եզերքը հասանք։*

**333.** Իսկ երբ բացայայտիչը և բացայայտեալը իրարմէ կ'անջատուին ստորակէտով կամ բութով, այն ատեն վերջը դրուածը բացայայտիչ կը նկատուի ընդհանրապէս։ Երբ ըսենք Շէքսփիր՝ անգլիացի թատերագիրը՝ 52 տարու մեռաւ, Անգլիացի թատերագիրը բացայայտիչ է Շէքսփիրին։ Իսկ երբ ըսենք՝ Անգլիացի թատերագիրը՝ Շէքսփիր՝ 52 տարու մեռաւ, Շէքսփիր բացայայտիչ է Անգլիացի թատերագիրին։ Այս պարագաներուն՝ թէ՛ բացայայտիչը և թէ՛ բացայայտեալը կը հոլովուին ընդհանրապէս, ինչպէս. Տանթէի՝ իտալացի մեծ քերթողին՝ արձան մը պիտի կանգնուի կամ Իտալացի մեծ քերթողին՝ Տանթէի՝ արձան մը պիտի կանգնուի:

**334.** Երկար բացայայտիչները և բացայայտեալները պէտք է յարաբերականով զատել, խօսքը չերկարելու և չփոթութեանց տեղի չտալու համար։ Փոխանակ ըսելու. Մեր լեզուն՝ մեր հօրմէն ու մօրմէն մնացած միակ անկորուստ ժառանգութիւնը, մեր գաղափարներու անմիջական միջնորդը, պէտք է անվթար պահուի, պէտք է ըսել. Պէտք է անվթար պահուի մեր լեզուն, որ մեր հօրմէն ու մօրմէն մնացած միակ անկորուստ ժառանգութիւնն է, ևայլն։

**335.** Կարելի է նաև այս պարագաներուն մէջ անջատման գիծ գործածել բացայայտիչէն առաջ և ետքը, ինչպէս. Մեր լեզուն, — մեր հօրմէն եւ մօրմէն մնացած միակ անկորուստ ժառանգութիւնը, մեր գաղափարներու անմիջական միջնորդը, — պէտք է անվթար պահուի:

### ՅԱՏԿԱՑՈՒՑԻՉ ԵՒ ՅԱՏԿԱՑԵԱԼ

**336.** Յատկացուցիչը անուն մըն է, որ ուրիշ անունի մը որուն ըլլալը կը ցուցնէ. Ծառին ճիւղը, Ծառերուն ճիւղերը: Ծառին և Ծառերուն յատկացուցիչ են

**337.** Յարակցեալը *այն բառն է որ յարակցուցիչին կը վերաբերի. Ծառին* ճիւղը*, ծառերուն* ճիւղերը*: Ճիւղը և* ճիւղերը յարակցեալ *են:*

**338.** *Յարակցուցիչը կ'ըլլայ* միայն սեռական հոլով, *իսկ յարակցեալը* ամէն հոլով *կրնայ ըլլալ. Ծառին* ճիւղը, *ծառին* ճիւղին, *ծառին* ճիւղէն, *ծառին* ճիւղով*:*

**339.** *Յարակցուցիչը կը պատասխանէ որո՞ւն կամ ի՞նչ բանին հարցման:*

**340.** *Սեռական և տրական հոլովներուն ձևերը նոյն ըլլալով, պէտք է գիտնալ որ սեռական հոլով յարակցուցիչը միշտ* գոյականի *մը կը վերաբերի, ինչպէս. Ծառին* ճիւղը*, մինչդեռ տրական հոլովը* բայի *մը կը վերաբերի, ինչպէս. Ծառին* մօտենալ*:*

**341.** *Այս կանոնին բացառութիւն չեն կազմեր հետեւեալ երկու պարագաները.*

*Ա. Երբ սեռական հոլովը բանի մը մէկուն վերաբերիլը կը ցուցնէ.* Այս գիրերը *տղուն* են*: Այս նախադասութեան մէջ՝* տղուն *բառը տրական չէ, այլ սեռական, և զեղջումի մը պատճառաւ բային քով ինկած է: Առանց զեղջումի, պիտի ըսէինք.* Այս գիրերը տղուն գիրերն են*:*

*Բ. Երբ սեռական հոլովը տարիք կը ցուցնէ.* Քոյրս տասներկու *տարու* է*: Այս պարագային մէջ* տարու *ոչ թէ սեռական մը կամ տրական մը, այլ սեռականի ձևով ածական մըն է* տարեկան *բառին տեղ գործածուած:*

**342.** *Աշխարհաբարի մէջ՝ յարակցուցիչը ընդհանրապէս յարակցեալէն առաջ կը դրուի.* Եկեղեցւոյն զանգակը, դրան բանալին*:*

**343.** *Յարակցեալը կրնայ յարակցուցիչէն առաջ դրուիլ հետեւեալ պարագաներուն մէջ.*

*Ա. Երբ յարակցուցիչէն վերջը յարաբերական մը կայ, և կրնայ իմաստի շփոթութիւն յառաջ գալ. Կը*

ճանչնայի ձեր դրացւոյն աղջիկը որ մեռաւ, կամ կը ճանչնայի աղջիկը ձեր դրացւոյն որ մեռաւ:

Բ. Ոտանաւորի մէջ յանգի կամ վանկի յարմարութեան համար.

Կ'ըլնիմ նըկարել լուրթը եթերին,
Թիթեռնիկները, որ կը դեգերին
Թաւուտներուն մէջ, շուրջը վարդերուն,
Զոր զոհար ցօղով դեղերփինեց գարուն։

Գ. Գրաբարէն առնուած քանի մը բացատրութեանց մէջ. Որդի Աստուծոյ, Սրբութիւն Սրբոց, Փրկիչ աշխարհի, ևայլն:

344. Երբ յատկացուցիչը որոշեալ չըլլալով առանց յօդի գործածուած է, շատ անգամ կարելի է տեղը դնել նոյն իմաստը ունեցող ածական մը, ինչպէս. Մօր սէր, մայրական սէր: Երկինքի կապոյտ, երկնային կապոյտ:

ԱԾԱԿԱՆԱԲԱՐ ԳՈՐԾԱԾՈՒԱԾ ԳՈՅԱԿԱՆՆԵՐ

345. Գոյականներ կան որոնք միանգամայն ածական են, ինչպէս. Սուտ, մութ, ծակ, շուտ, ցուրտ, հանգիստ: — Սուտին վերջը չի գար: Սուտ վկայութիւն մի՛ ընէր: Մութ գիշեր էր: Գիշերուան մութին դուրս ելեր: Ծակ ամանը չի լեցուիր: Ամանին ծակը պէտք է խցել, ևայլն։

346. Կան գոյականներ ալ որոնք իբր ածական կրնան գործածուիլ, ինչպէս հետեւեալ պարագաներուն մէջ.

Ա. Երբ գոյականը ստորոգելի է. Դեռ ծոմ եմ: Հաց եղայ:

Բ. Երբ բանի մը նիւթը կը ցուցնէ. Ոսկի շղթայ, արծաթ ժամացոյց:

Գ. Երբ չափ ցոյց կու տայ. Գաւաթ մը ջուր, կաթիլ մը արցունք, հինգ օր ճանապարհութիւն:

Դ. Նմանութեամբ. Քար սիրտ, ծաղիկ հասակ, գոհար ցօղ:

Ե. Փոխաբերութեամբ. Կրակոտ երիտասարդ մը, հեզ մարդ մը, ոսկի սրտով փայտահատ մը:

**347.** Ժամանակ ցուցնող գոյականները իրարու վրայ կ'իյնան իբր ածական և գոյական. Երէկ գիշեր, Վաղը իրիկուն, Ամէն առտու:

**348.** Կան գոյականներ ալ որոնք հոլովուելով ածականի իմաստ կ'արտայայտեն, ինչպէս տեսանք հոլովներու գործածութեան առթիւ.

Ա. Սեռական հոլով. Տասը տարու տղայ մը, երկրորդ կարգի աշակերտ, Եդեմի պարտէզը:

Բ. Բացառական հոլով. Փայտէ աթոռ, կաշիէ գօտի:

Գ. Գործիական հոլով. Երկու թեւով աշտանակ, չորս ոտքով սեղան, ճերմակ մազով կատու, անոյշ ձայնով դաշնակ:

---

## ՀՐԱՀԱՆԳՆԵՐ

### ՈՒՂԻՆԵՐՈՒՆ ՔՈՎ

Լայն ուղիներու քովն եզերքն ի վեր,
Խոտին մէջ ծաղիկ հեզիկ, աղուորիկ,
Ի՜նչ հոգիներ կան անոյշ, անձնուէ՛ր
Մէկ կողմ մընացած հէք մինաւորիկ,
Լայն ուղիներու քովն եզերքն ի վեր...:

Խոտին մէջ ծաղի՛կ հեզիկ, աղուորիկ,
Որոնց վըրայ ձեռք մ'երբեք չի դողար,
Տենչերով արտիուն սիրտեր կան գողտրիկ,
Հեշտաբոյր, սակայն անփայլ, անթաղար,
Խոտին մէջ ծաղիկ հեզիկ, աղուորիկ...:

Ի՜նչ հոգիներ կան անոյշ անձնուէր,
Որոնք հեծելով կ'այրին մեկուսի.
Գութ ու գորովի բո՛յն սիրահրաւէր,
Լանջքին տակ՝ անշուք կընող ու կոյսի,
Ի՜նչ հոգիներ կան անոյշ, անձնուէր...:

*Մէկ կողմ մընացած, հէ՛ք մինաւորիկ,*
*Երազո՛ւն աչքեր թուխ ու կապուտակ,*
*Որոնց ժըպիտին փըթթումն անդորրիկ*
*Կը խամրի մութին՝ խուլ ցաւերու տակ,*
*Մէկ կողմ մընացած հէ՛ք մինաւորիկ...։*

*Լայն ուղիներու քովն եզերքն ի վեր*
*Մարդիկ անտարբեր կ՚անցնին ու կ՚երթան,*
*Իրենց ոտքին տակ փափուկ ծաղիկներ*
*Ճըմլուած՝ լըռիկ մութին մէջ կու լան,*
*Լայն ուղիներու քովն եզերքն ի վեր...։*

**ԱՂԵՔՍԱՆԴՐ ՓԱՆՈՍԵԱՆ** [1]

**100.** Զրուցագրել այս ոտանաւորը, և կէտադրութեան նշաններ դնել։

**101.** Գոց սորվիլ և բարձրաձայն արտասանել այս ոտանաւորը։

**102.** Մէյ մէկ յարմար բացայայտիչ գտնել հետևեալ բառերուն.

*Աստեղագիտութիւն, մանտարէն, պատանդ, մազաղաթ, հանրագիտարան, օդապարիկ, Մոցարդ, Հերոդոտ, Ֆէնէլոն, Ոսկեբերան, Եղիշէ, Շաթոպրիան, Կիկերոն, Լամարթին, Ափրիկէ, մանիշակ, Թեղօշ, Փիտիաս, Կիյեօմ Թէլ, Իլիական, Յայսմաւուրք, Զատիկ.*

**Օրինակ.** — *Աստեղագիտութիւն՝ աստղերու գիտութիւն։*
*Մոցարդ՝ գերման երաժշտագէտ։*

---

## ՆԻԱԿԱՐԱՅԻ ՎՐԱՅ

*Հուսկ ուրեմն սահմանքին եզերքը հասանք, որուն անդնդի մանչիւնները կը լսէինք։ Այս ջրվէժը կը ձեւանայ Նիակարա գետէն, որ Էրիէ լիճէն կը բղխի, և Օնդարիօյ լիճը կը թափի. իր ուղղահայեաց բարձրութիւնն է հարիւր քառասունըրչորս ոտք. Էրիէ լիճէն մինչև ջրվէժը, գետը երթալով կը նուազի ցից դարևանդէ*

---

(1) Աղեքսանդր Փանոսեան, ժամանակակից բանաստեղծ, որ հրատարակած է բազմաթիւ քերթուածներ։

մը, և գահավիժած ատեն աւելի ծով մըն է քան գետ մը, որուն հեղեղները զիրար կը մղեն երախաբաց անդունդի մը եզերքը:

Սահանքը երկու ճիւղի կը բաժնուի, և պայտի ձևով վար կը ծռի: Երկու հոսանքներուն մէջտեղէն կղզի մը կը յառաջանայ, տակէն փորուած, որ իր բոլոր ծառերով ալիքներուն քաոսին վրայ կը կախուի: Հարաւային կողմը, գետին զանգուածը ընդարձակ գլանի մը ձևով կը կլորնայ, յետոյ ձիւնեղէն սփռոցի մը պէս կը տարածուի, և արևուն դիմացը կը փայլի գունագեղ: Արևելեան կողմը իյնող մասը զարհուրելի ստուերի մը մէջ կ'իջնէ. կարծես ջրհեղեղին ջրեղէն սիւնն է: Հազարաւոր ծիածաններ կը հակին ու զիրար կը խաչաձևեն անդունդին վրայ: Կոհակը՝ խարխլած ժայռին զարնուելով՝ փրփրոտ յորձանքներ կը ժայթքէ, որոնք մինչև անտառներէն վեր կը բարձրանան մեծ հրդեհի մը մուխերուն նման: Թեղօշներ, վայրի ընկուզենիներ, ուրուաձև կտրուած խարակներ այս տեսարանը կը զարդարեն: Արծիւներ օդի հոսանքներէ քշուած, պտուտկելով կ'իջնեն անդունդին խորը՝ վիհին մէջէն բռնելու համար հիւսիսեղնիկը և արջերու ջախջախուած դիակներ:

ՇԱԹՕՊՐԻԱՆ (1)

**103.** Լուծել այս հատուածը բերանացի.

**104.** Մէյ մէկ նախադասութիւն շինել հետևեալ *յատկացուցիչնե-րէն* և *յատկացեալներէն*.

*Հովին շշունչը, կրակին ճարճատիւնը, զէնքերու շխշխիւնը, դրօշակին ծփումը, վտակին մրմունջը, հրացանին ճայթիւնը, կառքին գլումը, երգեհոնին խորդումը, ջուրին ճղփիւնը, կոհակներուն շառաչիւնը, տերևներուն խարշափիւնը, մտրակին շաչիւնը, շեփորին հնչիւնը, որոտման գոռումը, ծխնիներուն ճռնչիւնը, զանգակին թնդիւնը, գնդակներուն շչիւնը, թնդանօթին բոմբիւնը:*

---

(1) Շաթօպրիան, երևելի Ֆրանսացի գրագէտ, ծնած է 1768ին և մեռած 1848ին: Գրած է բազմաթիւ նշանաւոր երկեր, որոնց գլխաւորն է Քրիստոնէութեան Ոգին:

**105.** Մէյ մէկ խօսք շինել հետեւեալ *յատկացեալներէն* կամ *յատկացուցիչներէն*.

*Կատուին մլաւիւնը, ոչխարին մայիւնը, տատրակին մնչիւնը, առիւծին մռնչիւնը, շան հաչիւնը, եզան բառաչիւնը, էշուն զռնչիւնը, ձիուն վրնջիւնը, հաւուն կարկաչանքը, գորտին կռկռանքը, ագռաւին կռինչքը, խոզին խռնչիւնը, գայլին ոռնումը, օձին սուլումը, աղուէսին կաղկանձումը, ծիծեռնակին դայլայլիկը, մեղուին բզզիւնը, աքաղաղին երգը։*

**106.** Ածականի վերածել հետեւեալ *յատկացուցիչները* և մէյ մէկ գոյական յատկացնել անոնց.

*Գիշերուան, մարդու, մահուան, դիւցազունի, ձմեռուան, գիտունի, աղու, եղբօր, վայրենիի, սատանայի, աշխարհքի, հիւանդի, յիմարի, աղքատի, հարսնիքի, հոգւոյ, դէմքի, ձեռքի, տան, նաւու, դաշտի, սուրբի, հովուի, զինուորի, քահանայի, հրեշտակի, սրտի, երազի, կեանքի, ծնունդի, իշխանի։*

**Օրինակ.** — *Գիշերային պտոյտ, մարդկային տկարութիւն։*

**107.** Գոյականի մը քով իբրև ածական գործածել հետեւեալ *գոյականները*.

*Լոյս, ձիւն, կամար, փղոսկր, վարդ, երկաթ, սափոր մը, ժամ մը, տոպրակ մը, երկու բեռ, հինգշաբթի, պահք, տուփ մը, երկու ասեղ, երեք տող, դդում, շաքար, խաւար, արև, փոս, մարգրիտ։*



# ԳՈՅԱԿԱՆԻՆ ԼՈՒԾՈՒՄԸ.

*Վիգթորիա՝ Անգլիոյ թագուհին՝ ծնած էր 1819ին, և մեռաւ 1901ին : — Լսէ՛, երկինք, և դուն մտիկ ըրէ՛, երկի՛ր, այն ճշմարտութիւնները զորս պիտի յայտնեմ : — Սկեպտիկեանք կ'ուրանային այն ամէն բաները որոնց խելքերնին չէր հասներ : — Շէյլէ բանաստեղծին կինն ալ գրագէտ մըն է : — Տղան որ դպրոց կ'երթայ, կեանքի պայքարին մէջ մտած է արդէն : — Ան որ ձեռքը գրիչ ունի, պէտք է օգտակար կերպով գոր-ծածէ զայն : — Կան մայրկեաններ ուր կեանքը դրախտ մը կ'երեւայ մեզի : — Չարախօս մը կը նկատեմ այն անձը, որ հաճոյքով մտիկ կ'ընէ չարախօսութիւնները : — Ներեցէ՛ք չարերուն, վասնզի ամէնէն աւելի իրենց անձին կը վնասեն անոնք : — Կէս օրին այցելութեան երթալը անպատշաճ բան է : — Ալֆոնս Տոտէ իր վէպե-րուն մէջ նմանած է Տիքընսի : — Ժանեակով զարդա-րուն զգեստները փափուկ մորթով դէմքերու կը վայ-լեն : — Շանթարգելով տուները կայծակէն չեն վախնար :*

| | | |
|---|---|---|
| Վիգթորիա | յտկ. ան. եզ. ուղ. ենթ. *ծնած էրին*: | |
| Անգլիոյ | յտկ. ան. եզ. սռկն. յտկցչ. *թագուհիին* | բցյտչ. *Վիգ-* |
| թագուհին | հսրկ. ան. եզ. ուղ. յտկցլ. *Վիգթորիային*: | *թորիային* |
| երկինք | հսրկ. ան. եզ. ուղ. կոչկն.: | |
| երկիր | հսրկ. ան. եզ. ուղ. կոչկն.: | |
| ճշմարտութիւնները | հսրկ. ան. եզ. հյց. սեռի խնդ. *մտիկ ըրէ'ին*: | |
| Սկեպտիկեանք | յտկ. ան. յգ. ուղ. ենթ. *կ'ուրանայինին*: | |
| բաները | հսրկ. ան. յգ. հյց. սեռի խնդ. *կ'ուրանայինին*: | |
| խելքերնին | հսրկ. ան. յգ. ուղ. ենթ. *չէր հասներին*: | |
| Շէյլէ | յտկ. ան. եզ. ուղ. բցյտչ. *բանաստեղծին*: | |
| բանաստեղծին | հսրկ. ան. եզ. սռկն. յտկցչ. *կինին*: | |
| կինն | հսրկ. ան. եզ. ուղ. ենթ. *եղած էին*: | |

| | |
|---|---|
| գրագէտ | հսրկ. ան. եզ. ուղ. ստորգլ. *կինին*։ |
| Տղան | հսրկ. ան. եզ. ուղ. ենթ. *մեռած էին*։ |
| դպրոց | հսրկ. ան. եզ. հյց. բնբեն. խնդ. *կ'երթային*։ |
| կեանքի | հսրկ. ան. եզ. սռկն. յտկցչ. *պայքարին*։ |
| պայքարին | հսրկ. ան. եզ. սռկն. խնդ. *մէջին*։ |
| ձեռքը | հսրկ. ան. եզ. հյց. բնբ. խնդ. *ունին*։ |
| գրիչ | հսրկ. ան. եզ. հյց. սեռի խնդ. *ունին*։ |
| կերպով | հսրկ. ան. եզ. գրծ. բնբ. խնդ. *գործածէին*։ |
| վայրկեաններ | հսրկ. ան. յք. ուղ. ենթ. *կային*։ |
| կեանքը | հսրկ. ան. եզ. ուղ. ենթ. *կ'երեւային*։ |
| դրախտ | հսրկ. ան. եզ. ուղ. ստորգլ. *կեանքըին*։ |
| Զարախօս | հսրկ. ան. եզ. հյց. ստորգլ. *անձին*։ |
| անձը | հսրկ. ան. եզ. հյց. սեռի խնդ. *կը նկատեմին*։ |
| չարախօսութիւնները | հսրկ. ան. յք. հյց. սեռի խնդ. *մեղկ կ'ընէին*։ |
| չարերուն | հսրկ. ան. յք. տրկ. բնբ. խնդ. *ներեցէքին*։ |
| անձին | հսրկ. ան. եզ. տրկ. բնբ. խնդ. *կը վնասենին*։ |
| օրին | հսրկ. ան. եզ. տրկ. բնբ. խնդ. *այցելութեան* |
| այցելութեան | հսրկ. ան. եզ. տրկ. բբ. խդ. *երթային*։ [*երթային*։ |
| երթալը | հսրկ. ան. եզ. ուղ. ենթ. *է ին*։ |
| բան | հսրկ. ան. եզ. ուղ. ստորգլ. *երթալըին*։ |
| Ալփոնս } | յտկ. ան. եզ. ուղ. բցյտչ. *Տօդէին* \| ենթ. *նմա-* |
| Տօդէ } | յտկ. ան. եզ. ուղ. բցյտչ. *Ալփոնսին* } *նած է ին*։ |
| վէպերուն | հսրկ. ան. յք. սռկն. խնդ. *մէջին*։ |
| Տիքընսի | յտկ. ան. եզ. տրկ. բնբ. խնդ. *նմանած է ին*։ |
| ժամանակով | հսրկ. ան. եզ. գրծ. խնդ. *զարդարունին*։ |
| զգեստները | հսրկ. ան. յք. ուղ. ենթ. *կը փայլէինին*։ |
| մորթով | հսրկ. ան. եզ. գրծ. խնդ. *փաթուկին*։ |
| դէմքերու | հսրկ. ան. յք. տրկ. բնբ. խնդ. *կը փայլէնին*։ |
| Ծանրարգելով | հսրկ. ան. եզ. գրծ. խնդ. *տուներըին*։ |
| տունները | հսրկ. ան. յք. ուղ. ենթ. *չէին վախնարին*։ |
| կայծակէն | հսրկ. ան. եզ. բցռ. բնբ. խնդ. *չէին վախնարին*։ |

## ՀՐԱՀԱՆԳՆԵՐ

---

## ՊԼԻՆԻՈՍ ԻՐ ՄԱՅՐԸ Կ'ԱԶԱՏԷ

Կրտսերն Պլինիոս Միսէնի կը բնակէր, Վեսուվէն քիչ հեռու, այն ահռելի հրաբուխին առեն, որ իր հօրեղբօր՝ Պլինիոս բնագէտին մահուան պատճառ եղաւ։ Բնակիչները՝ անարբեկ՝ ինքզինքնին ազատելու համար, սկսան փախչիլ։ Պլինիոս, իրեն սպառնացող վտանգը մոռնալով, մայրը փնտռեց, գտաւ և ուզեց զայն ազատել։ Ի զուր խեղճ կինը կը համոզէր զայն թէ չէր կրնար իրեն հետ երթալ, ծեր ու տկար ըլլալուն պատճառաւ, թէ քիչ մը ուշանալով կրնային երկուքնին մէկտեղ մեռնիլ, թէ թերեւս փախչելու ժամանակը անցած էր արդէն՝ նոյն իսկ իրեն համար։ Պլինիոս ականջ չկախեց, և հակառակ մօրը կամքին առաւ տարաւ զայն գրկած։ Օդին մէջ կուտակուած մոխիրը իրենց վրայ կը տեղար, սև ծուխ մը երկինքը կը մթագնէր, և զարհուրելի երեւոյթ մը կու տար անոր։ Այդ հոծ աղջամուղջին մէջ զիրենք շրջապատող բոցերէն զատ՝ լոյս չէին տեսներ։ Սակայն ոչ վտանգը ոչ ցաւը չկըրցան խախտել այդ բարի զաւկին հաստատամտութիւնը։ Խոնջ, ոգեսպառ, քանի մօրը կը նայէր, իր ոյժն ու կորովը կ'արծարծուէին։ Եւ պաշտպանեց զայն մինչև տոքը, սփոփեց, քաջալերեց, ու գիրկը առած քալեց մինչև որ ազատեց զայն վտանգէն։

108. Լուծել այս հատուածին գոյականները։

---

## ՇԹԱՔԱՐԵՐԸ

Ես կը սիրեմ անձաւն, ուր ջահ
Կ'արիւնոտէ ցայգը խաւար,
Արձագանգն ալ, որ քարէ քար,
Կոծ կը հանէ ձայնէն տըկար։

Կամարէն կախ շըթաքարեր
Ջերթ քարացած արցունք երկար,
Տամկութիւնին կը կաթէ վար
Շիթ շիթ ոտքիս տակ յամրաքար։

Այդ խաւարին գոգն աննըշոյլ,
Անդորրութիւն մը կայ թախծոտ.
Եւ մահաքոյր արցունքին մօտ՝
Որ չի ցամքիր կախուած միշտ հոտ,

Կը խորհիմ հէք հոգիներուն,
Ուր հին ցաւեր կը նիրհեն խոր.
Սառ կըտրած են արցունք բոլոր.
Բան մը կու լայ հոն ամէն օր։

ՍԻՒԼԼԻ ՊՐԻՒՏՈՄ [1]

**109.** Գոց սորվիլ և բարձրաձայն արտասանել այս ոտանաւորը։



---

[1] Սիւլլի Բրիւտոմ, Ֆրանսացի ժամանակակից բանաստեղծ մըն է, ծնած 1839ին։

# ՑՕՂ

## ԿԱՆՈՆՆԵՐ

**349.** Ցօղ կ'ըսուի այն գիրը կամ մասնիկը, որ գոյականի մը վերջը դրուելով՝ անոր նշանակութիւնը կ'որոշէ կամ ընդհանուր իմաստը մասնաւորի կը վերածէ. Տողէն փրցուցի, Տողէնը փրցուցի, Տողէն մը փրցուցի, Տողէնս փրցուցի:

**350.** Ցօղը երեք տեսակ է. Որոշիչ, անորոշ, դիմորոշ:

## ՈՐՈՇԻՉ ՅՕԴ

**351.** Որոշիչ յօդ կ'ըսուին ը և ն գիրերը. մարդը, մեղուն:

**352.** Ը կը գործածուի բառի մը վրայ, որուն վերջին գիրը բաղաձայն է. սագը, դուռը, սեղանը:

**353.** Ւ ձայնաւորով վերջացող բառի մը վրայ ը կը գործածուի, երբ այդ ւը վ հնչուելով՝ բաղաձայն նկատուի. Ցաւը, թիւը, հաշիւը:

**354.** Ն յօդը կը գործածուի բառի մը վրայ, որուն վերջին գիրը ձայնաւոր է. ջորին, մեղուն, բազէն:

**355.** Յ բաղաձայնով վերջացող բառերուն յն կը ջնջուի և ն յօդը կը դրուի, երբ յն անձայն է. հսկան, հաւաքածոն:

**356.** Ն յօդը կը գործածուի նաև բաղաձայնով վերջացող բառերուն ծայրը, երբ էական բային սահմանական ներկան կամ անկատարը յաջորդէ անոնց, ինչ-

պէս նաև. ու, այ, իսկ. անձայն չաղկապներէն և ի վեր, ի վար նախադրութիւններէն առաջ. Իրենք տունն են: Դուն անհանգիստ ես: Քարերն անգամ լեզու եղան: Այդ աղջիկն ալ իրենն է: Երեսն ի վեր ինչ կը նայիս, եւայլն.

**357**. Բայց նախորդ բառին ը յօդը ն ի չի փոխուիր եթէ ա՛լ մակբայը յաջորդէ անոր. Խեղճ կինը ա՛լ ձանձրացաւ: Տղաքը ա՛լ յոգներ են:

**358**. Անձայն բառն ալ երբ չաղկապ չէ, իրմէ առջի բառին ը յօդը ն ի չի փոխուիր, այլ կ'ըսուի. Այս աղջիկները անգամ մը որ խաղալ սկսին, ա՛լ վերջը չեն բերեր:

**359**. Ոտանաւորի մէջ ն յօդը կրնայ դրուիլ բաղաձայնով վերջացող բառերու վրայ, երբ իրենցմէ վերջը եկող բառը հ կամ յ բաղաձայնով կը սկսի, և կամ ո և է ձայնաւորով.

Խոյն որորի մը ժանգոտած հասկուն
Հանգիստն երկար
Տեսաւ իր եղբայրն, որ շողշող փայլուն
Դաշտն կը դառնար:

**360**. Անունները յօդով սապէս կը հոլովուին.

| | Եզ. | Յոգ. |
|---|---|---|
| Ո. Հ. | Գանձը | Գանձերը |
| Ս. Տ. | Գանձին | Գանձերուն |
| Բ. | Գանձէն | Գանձերէն |
| Գ. | Գանձով | Գանձերով |

**361**. ՈՐՈՇԻՉ ՅՕԴԻՆ ԳՈՐԾԱԾՈՒԹԻՒՆԸ. — Որոշիչ յօդին գործածութեան բոլոր պարագաները նախատեսել դժուար է. կարելի է սակայն սահմանել քանի մը գործնական կանոններ:

**362**. Հասարակ անուններու եզակին. — Հասարակ անուններու եզակի ուղղականը և հայցականը

ամէն պարագայի մէջ յօդ կ'առնեն երբ որոշեալ են. Ժամերը կ'անցնին: Մէկ մոմին լոյսը չի բաւեր: Այս գիրքը կարդացի: Մեր նոր տունը պզտիկ է կանեղ:

**363.** Բացատրէ՛ք. են հետեւեալ պարագաները.

1. Ժամանակ ցոյց տուող բառերը, թէեւ որոշեալ ըլլան, առանց յօդի կը գործածուին մակբայօրէն հետեւեալ բացատրութեանց մէջ. Այսօր, այս առտու, այս գիշեր, երեկ իրիկուն, այն ատեն, գալ ամիս, եկող տարի, ուրբաթ գիշեր, շաբաթ ցորեկ, եւայլն:

2. Գիրքերու անունները եւ գրքի գլուխներու վերնագիրները երբեմն առանց յօդի կրնան գործածուիլ, թէեւ որոշեալ ըլլան. Գործնական Քերականութիւն, Միջին դարու պատմութիւն, եւայլն:

3. Երբ ուզուի թուումի մը ամբողջութիւն տալ նախադասութեան. Հաւեր, բադեր, սագեր լեցուն էին վայրագաւիթին մէջ: Աղաչանք, պաղատանք, արցունք օգուտ մը չըրին:

4. Կոչականի մէջ երբեք որոշիչ յօդ չի գործածուիր. Եկո՛ւր, տղա՛յ. կեցի՛ր, որսո՛րդ:

5. Եօթը, ութը, ինը, տասը թուական ածականները երբ գոյականաբար գործածուին, իրենց ծայրի ը ը յօդի տեղ կը բռնէ եւ ն ի կը փոխուի սահմանական ներկայէն ու անկատարէն առաջ, ինչպէս նաեւ ու, ալ, իսկ, անգամ շաղկապներէն առաջ. Սա երկու թիւերէն տա՞սն է ընտրածդ թէ ինը: Եօթն ալ մէկտեղ էին:

**364.** Սեռական եւ տրական հոլովները որոշիչ յօդ կ'առնեն երբ ի, ու, ոյ կը վերջանան. Հրդեհին սաստկութիւնը: Ծովուն տարածութիւնը: Հօրը սիրոյն համար: Եկեղեցւոյն զանգակը: Աթոռին ոտքը:

Սեռական եւ տրական հոլովները որոշիչ յօդ չեն առներ եթէ վերոգրեալ երեք վերջաւորութիւններէն տարբեր կերպով կը վերջաւորին, ինչպէս. ուրեան,

ման, Լայլն ։ Մեր տեսակցութեան ատեն ։ Այս զգացման դառնութիւնը ։ Այդ ուրախութեան չէի սպասեր ։ Երկու գիշերուան մութը ։

**365.** Կան կարգ մը բառեր որոնց սեռականները երբ ածական կը գործածուին և բնաւ յօդ չեն առներ. Առջի, վերջի, ներսի, դուրսի, ծովի, առջեւի, ետեւի, տակի, վրայի, մէջի, դէմի ։ Այս բառերը յօդ կրնան առնել, այն ատեն որ իրենց քովի գոյականները զեղչուին. երբ գիրքերու վրայ կը խօսինք, վրայի գիրքը ըսելու տեղ կրնանք ըսել վրայինը. նոյնպէս՝ դուրսինը, ներսինը ։

**366.** Բացառական հոլովը՝ երբ որոշեալ է՝ միշտ յօդ կ'առնէ, ի բաց առեալ ժամանակ ցոյց տուող բառերուն յատուկ բացառականները, որոնք ընդհանրապէս առանց յօդի կը գործածուին. Այն տարուընէ ի վեր ։ Ձմեռուընէ մնացած ։ Գալ շաբթուընէ առաջ ։

**367.** Գործիական հոլովը որոշիչ յօդ չ'առներ. Հեւալով խալեց ։ Ուրախութեամբ ընդունեցի ։ Այս զգացմամբ խօսիլը դիւրին չէ ։

**368.** Կան քանի մը բառեր, ինչպէս աշխարհ, երկինք, Լայլն, որոնք առանց յօդի կը գործածուին ընդհանուր իմաստով. Աշխարհ պիտի ծափահարէ ։ Երկինք ականատես պիտի ըլլայ ։

**369.** Երկու, երբ յօդ առնէ, կ'ըլլայ երկուք. Երկուքը մէկէն կը խօսէին ։

**370.** Մարդ բառը առանց յօդի կը գործածուի, երբ անորոշ դերանուն է. Մարդ չ'ուզեր իր կամքին հակառակ գործեր տեսնել ։ Յաջողութեան մէջ՝ պէտք չէ որ մարդ հպարտանայ ։

**371.** Կարգ մը բաղադրեալ բայերու մէջ, բային ընկերացած գոյականը միշտ անյօդ կը մնայ. Փախուստ տալ, հանդէս ընել, ձայն տալ, ձեռք տալ, պատիւ տալ,

տերեւ— արձակել, ոտք բաժնել, խելք դնել, ձեռք տալ, ձեռք ձգել, բերան առնել, եւայլն.

**372**. Հասարակ անուններու յոգնակին. — *Աշխարհաբարի մէջ գործածուած գրաբարի ձեւով յոգնակի ուղղականները, սեռականները եւ տրականները երբեք յօդ չեն առներ, նոյն իսկ յատկացուցիչէ ետքը.* Այն քաղաքացիք, որոնց վրայ խօսեցանք: Բողոքականաց ազգայինը: Տղոց դասերը: Կանանց իրաւունքը:

**373**. *Ընդհանուր կանոնին համեմատ հոլովուած բառերու մէջ, ամէն հոլով յօդ կ'առնէ բաց ի գործիականէն.* Անոնց սիրտերուն մէջ: Ձեր բարիքներուն զգածուած: Իր առաքինութիւնները յիշելով, եւայլն.

**374**. *Գոյականաբար գործածուած բոլոր բառերը յօդ կրնան առնել, իբր եզակի կամ իբր յոգնակի.*

*Ածական*. — Գեղեցիկը, Բարին, Ճշմարիտը բացարձակ չեն:

*Դերանուն*. — Պայրընի գործերուն մէջ՝ եսն է որ կը տիրապետէ:

*Բայ*. — Խմելը եւ ծխելը վնասակար ունակութիւններ են:

*Դերբայ*. — Ձիերը տեսնողը կը հաւնէր իրեն:

*Մակբայ*. — Այո՛ն այո՛ եւ ո՛չը ո՛չ:

*Շաղկապ*. — Բայցերը միշտ կասկած կու տան ինծի:

*Ձայնարկութիւն*. — Աւա՜ղն ու ո՜հը, երբ շատ կը գործածուին, մտքի տկարութիւն կը յայտնեն:

**375**. Յատուկ անուններու եզակին. — *Յատուկ անունները աւելի քիչ անգամ յօդ կ'առնեն քան թէ հասարակ անունները, որովհետեւ ինքնին արդէն բաւական որոշեալ են.* Մեկենաս կը քաջալերէր գրագէտները:

**376**. *Յատուկ անունները սովորաբար բնաւ յօդ չեն առներ ուղղականի եւ գործիականի մէջ.* Եզնիկ հայ

մատենագիր մըն է ։ Գերման գրականութիւնը Կէօթէով եւ Շիլլէրով կը պարծի ։

**377.** Յատուկ անունները միշտ յօդ կ'առնեն հայցականի մէջ երբ սեռի խնդիր են. Անգղիացիք գրաւեցին Թրանսվաալը ։

**378.** Սեռական, տրական, բացառական հոլովներուն մէջ յատուկ անունները շատ անգամ յօդ չեն առներ. Էսիպոսի զրուցներուն թիւը կը հասնի վեց հարիւրի ։ Ոչ մէկ նկարիչ կը նմանի Տիւքոռնէի, որ ոտքերով կը նկարէր թեւ չունենալուն համար ։ Լէոն Կամպէդդայէն ետքը, Ֆրանսա ոչ ոք ունեցաւ որ հաւասարէր անոր պերճախօսութեան ։

**379.** Սեռական, տրական, բացառական հոլովները միշտ յօդ կ'առնեն ընտանեկան խօսակցութեանց մէջ. Գէորգին տունը իմինէս մեծ է ։ Ասրինէին նայէ՛ ։ Ես Մարիկէն չեմ վախնար ։

**380.** Աստուած բառը, երբ նշանակէ տիեզերքի Արարիչը, յօդ չ'առներ երբեք, նոյն իսկ հայցականի մէջ. Աստուած պաշտել, Աստուծոյ կամքը, Աստուծմէ վախնալ, Աստուծոյ դիմել ։

**381.** Երբ յատուկ անունէ մը առաջ յատկացուցիչ մը կամ ածական մը գայ, գործիականէ զատ ամէն հոլովի մէջ յօդ կրնայ առնել. Իսրայէլի Աստուածը, խնկաբեր Արաբիան, ծաղկափթիթ Փլորան, իմաստուն Աթենացին, Սինայի Մովսէսն ։ Այս պարագաներուն մէջ՝ երբ յատուկ անունը գրաբարի ձեւով հոլովուած է, երբեք յօդ չ'առներ. Արմաշու Աստուածածնայ պատկերը ։ Մեծափարքամ Անգղիոյ տեսնակալին վիճակը ։

**382.** Ազգերու անունները ճիշդ հասարակ անուններու պէս յօդ կ'առնեն. Հայը, Յոյնէն, Ֆրանսացւոյն, եւայլն ։

**383.** Երբեմն յատուկ անունները իրենցմէ առա՛ջ

անքաժան ածական մը կ՚ունենան որ իր վրայ կ՚առնէ միշտ ՚ն յօդը. Մեծն Աղեքսանդրի սպարապետները, Սուրբն Սահակ։ Այս պարագային յատուկ անունը երբեք յօդ չ՚առներ, և չ՚ըստուիր. Մեծն Աղեքսանդրին սպարապետները, Սուրբն Սահակը։

**384**. Երբ յատուկ անուն մը իրմէ առջը անքաժան ածական մը ունի, այդ ածականը յօդ կ՚առնէ ամէն հոլովի մէջ գործիականէ զատ. Յոբ Երանելին, Յովսէփ Գեղեցիկին։

**385**. Յատուկ անուններու յոքնակին. — Այս յոքնակիները ճիշդ հասարակ անուններու յոքնակիներուն կը հետևին։ Երբ ընդհանուր կանոնին համեմատ կը հոլովուին յօդ կրնան առնել. Կոմսուհիներուն գործերը, Պուրպոններէն ետքը։ Իսկ երբ գրաբարի ձևով կը հոլովուին յօդ չեն առներ. Էրզրումցոց կողմէ։ Ակադեմականաց ժողով։ Ս. Հռիփսիմեանց վանք։

ԱՆՈՐՈՇ ՅՕԴ

**386**. Անորոշ յօդն է մը կամ մըն։

**387**. Մը կը գործածուի ամէն անունի առջև անորոշ իմաստ մը տալու համար անոր, ինչպէս. Գիրք մը տուր ինծի։ Կաղամար մը գնեցի։ Նոր գաղափար մը պէտք է յայտնել։

**388**. Մըն կը գործածուի էական բային սահմանական ներկային և անկատարին բոլոր դէմքերուն, և ալ շաղկապին առջև, ինչպէս. Ազնիւ անձ մըն էք դուք։ Անհարկու տետրակ մըն էր այն։ Մեր աշխատութեան վրայ ուրիշ մըն ալ աւելցաւ։ Մեծ անձնաւորութիւն մըն ալ կորսնցուցինք։

**389**. Ոտանաւորի մէջ մըին ըը կրնայ ջնջուիլ, երբ իրմէ առջի բառը ձայնաւորով սկսի.

Ձմեռ մ՚ալ անցաւ, ձմեռն մը զուարթ,
Տարի մ՚անըստեր մեր կեանքէն հանդարտ։

**390.** *Անորոշ յօդը ընդհանրապէս եզակի գոյականի քով կը գործածուի, բայց կրնայ դրուիլ նաեւ բացառապէս:*

1. *Յոգնակի գոյականի մը քով.* Ես հոն բաներ մը կը տեսնեմ: Անանկ խօսքեր մը ըսեցի:

2. *Մակբայաբար գործածուած ածականներու կամ գործիականներու քով.* Աղէկ մը հանգչեցի: Միջոց մը, խորհեցայ որ հաւանիմ: Այնպիսի շեշտով մը կը խօսի, որ կարծես կը հրամայէ: Այնչափ մեծ ոյժով մը հրեց զիս, որ վար պիտի իյնայի:

3. *Չափ կամ քանակութիւն ցոյց տուող մէկ քանի ածականներու քով.* Քիչ մը շունչ առնեմ: Շատ մը պտուղ գնեցի:

## ԴԻՄՈՐՈՇ ՅՕԴ

**391.** *Դիմորոշ յօդերն են ս, դ, ն կամ ը, եւ երեք տեսակ են.*

Ա. Անձնական դիմորոշ յօդ, *որ կը գործածուի իբր անձնական դերանուն.* Ես՝ ստորագրեալս, կամ *պարզապէս* ստորագրեալս, մեզ՝ Հայերուս, կամ Հայերուս. դուք՝ Պոլսեցիքդ, կամ Պոլսեցիքդ: *Իբր անձնական դիմորոշ յօդ կը գործածուին միայն ս եւ դ, բայց ոչ ը կամ ն:*

Բ. Ցուցական դիմորոշ յօդ, *որ կը գործածուի իբր ցուցական ածական.* Շաբթուս մէջ *(այսինքն՝* այս *շաբթու մէջ)*, աշխարհիս վրայ *(այսինքն՝* այս *աշխարհի վրայ)*, երկրիս ամենէն մեծ շէնքը, *եւայլն: Իբր ցուցական դիմորոշ յօդ կը գործածուի միայն ս, բայց ոչ դ, ն կամ ը:*

Գ. Ստացական դիմորոշ յօդ, *որ կը գործածուի իբր ստացական ածական.* Տունս, տունդ, տունը կամ այգին. *այսինքն՝* իմ տունս, քու տունդ, իր տունը կամ իր այգին:

**392.** Ի , ու , ոյ և եու չվերջացող եզակի կամ յոգնակի սեռականներն ու տրականները , ինչպէս գործիականը , որոնք որոշիչ յօդ չեն առներ , դիմորոշ յօդ կրնան առնել . Ձեռքովը գրած է (իր ձեռքով) , միջամտութեանը դիմեցին (իր միջամտութեան) :

**393.** Երբեմն դիմորոշ յօդը յատկացեալին վրայ կը դրուի փոխանակ յատկացուցիչին վրայ դրուելու . Ձեռքի գաւազանս (փոխանակ՝ ձեռքիս գաւազանը) : Երբայու ատենդ (փոխանակ՝ երբայուդ ատենը) :

**394.** Յատկացուցիչները յատկացեալին դիմորոշ կամ որոշիչ յօդը իրենց վրայ կ'առնեն երբ յատկացեալը զեղչուած է . այս պարագային՝ որոշիչ կամ դիմորոշ յօդէն անմիջապէս առաջ ն տառը կը մնայ . Ձեռքինս (փոխանակ ըսելու՝ ձեռքի մասնիս) , ձեռքինդ , ձեռքինը , Պետրոսինը , այս տղունը , մեր ձեռքինը , ձեր ձեռքինը , իրենց ձեռքինը :

**395.** Այս ձեւը ունեցող յատկացուցիչները ուղղական նկատուելով կրնան հոլովուիլ հետեւեալ ձեւով.

| | | | | |
|---|---|---|---|---|
| Ո. Հ. | Ձեռքինը | Ձեռքինները | Իրենց ձեռքինը | Իրենց ձեռքինները |
| Ս. Տ. | Ձեռքինին | Ձեռքիններուն | Իրենց ձեռքինին | Իրենց ձեռքիններուն |
| Բ. | Ձեռքինէն | Ձեռքիններէն | Իրենց ձեռքինէն | Իրենց ձեռքիններէն |
| Գ. | Ձեռքինովը | Ձեռքիններովը | Իրենց ձեռքինով | Իրենց ձեռքիններով |

Այսպէս կը հոլովուի . ձեռքինս , ձեռքիններս , մեր ձեռքինը , մեր ձեռքինները , ձեռքինդ , ձեռքիններդ , ձեր ձեռքինը , ձեր ձեռքինները :

**396.** Այս ձեւերուն գործածութիւնը շատ անգամ նախադասութիւնը կը ճապաղէ , ուստի , այս պարագային , լաւագոյն է բառերը կրկնել : Փոխանակ ըսելու . Ազատականներուն շունը մշակներունին մեծ է , լաւագոյն է ըսել . Ազատականներուն շունը մշակներուն շունէն մեծ է :

## ՀՐԱՀԱՆԳՆԵՐ

---

### ՄԵՐ ԱՐԴԻ ԲԱՆԱՍՏԵՂԾՆԵՐԸ

*Հանճարը ոչ ազգութիւն ունի և ոչ կրօնք, և իրաւ-բեւ ոսկի իր արժէքը կը գտնէ ամէն տեղ։ Հանճարի ծնունդ եղող բանաստեղծութիւն մը լաւ ընդունելութիւն կը գտնէ Անգլիայէն, թէպէտ անոր հեղինակը Սլաւ ըլլայ։ Իսկ մենք հանճարահանդէսի մը մէջ ցուցադրելու համար քանի՞ քերթուած ունինք։ Մենք դժբախտաբար ոսկի կ'անուանենք ինչ որ պղինձ է, և որ սակայն ոսկիի պէս կը հնչէ ժողովրդեան ականջներուն։ Բանաստեղծութիւնը, ոտանաւոր թէ արձակ, կամ ընտիր ըլլալու է և կամ բնաւ ըլլալու չէ։ Կը ճանչնամ երիտասարդներ, որոնք երբ մարդ մը գովել ուզեն, և դիպուածը ռաֆինի բառը դնէ տողին վերջը, յիշեալ մարդը գինետունէ գինետուն կը պտտցնեն և մեծ առաքինի գինեմոլ մը կը ներկայացնեն։ Ինչո՞ւ։ — Վասն զի ոտանաւորը նոյնպայմանք ընելու համար՝ ռաֆինիի մը գինիէն աւելի ինչ բառ կրնայ յարմարիլ։ Բայց մարդը կեանքին մէջ գինի դրած չէ բերանը։ որո՞ւ հոգ. առանց զրպարտելու ոտանաւոր դրելը դիւրի՞ն բան է։ Այսչափ չէ. սպանութեան ալ կը դիմեն. բառերուն գլխէն, մէջքէն կամ պոչէն կը կտրեն. ըսելը տեղի կը փոխուի, Ռուհը՝ երբ ոտանաւորի մէջ ներկայանալ ուզէ, գլուխը կը բանայ, և ռուհը կը ներկայանայ հոն։ Աւելին կայ. երբ արեւուն ծագումը ծանուցանել ուզեն, ամէնը մէկէն վարդամատն Արշալոյսին կը դիմեն. ո՞ր մէկուն երթայ խեղճը, եթէ հազար մատ ալ ունենար՝ չէր կրնար ամէնքը գոհ ընել։ Փայլկիկ, շուշան, ռինգ, մարգագետին, սոխակ իրարու ձեռքէ կը յափշտակուին։ Երբ բանաստեղծութեան գիրք մը կարդալ ուզես՝ կը տեսնես որ թուղթերը իրենք իրենցմէ կը դառնան. վասն զի իւրաքանչիւր էջին մէջ զեփիւռը կը փչէ. չմոռնանք ըսել որ եթէ առանց հովանոցի զանոնք կարդալու ըլլաս, Եգիպտացի մը կը դառնաս,*

այնչափ կ'այրիս արեւէն ։ Փա՛ռք տուր Աստուծոյ եթէ հոն եղած սիւգէն մնալով չհիւանդանաս ։ Դեռ քանի մը շաբաթ առաջ մէկը Մասիսի մէջ ջրհեղեղ մը նկարագրած էր, ուր մազ մնացեր էր որ Նոյ նահապետն ալ խեղդուէր ։

ՅԱԿՈԲ ՊԱՐՈՆԵԱՆ (1)

**110.** Զրուցագրել այս հատուածը, և դնել կէտադրութեան նշանները։

**111.** Հետեւեալ խօսքերը ուղղել փակագծի մէջ նշանակուած հոլովներուն և յօդի օրէնքներուն համեմատ.

*Ինքնահաւանութիւն (ուղ.) տգիտութիւն (բաց.) կը ծնի։ — Բազրիք (ուղ.) երեք գլխաւոր մաս (բաց.) կը բաղկանայ. խոյակ (բաց.), բուն (բաց.), պատուանդան (բաց.)։ — Հնդիկ կին (յք. ուղ.) Նարգելակ (սեռ.) պատեան (յոգ. սեռ.) բնաթել (բցռ.) շինուած ծոպ (յք. հյց.) կը կրեն իրենց զգեստ (յոգ. սեռ.) վրայ։ — Մարդ (սեռ.) արժանիք (ուղ.) իր սիրտ (սեռ.) ու միտք (սեռ.) յատկութիւն (յք. բցռ.) կը չափուի։ — Լեռ (յք. սեռ.) գագաթ (սեռ.) վրայ օդ (եզ. ուղ.) միշտ մաքուր է։ — Սպարտացի (յք. ուղ.) իրենց նորածին մանուկ (յք. հյց.) Եւրոտաս (սեռ.) մէջ կը լուային։ — Արիոսթօ (սեռ.) Օրլանտօ Ֆիւրիօզօ (ուղ.) դիւցազներգական ամէնէն նշանաւոր քերթուած (յոգ. բցռ.) մէկն է։ — Տը Լէբէ աբբայ (ուղ.) հաստատեց խուլ-համր (յք. սեռ.) դպրոց (յք. հյց.)։ — Բէռէթ (ուղ.) շուտ շուտ կը քալէր գլուխ (հյց.) առած կաթ (սեռ.) աման (հյց.)։ — Անօթութիւն (ուղ.) աշխատասէր մարդ (սեռ.) դուռ (բցռ.) կը նայի, բայց չի կրնար ներս մտնել։*

---

(1) Յակոբ Պարոնեան, Հռչակաւոր Հայ երգիծաբան, որ մեծ յաջողութեամբ խմբագրած է Եփրատ, Մեղու, Թատրոն, Ծիծաղ, Խիկար թերթերը. Հրատարակած է Ազգային Ջոջեր, Մեծապատիւ Մուրացկաններ, և գրած է քանի մը թատերախաղեր. Ծնած է 1842ին և մեռած 1891ին։

## ԿՈՏՐԱԾ ԱՆՕԹԸ

*Մահամերձիկ աղաւնիին թաղարն այն*
*Հովահարի հարուածով մը ճաթեցաւ.*
*Հարուածն հազիւ դըպաւ անոր ու անցաւ*
*Եւ զայն մատնող չըլըսեցինք ոչ մէկ ձայն։*

*Բայց այդ թեթեւ ճանկըռտուքը ամէն օր*
*Խածատելով ճերմակ բիւրեղն անխընայ,*
*Ընթացքով մը անտես՝ սակայն աներկբայ,*
*Կամաց կամաց կը բոլորէր շուրջն անոր։*

*Իր զով ջուրը կաթիլ կաթիլ տուաւ խոյս*
*Ըսպառեցաւ ծաղիկներուն հիւթն ու հոյզ.*
*Ու դեռ ոչ ոք զայն վըրնասուած կը կարծէ.*
*Այդ անօթին մի՛ դըպչիք դուք. կոտրած է։*

*Այսպէս ահա մեզմէ սիրուած ձեռք մ՚ըստէպ*
*Թեթեւ հըպմամբ կու տայ սըրտին երաշխէպ,*
*Եւ ինքն իրեն կը ճեղքըւի սիրտն իսկոյն*
*Կը թառամի անոյշ ծաղիկն իր սիրոյն։*

*Ուրիշներուն աչքերին յաւէտ անվըթար՝*
*Կը զգայ աճիլն ու ցաւիլը ծածկաբար*
*Բացուած վէրքին, վէրքին խորունկ ու նըրբին,*
*Ո՛հ, կոտրած է. մի՛, մի՛ դըպչիք անօթին։*

**ՍԻՒԼԼԻ ՊՐԻՒՏՈՄ**

**112.** Գոց սորվիլ և արտասանել այս ոտանաւորը։

**113.** Արձակի վերածել այս ոտանաւորը։

**114.** Նշանակել այս ոտանաւորին մէջ գտնուած *որոշիչ, անորոշ* և *դիմորոշ յօդերը*։

**115. Մէյ մէկ անօրոշ յօդ դնել հետեւեալ խօսքերուն մէջ կէտերուն տեղ.**

*Աշխատող մարդու ... ժամանակը միշտ կարճ կ'երեւայ։ — Սրտի տէր անձ ... կ'ընտրէ հիւղակ ... պարկեշտ կեանքի ... հետ. անսիրտ մարդ ... ալ կը փափաքի ունենալ ապարանք ... փոյթ չէ թէ հոն իրեն հետ ապրին շատ մոլութիւններ։ — Ի՞նչ երկայն կ'երեւայ գիշերը քուն չունեցող անձի ... համար։ — Սոկրատ կ'ըսէր. Թող ունենամ տնակ ... շատ ... ճշմարիտ բարեկամներով լեցուն։ — Այնպիսի կերպով ... երեսս նայեցաւ որ, վախցայ։ — Կը նախընտրեմ քիչ ... պակաս ուսում և քիչ ... աւելի համեստութիւն։ — Շատ անգամ գեղեցկութիւնը փորձանք ... է անխելք կանանց քով։ — Ներեցէք որ կարծիք ... ալ ես յայտնեմ։ — Ճշմարիտ քոյր ... եմ ես իրեն համար։ — Մայր ... եղաք դուք ինծի։ — Յաւակնոտ աղջիկ ... չեմ կրնար սիրել, եթէ նոյն իսկ իմս ըլլայ։ — Խնամքով պատրաստուած գործ ... հաճոյք կը պատճառէ ուղղամիտ մարդոց, և նախանձ կ'ազդէ նենգամիտներուն։*



# ՅՕԴԻՆ ԼՈՒԾՈՒՄԸ

Իր տգիտութեամբ համեստ մարդ մը իր գիտութեամբ հպարտ մարդէն աղէկ է։ — Քսաներորդ դարուս շրջանը 2000ին վերջը պիտի աւարտի։ — Այս թաշկինակը դուն ա՛ռ, գրպանինդ ինծի՛ տուր։ — Մենք՝ աշակերտներս՝ որքան ալ յառաջադէմ ըլլանք, դեռ շատ անփորձ ենք։ — Քու միտքդ կրնայ զգացմանցս խորը թափանցել, բայց չի կրնար երբեք զանոնք խախտել։ — Դուք՝ պզտիկներդ՝ պէտք է աւելի մտիկ ընէք քան թէ խօսիք։ — Փոխանակ գլխարկնիս զարդարելու, գլուխնիս զարդարենք։ — Դիմացի նստարանը քուկդ է, քովինդ ալ իմս է։ — Տեղւոյս բնակիչները շատ ընթերցասէր են։ — Կեանքերնուդ մէջ մի՛ մոռնաք թէ ստախօս մարդը կրնայ շատ մը խարդախ գործեր ընել։ — Կեանքը պատրանքներու շարք մըն է։

| | |
|---|---|
| Մարդ մը | մը անորոշ յօդ մարդուն· |
| մարդէն | ն որոշիչ յօդ։ |
| դարուս | ս ցուցական դիմորոշ յօդ։ |
| 2000ին | ն որոշիչ յօդ։ |
| վերջը | ը որոշիչ յօդ։ |
| թաշկինակը | ը որոշիչ յօդ։ |
| գրպանինդ | ն որոշիչ յօդ. դ ստաց. դիմորոշ յօդ։ |
| աշակերտներս | ս անձնական դիմորոշ յօդ։ |
| միտքդ | դ ստացական դիմորոշ յօդ։ |
| զգացմանցս | ս ստացական դիմորոշ յօդ։ |
| խորը | ը որոշիչ յօդ։ |
| պզտիկներդ | դ անձնական դիմորոշ յօդ |
| գլխարկնիս | ս ստացական դիմորոշ յօդ։ |
| գլուխնիս | ս ստացական դիմորոշ յօդ։ |

| | | |
|---|---|---|
| նստարանը | ը | որոշիչ յօդ։ |
| քուկդ | դ | ստացական դիմորոշ յօդ։ |
| քովինդ | ն | որոշիչ յօդ. դ ստաց. դիմորոշ յօդ. |
| խմս | ս | ստացական դիմորոշ յօդ։ |
| Տեղւոյս | ս | ցուցական դիմորոշ յօդ։ |
| կեանքերնուդ | դ | ստացական դիմորոշ յօդ։ |
| մարդը | ը | որոշիչ յօդ. |
| շատ մը | մը | անորոշ յօդ շատին։ |
| կեանքը | ը | որոշիչ յօդ։ |
| շարք մըն | մըն | անորոշ յօդ շարքին։ |

## ՀՐԱՀԱՆԳՆԵՐ

### ՄԵՂՈՒՆԵՐՈՒՆ ՊԱՏԵՐԱԶՄԸ

*Երբեմն, ամառուան աղուոր օրերուն, մեղուներու շողշողուն գումարտակներ զինուորական կարգով դուրս կ՚ելլեն բաց օդին մէջ մարտնչելու համար։ Իրենց շարժումէն առաջ կուգայ ռազմային շռինդ մը, որ շեփորին հնչման պէս կ՚ոգեւորէ մարտիկը, և կը վարէ զայն պայքարի։ Մեղուները սարսռալով կու գան տեղ մը կը հաւաքուին, և անոնցմէ իւրաքանչիւրը իր փողփողուն զէնուզարդով սպառազէն՝ երեւան կու գայ, սրելով իր արիւնռուշտ ակռան ու խայթոցը։ Տեսնելու արժանի է թէ ի՛նչ վարպետութեամբ կը գործածեն իրենց զէնքերը, ու շեփորին սարսափելի ձայնովը ի՛նչպէս կը շարժեն թեւերնին ու սրունքնին։ Մեղուները իրենց դշխային շուրջը հաւաքուած կը կենան, և ա՛լ անոր տաղաւարէն չեն բաժնուիր, բարձրաձայն կանչելով միւս երամները, և գրգռելով զանոնք մարտնչելու։*

*Երբ դաշտը դալարիքով ծածկուած է, մեղուները իրենց ամրոցներէն դուրս կ՚ելլեն բաց օդին մէջ ոգորելու համար. նախ կը լսուի զէնքերու շկահիւնը, որ իրենց թեւիկներուն բախման շշուկին կը խառնուի. ստուերոտ հովիտը կը թնդայ անոնց յարուցած ժխորէն,*

*և մանրիկներուն համախմբումը մեծ ամբոխ մը կը ձեւացնէ։ Անուշի՜, զարհուրելի՜ տեսարան։ Օդին բարձունքէն այնքան դիակներ կ'անձրեւեն գետնի վրայ, որքան խողկաղիններ կը թափէ սաստկաշունչ քամին կաղնիէն վար։ Թօնուտ անձրեւի պէս կը տեղան անոնք կամ սարսափելի կարկուտի նման։ Դշխոյները ծիածանին բոլոր գոյներով փողփողուն կը ներկայանան պատերազմիկներուն մէջտեղը, մեծ կորով մը ցոյց տալով իրենց փոքրիկ մարմնոյն մէջ։ Տիրելու համար ծնած՝ և փառքի վարժուած՝ չեն ուզեր տեղի տալ, ոչ ալ նահանջ միտքերնէն անցընել, մինչև որ հզօրագոյն կողմէն յաղթահարուած՝ մէկ կամ միւս կողմը չփախչի դիտապաստ։*

ՌՈՒՉԷԼԼԱՅԻ (¹)

**116.** Լուծել այս հատուածին անուններն ու յօդերը։

---

## ԿԵԱՆՔԻ ՍԱՅԼԱԿԸ

*Մեր սայլակը սըրընթաց*
*Կը գըլտորի սաստկավար.*
*Ժամանակն է ծերունի*
*Անոր անխոնջ կառավար։*

*Առտուն կանուխ երբ կ'ելլենք*
*«Այդ սայլակը գըրաւիչ*
*Քըշէ», կ'ըսենք խենդի պէս*
*Անգոսնելով ամէն ինչ։*

---

(¹) Ճիովաննի Ռուչէլլայի իտալացի բանաստեղծը Ֆլօրանսի մէջ ծնած է 1475ին և մեռած 1525ին։ Ունի ողբերգութիւններ և քերթուածներ։

Բայց կէսօր է. յոգնած ենք.
Ճամբաներէն գլնցուած,
Եւ վախնալով փոսերէն
Կ'ըսենք. «Ցիմմր, մլ կամաց։»

Ան կը քըշէ, ինչպէս միշտ.
Մենք վարժուած այդ գլնցման
Իրիկուան դէմ կը նիրհենք
Մինչև հասնինք կայարան։

Թարգմանութիւն ՓՈՒՇՔԻՆ (1)

ԼԵՒՈՆ ՍԵՂԲՈՍԵԱՆԻ (2)

117. Գոց սորվիլ, և բարձրաձայն արտասանել այս ոտանաւորը։

---

(1) Ռուս բանաստեղծ, որ ծնած է 1799ին և մեռած 1837ին։

(2) Լեւոն Սեղբոսեան, ժամանակակից Հայ գրագէտ, գրած է քերթուածներ և վէպեր։

# ԱԾԱԿԱՆ

## ԿԱՆՈՆՆԵՐ

**397.** Ածականը բառ մըն է, որ գոյականի մը հետ կը գործածուի՝ անոր մէկ հանգամանքը ցոյց տալու կամ զայն որոշելու համար։

**398.** Ածականները ոչ թիւ ունին և ոչ հոլով, և յօդ չեն առներ. Փոքրիկ գրիչը, փոքրիկ գրչին, փոքրիկ գրչէն, փոքրիկ գրչով, փոքրիկ գրիչները, փոքրիկ գրիչներուն, փոքրիկ գրիչներէն, փոքրիկ գրիչներով։

**399.** Ածականները երբ առանձին գործածուին, այն ատեն գոյականի տեղ կ'անցնին, և անոր բոլոր փոփոխութիւնները կը կրեն, ինչպէս. բարին, բարիէն, բարիները, ևայլն։

**400.** Հինգ տեսակ ածական կայ. Որակական, ցուցական, ստացական, թուական, անորոշ։

## ՈՐԱԿԱԿԱՆ ԱԾԱԿԱՆ

**401.** Որակական ածականը գոյականի մը որպիսութիւնը կը ցուցնէ. Առաքինի մարդ, աշխատասէր տղայ։

**402.** Որակական ածականը երեք աստիճան ունի. Դրական, բաղդատական, գերադրական։

**403.** Դրական աստիճանը՝ առանց բաղդատութեան՝ առարկային ինչպէս ըլլալը կը ցուցնէ, ինչպէս. բարձր, փոքր։

**404.** Բաղդատական աստիճանը երկու առարկաներ իրարու հետ համեմատելով՝ ցոյց կու տայ մէկուն առաւելութիւնը, հաւասարութիւնը կամ նուազութիւնը։

**405**. Բաղդատականը երեք է.

1. Երբ «առաւելութիւն» նշանակէ, երկու ձեւով կ'ըլլայ. Ա. գոյն յետադաս մասնիկով. բարձրագոյն, փոքրագոյն: Բ. աւելի մակբայով. աւելի մեծ, աւելի փոքր:

2. Երբ «հաւասարութիւն» նշանակէ, նոյնքան, նոյնչափ կամ նոյն իմաստը ունեցող մակբայներով, կամ չափ նախադրութեամբ կը կազմուի. Այս քարը նոյնչափ մեծ է որչափ այդ քարը: Այս տունը այդ տան չափ փոքր է:

3. Երբ «նուազութիւն» նշանակէ, նուազ մակբայով կը կազմուի. նուազ մեծ, նուազ փոքր:

**406**. Առաւելութիւն կամ նուազութիւն ցոյց տուող բաղդատականները կը կազմուին նաեւ պարզապէս բաղդատական խնդիր առնելով. իմէն գեղեցիկ, քրոջմէդ ազնիւ:

**407**. Երբ բաղդատութեան առարկան ածական մը կամ մակբայ մըն է, աւելի քան կամ աւելի քան թէ կը գործածուի, ինչպէս. Այս գիրքը աւելի զբօսեցուցիչ է քան թէ օգտակար. իր հասակը աւելի կարճ կ'ըլլայ քան երկար: Այս պարագային չ'ըլլար երբեք՝ օգտակարէ աւելի զբօսեցուցիչ. երկայնէ աւելի կարճ:

**408**. Առաւելութիւն նշանակող բաղդատական գոյն մասնիկը երբեք չի գործածուիր բուն աշխարհաբար ածականներու վրայ, և չ'ըլլար երբեք. աղէկագոյն, աղուորագոյն, գէշագոյն, պզտիկագոյն, պաղագոյն, խենդագոյն, եւայլն:

**409**. Ընտիր ածականին բաղդատականը կ'ըլլայ աւելի ընտիր կամ ընտրելագոյն:

**410**. Գերադրական աստիճանը ցոյց կու տայ թէ առարկայ մը իր բոլոր նմաններէն գերազանց կամ ստորին է: Գերադրականը երեք ձեւ ունի.

1. Ամէն բառով բաղդատութեամբ. ***ամենածանր***, ***ամենաբարձր***:

2. Ամէն բառին բացառականով. ***ամէնէն ծանր***, ***ամէնէն բարձր***:

3. Ածականը կրկնելով. ***աղէկին աղէկը***, ***գէշին գէշը***:

**411**. Բուն աշխարհաբար ածականները պէտք չէ ամէն բառով բաղդել. լաւագոյն է ըսել ***ամենէն պզտիկ*** քան թէ ***ամենապզտիկ***, ***ամենէն գէշ*** քան ***ամենագէշ***, ***ամենէն պաղ*** քան ***ամենապաղ***, ևայլն:

**412**. Ձայնաւորով սկսող ածականները ամէն բառին հետ բաղդութեամբ գերադրական ընելու չէ, պէտք չէ ըսել. ***ամենաանոյշ***, ***ամենաազնիւ***, ***ամենաառոյգ***:

**413**. Ածականին նշանակութիւնը աստիճան մը կ'աւելնայ կամ կը պակսի ***կեկ*** մասնիկով. ***մանրկեկ***, ***ծանրկեկ***, ***խոշորկեկ***, ***շատկեկ***, ***լայնկեկ***, ևայլն: ***Մեծ*** բառին առջև ***կեկ***՝ ***կուկ***ի կը փոխուի. ***մեծկուկ***:

**414**. ՈՐԱԿԱԿԱՆ ԱԾԱԿԱՆՆԵՐՈՒՆ ԽՆԴԻՐԸ.— Դրական ածականներուն շատերը ընդհանրապէս խնդիր չեն առներ, ինչպէս. ***ճերմակ***, ***անոյշ***, ևայլն:

**415**. Կան սակայն դրական ածականներ որոնք զանազան հոլով խնդիր կ'ուզեն:

**416**. Ուղղական հոլով խնդիր կ'առնեն այն ածականները որոնք չափ կամ աստիճան ցոյց կու տան, ինչպէս. ***Հինգ կանգուն բարձր***: ***Քսան դրամ ծանր***: ***Երկու մատ երկայն***: ***Հինգ կանգուն***, ***քսան դրամ***, ***երկու մատ*** ուղղական խնդիր են ***բարձր***, ***ծանր***, ***երկայն*** ածականներուն:

**417**. Սեռական հոլով խնդիր կ'առնեն ***իչ*** վերջաւորող ածականները. ***Ցաւերու ամոքիչ***, ***աշխարհի փրկիչ***:

**418**. Տրական հոլով խնդիր կ'առնեն ***նման***, ***կարօտ***, ***արժանի***, ***ծարաւ***, ***անծանօթ***, ***օգտակար***, ***վնասակար***,

նպաստաւոր, հակառակ, կարող, տեղեակ, հմուտ, եւայլն, ինչպէս նաեւ ելի վերջաւորող բոլոր ածականները. Մարդկութեան օգտակար, տեսնելու արժանի, ձեզի նպաստաւոր, ամէն բանի հմուտ, ընտանիքին սիրելի, հացի կարօտ, եւայլն:

**419.** Բացառականի հոլով խնդիր կ'առնեն տարբեր, զերծ, հեռու, անտես, անյոյս, եւայլն. Վտանգէ զերծ, պատմածէս տարբեր, աչքէ հեռու, ապրուստէ զուրկ:

**420.** Գործիականի հոլով խնդիր կ'առնեն լի, լեցուն, զեղուն, նշանաւոր, եւայլն. Ջուրով լեցուն, գիտութեամբ նշանաւոր:

**421.** Եալ, ուած կամ ած վերջացող դերբայ ածականներէն ոմանք տրական խնդիր կ'առնեն, ոմանք բացառական եւ ոմանք գործիական. Քարերու զարնուած, յոյսէ զրկուած, ընտանիքէն լքեալ, երեսէ ինկած, հոգերով բեռնաւորեալ, քրտինքով թրջուած, եւայլն:

**422.** Ածականները խնդիր կ'առնեն նաեւ դիմորոշ յօդով գոյական մը կամ գոյականաբար գործածուած բառ մը, ինչպէս. Թեւը փրթած թռչուն մը: Ըսելը դիւրին, ընելը դժուար խօսք մը: Հոգին ելած կին մը: Խելքը գլխէն գացած անձ մը:

**423.** Բաղդատական ածականները միշտ բացառական հոլով խնդիր կ'առնեն, երբ առաւելութիւն կամ նուազութիւն կը յայտնեն. Ձեզմէ աւելի գեղեցիկ: Բոլորէն նուազ ազնիւ:

**424.** Գերադրական ածականները երբեք խնդիր չեն առներ:

**425.** ՈՐԱԿԱԿԱՆ ԱԾԱԿԱՆԻՆ ԳՈՐԾԱԾՈՒԹԻՒՆԸ. —Որակական ածականը գոյականէն առաջ կը դրուի ընդհանրապէս, սակայն կրնայ ետքը դրուիլ հետեւեալ պարագաներուն մէջ.

1. Երբ խնդիր ունի, կամ քանի մը բառով բաղադրեալ է. Տղայ մը տեսանք ապրուստէ զուրկ եւ պաշտպա-

նուրբեան կտոր : Միջոցներ ձեռք առի ճեղքի նպաստաւոր, Մանկիկ մը տեսայ լոյսի պէս աղուոր : Կին մը հինգ զաւկի տէր :

2. Բանաստեղծական արձակի մէջ ոճի վայելչութեան և ներդաշնակութեան համար. Խեղճ տղեկ մըն երեսդժգոյն, տրտում՝ մարած նայուածքով : Ծաղիկ մը չքնաղ եւ փողփողուն :

3. Ոտանաւորի մէջ յանգի և վանկի յարմարութեան համար.

Ու գիտութեանց մէջ օրէ օր
Կը զարգանար մանկիկն աղուոր :

**426.** Կան կարգ մը ածականներ որոնք իբր գոյական ալ կը գործածուին. Ամառուան տաքը : Գիշերուան ցուրտը :

**427.** Երբ ածական մը առանձին մնայ, այսինքն առանց գոյականի, գոյականաբար կը գործածուի և կրնայ յօդ առնել, յոքնակի ըլլալ և հոլովուիլ. Կանանչը դեղինին եւ կապոյտին բաղադրութիւնն է : Չարերը երգ չունին :

**428.** Երբ երկու ածական իրարու վրայ իյնան, վերջինը իբրև գոյական կը գործածուի. Երկու վերջինները : Վերջին երկուքը : Կարծեցեալ գիտունը : Գիտուն կարծեցեալը :

**429.** Երբ ածական մը սեռական գոյականի մը առջև դրուի, կը նշանակէ նոյն գոյականին այս կամ այն տեսակը. Ջուրին տաքը չի խմուիր : Մարգրիտին խոշորը յարգի է : Սոխին անոյշը կ'ըլլա՞յ :

**430.** Ածականները երբ բայի մը վրայ դրուին մակբայ կ'ըլլան. Նոր սկսաւ կարդալ : Աղուոր կը խօսի : Սխալ կ'արտասանէ :

**431.** Երբ ածական մը կրկնուի գոյականի մը քով, ստուգութեան գաղափար կու տայ. Սուր սուր խօսքեր : Մեծ մեծ խոստումներ :

ՀՐԱՀԱՆԳՆԵՐ

---

## ՔԵԱԹԻՊԵԱՆ ԵՒ ՍՊԱՐԴԱԼԵԱՆ

Երկուքն ալ նոյն տարիին մէջ անակնկալ կերպով մեռնեցան։ Նոյն տարիին և գրեթէ նոյն տարիքին մէջ զրաւեցան երկուքն ալ, Յովհաննէս Քեաթիպեան և Յակոբ Սպարդալեան։ Ամէնուն համար տքնիլ և ամէնուն չրթունքով օրհնուիլ՝ այս եղաւ ճակատագիրը, այս էր կոչումը այն երկու չքնաղ անձերուն ալ։ Գթութիւնը, երկնային գթութիւնն էր անոնց տիրական և անբաժան առաքինութիւնը. որբերու և կարօտեալներու և առհասարակ տառապեալներու համար արտասուքով լեցուն էին անոնց աչքերը, և ոսկիներով լեցուն՝ անոնց քսակները. բայց մանաւանդ մարմնոյ ցաւերով տառապեալներու՝ կրնանք ըսել՝ նուիրուած էին այդ երկու բարեգութ ազգայիններուն կեանքը։ — Յակոբ Սպարդալեան կարծես հարստութիւն դիզեց միայն՝ հոյակապ հիւանդանոց մը կառուցանելու համար, և Յովհաննէս Քեաթիպեան կարծես գիտութիւն համբարեց միայն, — գթութեան աղբիւրը արդէն ունենալով իր մէջ, — արծաթապաշտ հիւանդները ապաքինելու, և իր ճարտարութեան արդար վարձքը անարծաթ հիւանդներու ոգեպահիկին յատկացնելու համար։

ԵՂԻԱ ՏԷՄԻՐՃԻՊԱՇԵԱՆ (1)

118. Այս հատուածին մէջ գտնուած ածականներուն տեղ ուրիշ հոմանիշ ածականներ, և գոյականներուն ալ առջև մէկ մէկ յարմար ածական դնել։

119. Հետևեալ բառերուն առջև երեքական յարմար ածական դնել.

---

(1) Եղիա Տէմիրճիպաշեան, ծանօթ հրապարակագիր և գրագէտ, որ հրատարակած է այլ և այլ երկասիրութիւններ բազմազան նիւթերու վրայ։

*Գիր, փոթորիկ, գարուն, աշուն, Թուղթ, գինի, շղթայ, անդունդ, պատմութիւն, ջուր, բարեկամ, Թշնամի, ուսուցիչ, հեղեղատ, փիղ, անտառ, ժպիտ, Թիթեռնիկ, ծաղիկ, պտուղ, բանակ, հարուած, ծիծեռնակ, դէմք, օձ, քիթ, պարտէզ, կոհակ, սեղան, ժայռ, ծով։*

**120.** **Երեքական գոյական յարմարցնել հետեւեալ ածականներուն։**

*Տկար, տափակ, անաչառ, ողորմելի, ահարկու, միամիտ, հանճարեղ, որոշ, անձնուէր, կեռ, համազամ, արագ, գրահաշուական, ցրտատարուր, անխոնջ, երկրաչափական, պատմական, անբասիր, անհուն։*

**121.** **Յաջորդ նախադասութեանց մէջ գտնուած գիծերուն տեղ դնել հետեւեալ ածականներէն մէկը։**

*Ուղղամիտ, ծաղրելի, փայլուն, Թեթեւ, երկայն, անձնուէր, կարծր, միհազգին, սեւ, չոր, նոր, շաղփաղփ, ծանր, արագ, տառապելական, նենգամիտ, խնամոտ։*

*Ծանրաչափը կը բարձրանայ երբ օդը — ըլլայ։ Փիղը հակառակ իր — եւ — մարմնոյն — եւ — քալուածք մը ունի։ Համբերութիւնը — բարեկամ մըն է, որ կ'օգնէ մեզի մեր վիշտերուն ծանրութիւնը կրելու։ Ջայլամին հաւկիթը — կճեպ մը ունի, — ձեւով ու փղոսկրի պէս —։ Ափրիկէն — աշխարհք կը կոչուի, եւ Ամերիկան — աշխարհք։ Յունաստանի պատմութեան մէջ . . . գրոյցներ շատ կան։ Անծեղը — Թռչուն մըն է։ Փարծենկոտ մարդը — կ'ըլլայ։ — բարեկամը — Թշնամիէն աւելի վտանգաւոր է։ Պէտք է — ըլլալ ամէնէն գոյզն բաներու մէջ իսկ։*

**122.** **Մէյ մէկ խնդիր տալ հետեւեալ ածականներուն վերոյիշեալ օրէնքներուն համեմատ։**

*Անարժան, հռչակաւոր, փողփողուն, կարճ, լայն, ազատ, ծանր, գիտակ, անկարող, մօտ, վեր, գերազանց, ստորին, զարդարուն, ալցուն, հզօր, տկար, յափրացած, զզուած, ծանրացած, բեռնաւորեալ, նուազ, շահագրգիռ, աւելի հարուստ, աղուոր, պակաս չար, սփոփիչ, երգիչ, յուզեալ, պարփակեալ, շրջապատեալ, ապշած, մարած, վիրաւոր, անթափանց, անտարբեր, վշտահար, զարնուած, անկնկառոյց, խոնարհ, ծարաւ, փափաքող, հետեւող, ծառայող, աղքատ, անհասկանալի, համբերող, ծիծաղելի, անհամբոյր, անտանելի, քաղցր, հակակիր, յարգելի, յուսահատ, գեղազարդ, պանծալի, կարեկից։*

## ՆԵՂՈՍ ԳԵՏԸ ԱՄԱՌՈՒԱՆ ՄԷՋ

*Միջօրէին արեւը իր կապարէ սլաքները կ՚արձա-
կէր . գետափին մոխրոտ տիղմերէն բոցափայլ ցոլումներ
կը ցայտէին . բիրտ լոյս մը՝ իր հոծութեամբ շատ
փայլուն և շատ փոշելից՝ բոցաճաճանչ հեղեղներ կ՚անձ-
րեւէր . երկինքին կապոյտը տաքութենէն կը ճերմկէր ,
ինչպէս մետաղը փուռին մէջ . հրաշէկ մշուշ մը կիզա-
խանձ հորիզոնին վրայ կը մխար ։ Բնաւ ամպ մը չէր
անցներ յաւիտենականութեան պէս անփոփոխ ու տըր-
տում այդ երկինքին վրայէն ։ Նեղոսի ջուրը կը նիրհէր
գոգցես իր ընթացքին մէջ , և հալած անագէ սփռոցի
մը պէս կը փռուէր . Բնաւ շունչ մը չէր խորշոմեր անոր
մակերեւոյթը , և իրենց ծղօտներուն վրայ չէր կքեր
բաժակները լուտոսներուն , այնքան կարկամ որ քան-
դակուած կ՚երեւային . հազիւ հեռուէն հեռու ձուկի մը
խայտանքը արծաթ թեփեր կը վէտվէտէր հոն , և նա-
ւակներուն թեւճակները կարծես դժուարաւ կը ճեղքէին
այդ սառ կտրած ջուրին մրագոյն պարուտակը ։ Ափերը
ամայի էին . անհուն հանդիսաւոր լռութիւն մը կը ծան-
րանար այդ հողին վրայ , որ մեծ գերեզման մը եղաւ
յաւէտ , և որուն կենդանի բնակիչները կարծես մեռել-
ները զմռսելէ ուրիշ բան գործ չունեցան ։ Տրտմութիւն
ամուլ , չեչաքարի պէս չոր , անթախիծ , անդադրում ,
տրտմութիւն մշտնջենապէս անապատին նայելէ ձանձ-
րացած սփինքսի , որ չի կրնար դառնիլ կրանիտէ պա-
տուանդանէն , ուր կը սրէ իր ժանիքները քանի դարէ
ի վեր ։ Լռութիւնը այնքան խորունկ էր , որ կարծես
աշխարհք համրացեր , և օդը՝ ձայն փոխադրելու յատ-
կութիւնը կորսնցուցեր էր ։ Միակ շշուկը , որ կը լսուէր ,
տաքէն մարմրող կոկորդիլոսներուն փափսուքն էր և
անոնց ճեղգուկ ծիծաղը , որոնք գետին կնիւններուն
մէջ կը գլորտըկէին , կամ քաջահաւ մը , որ մէկ տոտիկը
փորին տակ՝ և միւսը ուսերուն մէջ՝ կայնելէ յոգնած՝
տեղէն կը շարժէր , ու իր ճերմակ թեւերով յանկարծ*

*օդը մտրակելով, կ'երթար կը թառէր կոթողի մը կամ արմաւենիի մը վրայ։*

**ԹԷՈՖԻԼ ԿՈԹԻԷ** (1)

**123.** Չրուցագրել այս հատուածը և կէտադրութեան նշաններ դնել.

**124.** Փոխել այս հատուածին մէջ գտնուած բոլոր ածականները, և անոնց տեղ հոմանիշ ածականներ դնել։

---

## ԻՐԵՐՈՒ ՏԽՐՈՒԹԻՒՆԸ

*Տըխուր էր քարը յիշելով կաղնին,*
*Որ ազատ կ'աճի ընդդէմ արեւին,*
*Դիտելով դաշտը ժայռէն բարձրադիր*
*Մարմառ և խընդուն երբ օդն է կարմիր։*
*Տըխուր էր կաղնին յիշելով երէն,*
*Որ կը վազվըզէ մութ պուրակներէն,*
*Ցից գըլխով կայտառ զուարթ եղջերուն,*
*Երկինք նետելով հընչիւնն երգերուն։*
*Երէն տըխուր էր, երբ արծիւն յիշէր,*
*Որ կը սըլանայ բիլ երկինքն ի վեր*
*Ծըծելով լոյսը աչքին բիբերով.*
*Մարդն ալ տըխուր էր Աստուած յիշելով։*

**ՀԱՆՐԻ ԳԱԶԱԼԻՍ** (2)

**125.** Գոց սորվիլ և արտասանել այս հատուածը։

---

(1) Վիպասան և քննադատ Ֆրանսացի. Ծնած 1811ին, մեռած 1873ին։

(2) Ֆրանսացի ժամանակակից բանաստեղծ, ծնած 1840ին։

# ՑՈՒՑԱԿԱՆ ԱԾԱԿԱՆ

## ԿԱՆՈՆՆԵՐ

**432.** Ցուցական ածականները ցոյց կու տան այն անունները որոնց վրայ կը խօսուի։

**433.** Ցուցական ածականներն են. այս, աս, սա, այդ, ատ, այն, ան։

**434.** Այս կը գործածուի մեր քով գտնուող բանի մը համար. այդ՝ մեր խօսակցին քով գտնուողին, այն՝ հեռու եղողին համար։

**435.** Աս, ատ, ան ցուցական ածականները հիմայ ալ գրեթէ բնաւ չեն գործածուիր գրաւոր աշխարհաբարի մէջ, թէեւ միշտ կը մնան խօսուած լեզուին մէջ։

**436.** Ցուցական ածականէն ետքը եկող անունը սովորաբար որոշիչ յօդ կ'առնէ. Այս կաղամարը, այդ կատուն, այն սեղանը։ Բացառիկ են այն բառերը և հոլովները որոնք որոշիչ յօդ չեն առներ, ինչպէս բացատրուած է Յօդի գլուխին մէջ։

**437.** Ցուցական ածականը իրարու յաջորդող գոյականներու առջև կրնայ չկրկնուիլ. Այս աշխատութիւնն ու անձնուիրութիւնը։ Այն մարդն ու կինը։ Նոյնպէս երբ գոյականի մը մէկէ աւելի ածականներ կ'ընկերանան, հարկ չկայ ցուցականը կրկնելու իւրաքանչիւր ածականի առջև, նոյն իսկ երբ այդ ածականները տարբեր առարկաներու վերաբերին։ Այս մեծ եւ պզտիկ տուները։ Այս ընդարձակ ու բեղմնաւոր դաշտերը։

# ՍՏԱՑԱԿԱՆ ԱԾԱԿԱՆ

**438.** *Ստացական ածականները բանի մը որուն ըլլալը կը ցուցնեն, և խօսքի մէջ յատկացուցիչի դեր կը կատարեն. Իմ տունս, քու տետրակդ, իր գլխարկը:*

**439.** *Ստացական ածականները անձնական դերանուններուն սեռականներէն կը կազմուին, և հետեւեալներն են.*

| | Եզակի | | | Յոգնակի | | |
|---|---|---|---|---|---|---|
| Ա. դէմք | Իմ | կամ | իմին | Մեր | կամ | մերին |
| Բ. » | Քու | » | քուկին | Ձեր | » | ձերին |
| Գ. » | Իր | » | իրեն | Իրենց | | |

**440.** *Իմին, քուկին, իրեն, մերին, ձերին ստացական ածականները հիմայ ա՛լ գրեթէ չեն գործածուիր գրաւոր աշխարհաբարի մէջ, թէև ռամիկ խօսակցութեանց մէջ գործածողներ կան։ Այս ձեւերը կ՚երեւան երբեմն գրականութեան մէջ ալ, երբ ոտանաւորին վանկերը կամ յանգերը պահանջեն, ինչպէս.*

*Մըրրիկն օր մը խորտակեց*
*Նեցուկս էր՝ կաղնին մեծ։*

*կամ*

*Երկրի մէջ ամէն իր*
*Ունի մաս արեւէն.*
*Փուշն ունի վարդ կարմիր,*
*Եւ գիշերն այգն իրեն։*

**441.** *Ան և անոնք անձնական դերանուններուն սեռականները, անոր և անոնց, կրնան իր և իրենց ստացական ածականներուն տեղ գործածուիլ իբրև յատկացուցիչ, ինչպէս. Անոր խօսուածքը հաճելի չէ ինծի*

(էր խօսուածքը հաճելի չէ ինծի:) Անոնց գիրքերը չստա-ցանք (էրենց գիրքերը չստացանք:)

**442.** Միայն պէտք է դիտել որ երբ խօսքին մէջ երկու հատ երրորդ դէմքի անձ կայ, գլխաւոր դեր կատարող անձին համար՝ իր, իրենց կը գործածուի, իսկ երկրորդականին համար՝ անոր, անոնց. Մայրս գիտէր որ էր խօսքերը մեծ ազդեցութիւն պիտի ընէին քրոջը՝ եւ անոր աղջկան վրայ:

**443.** Իմ, քու, իր եզակի ստացական ածականներուն կցուած անունները ս, դ, ն կամ ը դիմորոշ յօդերը կ՚առնեն. իմ կարս, քու ասեղդ, իր մատնոցը:

**444.** Մեր, ձեր, իրենց յոքնակի ստացական ածականներուն կցուած անունները ը որոշիչ յօդը կ՚առնեն. մեր դերձանը, ձեր ակնոցը, իրենց ասեղը. նոյնպէս անոր գրիչները, անոնց տետրակները: Բացառիկ են այն բառերը եւ հոլովները որոնք որոշիչ յօդ չեն առներ, ինչպէս բացատրուած է Յօդի գլուխին մէջ:

**445.** Իմ, քու, իր ստացական ածականները ընդհանրապէս զանց կ՚ըլլուին, եւ անոնց տեղ՝ ս, դ, ն կամ ը դիմորոշ յօդերը միայն կը դրուին գոյականներուն վրայ. դերձանս, ասեղդ, մատնոցը: Բայց երբ անունները տարբեր դէմք ունին, այն ատեն հարկ կ՚ըլլայ ամէնուն առջեւ ածականները նշանակել. Իմ ասեղս բարակ չէ, բայց քու դերձանդ հաստ է: Իմ աջ թեւս կը ցաւի, քու ալ ձախդ:

**446.** Յոքնակի ստացական ածական առնող գոյական մը կրնայ յոքնակի ըլլալ երկու կերպով.

1. Պարզ յոգնակի, որ պարզապէս յոքնակի է ստացողին տեսակէտով. Մեր տետրակը, Ձեր նաւակը:

2. Կրկին յոգնակի, որ թէ՛ ստացողին եւ թէ՛ ստացուածին տեսակէտով յոքնակի է. Մեր տետրակները, Ձեր նաւակները:

**447.** Մեր, ձեր, իրենց ստացական ածականները ալ կրնան զեղչուիլ հետեւեալ օրէնքներով.

**448.** Երբ գոյականը բազմավանկ է նիս, նիդ, նին մասնիկները կ'աւելցուին. Գաւաթ-նիս, գաւաթ-նիդ, գաւաթ-նին. գաւաթներ-նիս, գաւաթներ-նիդ, գաւաթներ-նին։

**449.** Երբ գոյականը միավանկ է, պէտք է զանազանել.

1. Պարզ յոգնակին, որ կը կազմուի ենիս, ենիդ, ենին մասնիկները աւելցնելով գոյականին վրայ. Տուն-ենիս (մեր տունը), տուն-ենիդ (ձեր տունը), տուն-ենին (իրենց տունը)։

2. Կրկին յոգնակին, որ կը կազմուի նիս, նիդ, նին մասնիկները աւելցնելով գոյականին վրայ. Տուներ-նիս (մեր տուները), տուներ-նիդ (ձեր տուները), տուներ-նին (իրենց տուները)։

**450.** Նիս, նիդ, նին մասնիկներուն ծայրը գտնուած ս, դ, ն տառերը դիմորոշ յօդ են, իսկ նի յոգնակի չինող մասնիկ մըն է, որ առանձին ալ կը գործածուէր երբեմն նախնեաց ռամկօրէնին մէջ։

**451.** Գոյականները թէ՛ ստացական ածականով և թէ՛ միայն դիմորոշ յօդով կամ նիս, նիդ, նին մասնիկներով կրնան հոլովուիլ. Իմ գիրքս, իմ գրքիս, իմ գրքէս, իմ գրքովս, իմ գիրքերս, իմ գիրքերուս, իմ գիրքերէս, իմ գիրքերովս, մեր գիրքը, մեր գրքին, մեր գրքէն, մեր գրքով, մեր գիրքերը, մեր գիրքերուն, մեր գիրքերէն, մեր գիրքերով, կամ գիրքս, գրքիս, գրքէս, գրքովս, գիրքերս, գիրքերուս, գիրքերէս, գիրքերովս, գիրքեր-նիս, գիրք-ենուս, գիրք-ենէս, գիրք-ովնիս կամ գիրքեր-նիս, գիրքեր-նուս, գիրքեր-նէս, գիրքեր-ովնիս։

**452.** Պէտք է դիտել որ միավանկ բառերուն պարզ յոգնակին և կրկին յոգնակին նոյն ձեւը ունին,

երբ ըսենք **տուն-երնիս** (մեր տունը) և **տուներ-նիս** (մեր տուները), բայց ի գործիականէն որ կը տարբերի **տուն-ովնիս** (մեր տունով), **տուներ-ովնիս** (մեր տուներով)։

**453.** Աչուըներ, **մատուըներ**, **ոտուըներ** յոքնակիները ստացականով բացառաբար կ՚ըլլան **աչուընիս**, **մատուընիս**, **ոտուընիս**, **աչուըներնիս**, **մատուըներնիս**, **ոտուըներնիս**, և այլն։

**454.** Նիս, **նիդ**, **նին** և **երնիս**, **երնիդ**, **երնին** մասնիկներով կազմուած ձևերը արդի աշխարհաբարին մէջ շատ չեն գործածուիր, մանաւանդ երբ հոլովուած են։ Լաւագոյն է ըսել. **Մեր պարտէզներուն պահապանները**, քան **պարտէզներնուս պահապանները**: Սակայն երբեմն երկարաբանութենէ խուսափելու համար այս ձևերը կը գործածուին. **Ձեռքերնիս ձեռնոց դրած, գլուխնիս գլխարկ՝ ներկայ գտնուեցանք այդ արարողութեան**:

**455.** Ստացական ածականը իրարու յաջորդող գոյականներու առջև կրնայ չկրկնուիլ. **Իր քաջութիւնն ու անձնուիրութիւնը**: Նոյնպէս երբ գոյականը մէկէ աւելի ածականներու ընկերանայ, հարկ չկայ ստացականը կրկնել իւրաքանչիւր ածականի առջև, նոյն իսկ երբ անոնք տարբեր առարկաներ նշանակեն. **Մեր մեծ ու փոքր տուները**, և այլն։

# ՀՈԼՈՎՈՒՄ

## ՍՏԱՑԱԿԱՆ ԱԾԱԿԱՆՈՎ ԳՈՅԱԿԱՆՆԵՐՈՒ

| | Ա. ԴԷՄՔ | Բ. ԴԷՄՔ | Գ. ԴԷՄՔ |
|---|---|---|---|
| | | **Եզակի** | |
| Ո. Հ. | իմ գիրքս | քու գիրքդ | իր գիրքը |
| Ս. Տ. | իմ գրքիս | քու գրքիդ | իր գրքին |
| Բ. | իմ գրքէս | քու գրքէդ | իր գրքէն |
| Գ. | իմ գրքովս | քու գրքովդ | իր գրքով |
| | | **Յոգնակի** | |
| Ո. Հ. | իմ գիրքերս | քու գիրքերդ | իր գիրքերը |
| Ս. Տ. | իմ գիրքերուս | քու գիրքերուդ | իր գիրքերուն |
| Բ. | իմ գիրքերէս | քու գիրքերէդ | իր գիրքերէն |
| Գ. | իմ գիրքերովս | քու գիրքերովդ | իր գիրքերով |
| | | **Պարզ յոգնակի** | |
| Ո. Հ. | Մեր գիրքը | Ձեր գիրքը | Իրենց գիրքը |
| Ս. Տ. | Մեր գրքին | Ձեր գիրքին | Իրենց գրքին |
| Բ. | Մեր գրքէն | Ձեր գիրքէն | Իրենց գրքէն |
| Գ. | Մեր գրքով | Ձեր գիրքով | Իրենց գրքով |
| | | **Կրկին յոգնակի** | |
| Ո. Հ. | Մեր գիրքերը | Ձեր գիրքերը | Իրենց գիրքերը |
| Ս. Տ. | Մեր գիրքերուն | Ձեր գիրքերուն | Իրենց գիրքերուն |
| Բ. | Մեր գիրքերէն | Ձեր գիրքերէն | Իրենց գիրքերէն |
| Գ. | Մեր գիրքերով | Ձեր գիրքերով | Իրենց գիրքերով |

# ՀՈԼՈՎՈՒՄ

## ԴԻՄՈՐՈՇ ՑՕԴՈՎ ԳՈՅԱԿԱՆՆԵՐՈՒ

| | Ա. ԴԷՄՔ | Բ. ԴԷՄՔ | Գ. ԴԷՄՔ |
|---|---|---|---|
| | | Եզակի | |
| Ո. Հ | Գիրքս | Գիրքդ | Գիրքը |
| Ս. Տ. | Գրքիս | Գրքիդ | Գրքին |
| Բ. | Գրքէս | Գրքէդ | Գրքէն |
| Գ. | Գրքովս | Գրքովդ | Գրքովը |
| | | Յոքնակի | |
| Ո. Հ. | Գիրքերս | Գիրքերդ | Գիրքերը |
| Ս. Տ. | Գիրքերուս | Գիրքերուդ | Գիրքերուն |
| Բ. | Գիրքերէս | Գիրքերէդ | Գիրքերէն |
| Գ. | Գիրքերովս | Գիրքերովդ | Գիրքերովը |

*Միավանկ բառեր*

Պարզ յոքնակի

| | | | |
|---|---|---|---|
| Ո. Հ. | Գիրք-երնիս, | երնիդ, | երնին |
| Ս. Տ. | Գիրք-երնուս, | երնուդ, | երնուն |
| Բ. | Գիրք-երնէս, | երնէդ, | երնէն |
| Գ. | Գիրք-երովնիս, | երովնիդ, | երովնին |

Երկին յոքնակի

| | | | |
|---|---|---|---|
| Ո. Հ. | Գիրքեր-նիս, | նիդ, | նին |
| Ս. Տ. | Գիրքեր-նուս, | նուդ, | նուն |
| Բ. | Գիրքեր-նէս, | նէդ, | նէն |
| Գ. | Գիրքեր-ովնիս, | ովնիդ, | ովնին |

*Բազմավանկ բառեր*

Պարզ յոքնակի

| | | | |
|---|---|---|---|
| Ո. Հ. | Տետրակ-նիս, | նիդ, | նին |
| Ս. Տ. | Տետրակ-նուս, | նուդ, | նուն |
| Բ. | Տետրակ-նէս, | նէդ, | նէն |
| Գ. | Տետրակ-ովնիս, | ովնիդ, | ովնին |

Երկին յոքնակի

| | | | |
|---|---|---|---|
| Ո. Հ. | Տետրակներ-նիս, | նիդ, | նին |
| Ս. Տ. | Տետրակներ-նուս, | նուդ, | նուն |
| Բ. | Տետրակներ-նէս, | նէդ, | նէն |
| Գ. | Տետրակներ-ովնիս, | ովնիդ, | ովնին |

# ԹՈՒԱԿԱՆ ԱԾԱԿԱՆ

**456.** *Թուական ածական կ'ըսուին այն բառերը որոնք անունի մը քանի հատ և քանիերորդ ըլլալը կը ցուցնեն, ինչպէս. տասը, քսաներորդ, հինգական:*

**457.** *Թուական ածականները երեք տեսակ են.* բացարձակ, դասական, բաշխական:

**458.** Բացարձակ *են այն թուական ածականները որոնք անունի մը քանի հատ ըլլալը ցոյց կու տան, ինչպէս. Մէկ, երկու, երեք, չորս, հինգ, վեց, եօթը, ութը, ինը, տասը, տասնըմէկ, տասներկու, տասներեք, տասնըչորս, տասնըհինգ, տասնըվեց, տասնըեօթը, տասնըութը, տասնըինը, քսան, երեսուն, քառասուն, յիսուն, վաթսուն, եօթանասուն, ութսուն, իննըսուն, հարիւր, հազար, բիւր, միլիոն, երկիլիոն, եռիլիոն, քառիլիոն, հինգիլիոն, վեցիլիոն, եօթնիլիոն, եւայլն:*

**459.** Դասական *են անոնք որ անունի մը քանիերորդ ըլլալը ցոյց կու տան: Դասական ածականները կը կազմուին բացարձակներուն վրայ երորդ մասնիկը աւելցնելով, ինչպէս. հինգերորդ, վեցերորդ, քսաներորդ, հարիւրերորդ, եւայլն:*

**460.** *Մէկին դասականը մէկերորդ չ'ըլլար, այլ առաջին: Նոյնպէս բացառիկ կերպով կը շինուին երկրորդ, երրորդ, չորրորդ դասականները:*

**461.** *Եօթը, ինը, տասը բացարձակներուն ը գիրը երորդ մասնիկին առջև կը փոխուի ն ի, ինչպէս. եօթներորդ, իններորդ, տասներորդ: Ութը կ'ըլլայ ութերորդ, որովհետև գրաբարի մէջ կը գրուի միշտ ութ:*

**462.** *Երբ դասական ածական մը կազմուած է քանի մը թիւերով, վերջինը միայն կ'առնէ երորդ մասնիկը. չ'ըսուիր վեցերորդ հազարերորդ, այլ վեցհազարերորդ,*

**463**. Դասական թուականները կրնան նշանակուիլ նաև հայ այբուբենով միշտ գլխագիր, ինչպէս. Ա առաջին, Բ երկրորդ, Գ երրորդ, Դ չորրորդ, Ե հինգերորդ, Զ վեցերորդ, Է եօթներորդ, Ը ութերորդ, Թ իններորդ, Ժ տասներորդ, ԺԱ տասնըմէկերորդ, ԺԲ տասներկուերորդ, ԺԳ տասներեքերորդ, ԺԴ տասնըչորսերորդ, ԺԵ տասնըհինգերորդ, ԺԶ տասնըվեցերորդ, ԺԷ տասնըեօթներորդ, ԺԸ տասնըութերորդ, ԺԹ տասնըիններորդ, Ի քսաներորդ, Լ երեսուներորդ, Խ քառասուներորդ, Ծ յիսուներորդ, Կ վաթսուներորդ, Հ եօթանասուներորդ, Ձ ութսուներորդ, Ղ իննըսուներորդ, Ճ հարիւրերորդ, Մ երկուհարիւրերորդ, ևայլն, Ռ հազարերորդ, Ս կամ ԲՌ երկուհազարերորդ, Վ կամ ԳՌ երեքհազարերորդ, ևլն։

## ԱՆՈՐՈՇ ԱԾԱԿԱՆ

**464**. Անորոշ ածականները տարտամ և անորոշ իմաստ մը կու տան գոյականին, ինչպէս. մի— գիրքը:

**465**. Անորոշ ածականները հետևեալներն են.

Ամէն, բոլոր. — Քանի մը, մէկ քանի, ինչ ինչ. — Ամէն մէկ, իւրաքանչիւր, ամենայն. — Նոյն, միևնոյն. — Ուրիշ, միւս. — Ոչ մէկ. — Որ և է. — Այս ինչ, այն ինչ. — Այսպէս, այդպէս, այնպէս. այսպիսի, այդպիսի, այնպիսի. ասանկ, ատանկ, անանկ. — Այսքան, այդքան, այնքան. այսչափ, այդչափ, այնչափ. — Որչափ, որքան, որպիսի. — Ո՛ր, ի՛նչ, քանի՛, ինչպէ՛ս, քանի՛ քանի՛, ևայլն:

**466**. Ասոնցմէ ամէնքն ալ հարցական ձևով ալ կրնան գործածուիլ, բայց մանաւորապէս հետևեալները հարցական կը կոչուին. ո՞րչափ, ո՞րքան, ո՞ր, ի՞նչ, քանի՞, ի՞նչպէս:

## ՍՏԱՑԱԿԱՆ, ՑՈՒՑԱԿԱՆ, ԹՈՒԱԿԱՆ ԵՒ ԱՆՈՐՈՇ ԱԾԱԿԱՆՆԵՐՈՒՆ ԳՈՐԾԱԾՈՒԹԻՒՆԸ

**467.** *Ստացական, ցուցական, թուական և անորոշ ածականները միշտ գոյականէն և որակական ածականէն առաջ կը դրուին. Իմ գեղեցիկ շունս կորսնցուցի: Այս չար տղան սիրտս կը հասցնէ: Երկու ծոյլ աշակերտ ունիմ: Միւս բարակ վարագոյրները պիտի գործածենք:*

**468.** *Ստացական և ցուցական ածականները անորոշ ածականներէն առաջ կը դրուին ընդհանրապէս. Իր բոլոր դիտողութիւնները ընդունեցայ: Այդ ամեն բաժներդ գիտէի արդէն:*

**469.** *Ստացական, ցուցական և անորոշ ածականները թուականներէն առաջ կը դրուին. Իր չորս գիրքերը. այս երկու տղաք, միւս երկու տուները:*

**470.** *Ստացական ածականները ցուցականներէն առաջ կը գործածուին ընդհանրապէս. Մեր այս գիրքը, իր այդ դիտողութիւնը:*

**471.** *Սակայն ոտանաւորի մէջ կարելի է ասոնց տեղը փոխել, և նոյն իսկ գոյականէն ետքը դնել զանոնք.*

*Մեղամաղձոտ լըճակս իմ*
*Քեզ հետ ըղձանք մըտերիմ:*

## ՀՐԱՀԱՆԳՆԵՐ

## ԽՆԱՅՈՂՈՒԹԻՒՆ ԵՒ ՇՌԱՅԼՈՒԹԻՒՆ

*Մարդուս պիտոյքներէն շատերուն բուն պատճառն ու աղբիւրները՝ իր բնաւորութիւնը, կիրքերն ու ախորժակներն են, ուստի որչափ որ հնար է, մեր մանկութենէն պէտք է չափաւորութեան, բաւականասիրութեան ու պարզութեան վարժուիլ, և չթողուլ որ մոլութիւնը, ունայնասիրութիւնը և փառասիրութիւնը սիրտերնուս վրայ տիրէ։ Դրամը և ուրիշ բարիքները թէպէտ գործածուելու համար եղեր են, բայց այս գործածութեան նպատակը կրկնակի է։ Երբեմն մեզի վայելք տալու համար պէտք է ըլլայ, երբեմն ալ ուրիշ նոր բարիքներ հասցնելու համար։ Իրեն համար ապրուստի միջոց մը ըլլալիք հարստութիւնը վատնող շռայլը՝ աշխարհիս վրայէն ալ նոյն չափով կտոր մը ճարտարութիւն կը վերցնէ, ու միանգամայն այն սատակով բանելիք աղքատ գործաւորը իր վաստակէն կը զրկէ։ Խնայող մարդը շատ հոգերէ ազատ կը մնայ։ Պարտք չունեցող մարդը մէկէն չի վախնար, ու թէ որ ունեցածը քիչ ալ ըլլայ, գոնէ այն քիչը իրը եղած կ'ըլլայ։ Իր բոլոր աշխատանքը ուրիշներուն անյագ աչքը լեցնելու համար չէ, այլ իր ու իր ընտանիքին բարեկեցութիւնը աւելցնելու համար կ'ըլլայ։ Ըրած ժուժկալութիւնները անպտուղ չեն մնար, և թէպէտ առջի բերան քիչ մը դժուարութիւն կը քաշէ, բայց ետքը, իր վիճակը շռայլ մարդուն վիճակին հետ բաղդատելով, երբ տեսնէ որ ծուլութիւնը՝ պարտքերը՝ աղքատութիւնն ու յուսահատութիւնը անոր շուրջ կողմը առեր են, գո՛հ կ'ըլլայ իր վիճակէն, ու իր չափաւորութեան պտուղը եղող բարեկեցութիւնն ու հանդարտութիւնը աւելի յարգ կը ստանան իր աչքին առջև։*

ՆԻԿՈՂԱՅՈՍ ԶՕՐԱՅԵԱՆ [1]

---

[1] Նիկողայոս Զօրայեան (1821—1859) նշանաւոր տնտեսագէտ, գրագէտ և հրապարակագիր. աշխատակցած է Մասիսին, ուր գրած է տնտեսագիտական և մանկավարժական յօդուածներ. Թողած է Ընթերցասիրութիւն, Քաղաքականի ստատիստիքին և ուրիշ օգտակար երկասիրութիւններ։

**126.** Ձրուցագրել այս հատուածը և կետադրութեան նշաններ դնել.

**127.** Նշանակել այս հատուածին մէջ գտնուած որակական և ստացական ածականները։

**128.** Հետագայ խօսքերուն մէջ թուանշանով նշանակուած թիւերը գրով գրել.

*Երկրագունտին շրջապատն է* 10,000 *փարսախ կամ* 40,000 *քիլոմէթր։ — Ամէն շրջանակ* 360 *աստիճանի կը բաժնուի։ — Ամէն միջատ* 6 *ոտք ունի։ —* 3 *Շնորհքները,* 3 *Պարկաները,* 3 *Ընդդաները և* 9 *Մուսաները դիցաբանութեան մէջ կարեւոր տեղ բռնած են։ — Լաֆոնթէն* 100 *աչեայ մարդ կ'անուանէ տան մը տէրը։ — Փետրուարը ընդհանրապէս* 28 *օր է, բայց* 4 *տարին անգամ մը, այսինքն ամէն նահանջ տարի,* 29 *օր է։ — Տարուան մէջ կայ* 4 *եղանակ,* 12 *ամիս,* 52 *շաբաթ և* 365 *օր։ —* 7 *ամիսներուն մէջ կայ* 31 *օր, և չորս ամիսներուն մէջ* 30 *օր։ — Մէկ լիտր զտուած ջուրը* 100 *կրամ կը կշռէ։*

**129.** Հայ գլխագիրներով գրել հետեւեալ խօսքերուն մէջ գտնուած թուականները.

*Կիւթէմպէրկ տպագրութիւնը հնարած է* 15*րդ դարուն։ — Վենետիկի Ծերակոյտը Մխիթարեան Միաբանութեան նուիրած է Ս. Ղազարու կղզին* 1717*ին։ — Եզնիկ Կողբացիի Եղծ աղանդոց գիրքը տպուած է առաջին անգամ* 1762*ին։ — Եէտի-գուլէի Ազգային Հիւանդանոցը շինուած է* 1832*ին։ —* 1066*ին առենները, Անգլիացւոց կաղանդը դեկտեմբեր* 25*ին էր։*

**130.** Պարզ թուանշանով գրել հետեւեալ հայ գլխագիրներով գրուած թիւերը.

*ԺԴ ՌՎԲ ՏԾԱ ԻԵ ՄԼԴ ՌՋ ՌՊԻԹ ՀԸ ՋԱ ՑԺԲ ՆԹ ՌԿՋ*

**131.** Հետեւեալ խօսքերուն միջէն վերցնել ստացական ածականները և անոնց փոխարէն՝ գոյականներուն վրայ դնել *ս*, *դ*, *ն*, *ը* դիմորոշ յօդերն ու *նիս*, *նիդ*, *նին*, *երնիս*, *երնիդ*, *երնին* մասնիկները.

*Ուղղենք մեր թերութիւնները։ — Ջանացէք արժանի ըլլալ ձեր ծնողքին սիրոյն։ — Առիւծը ազնուական կերպարանք մը ունի. իր սրունքներուն բարձրութիւնը լաւ կը համեմատի իր մարմնոյն երկայնութեան։ —*

*Մեր գործերուն յաջողութիւնը շատ անգամ մեր մտքի արթնութենէն կախում ունի։ — Մարդիկ իրենց գիտցածէն աւելին կ'ուզեն ծախել։ — Մենք մեր կիրքերուն յաղթենք, որպէս զի անոնք չյաղթեն մեզի։ — Դուք ձեր զաւակներուն ոչ միայն մայրը, այլ անոնց դաստիարակը եղաք։ — Վեր բարձրացէք ձեր թշնամիներէն, եթէ կ'ուզէք զանոնք ամչցնել։ — Ջանացէք ձեր առողջութեան հոգ տանիլ, վասն զի առողջութիւնը՝ հանճարի և գեղեցկութեան նման եզական յատկութիւն մըն է։ — Ձեր գեղեցկութիւնը խնամելէ աւելի, միտքերնիդ մշակեցէք, վասն զի առանց բարութեան գեղեցկութիւնը առանց հոտի վարդ մըն է։*

**182.** Պէտք եղած *ցուցական* և *անորոշ* ածականները դնել հետեւեալ խօսքերուն մէջ՝ գիծերուն տեղ.

*— բան տեղ մը պէտք է ունենայ, և — գործ ժամանակ մը — տան մէջ ուր տանտիկին մը կայ։ Խելացի մարդը երկու անգամ չի սխալիր — կէտին վրայ։ — դէպը կրնայ մէկուն օգտակար և մէկուն վնասակար ըլլալ։ — կարծիքը կը յայտնեն — բժիշկներ։ Ամերիկայի մէջ կան — ժողովուրդներ որ մարդակեր են։ — քաղցր է երախտագիտութիւնը ազնիւ սրտի մը համար։ — անձերը որ մեր թերութիւնները կ'արդարացնեն վատ շողոքորթներ են։*

**183.** Հետեւեալ նախադասութեանց մէջ *ցուցական* և *ստացական* ածականներուն ընկերացող գոյականներուն վրայ դնել յարմար *դիմորոշ* ու *անորոշ* յօդերը, կամ ջնջել ու փոխել անյարմարները.

*Քաղաքավարութիւնը մեզի հետ ապրող անձերը մեզմէ և իր անձէ գոհ ընելու արուեստն է։ — Այդ խօսքերովը չես կրնար զիս համոզել։ — Պատուաւոր մարդը միշտ իր խօսքի տէր է։ — Ջանա քու ուսուցիչներու համակրանքի արժանանալ, քու աշխատութեամբը ու բարի վարքովը։ — Կեղծաւորը միշտ իր մտածումի հակառակը կը խօսի։ — Եսաւ իր անդրանկութեանը իրաւունք ծախեց Յակոբին։ — Անցեալ շաբաթ ցուրտ առնելով հիւանդացայ. այն օրէ ի վեր անկողին էի։*

**184.** *Անոր* ստացական դնել հետեւեալ նախադասութեանց մէջ հարկ եղած տեղը *իր* բառը ջնջելով.

*Այս մարդը պաշտպանեց իր քոյրը և իր (քրոջ) պատիւը։ — Նորընտիր Ակադեմականը գովեստով խօսեցաւ իր նախորդին և իր (նախորդին) երկերուն վրայ։*

**185.** Հայ գլխագրով նշանակել հետեւեալ բառանշանները.

*Սկիւտարի ճեմարանը Կարապետ Պալեան և Յովհաննէս Սէրվէրեան ամիրաներու նախաձեռնութեամբ հիմնուած է 1839ին։ — Մկրտիչ Սանասարեանց հիմնած է Սանասարեան վարժարանը 1881ին Էրզրում։ — Յովսէփ Իզմիրեանց 10,000 րուբլի նուիրած է ազգին, սահմանելով անոր տոկոսը՝ տարեկան 600 րուբլի գրական մրցանակի մը, որ կը տրուի երկու տարին անգամ մը գրականութեան և հնախօսութեան վերաբերեալ լաւագոյն երկին։ — Էջմիածնայ ճեմարանը հաստատուած է 1874ին։ — Եսայեան վարժարանը կառուցուած է Բերայի մէջ 1898ին։*

---

## ՊԱՐԻԿԻ ՄԸ ՃԱՄԲՈՐԴՈՒԹԻՒՆԸ

*Պարիկ մը տեսայ անցեալ օր պառաւ,*
*Որ ելեր կ'երթար վազելով հարաւ,*
*Ըսի. «— Ինչու դուն ըզմեզ կը թողուս,*
*Ո՛վ բարի պարիկ, պաշտպան ամէնուս»*
*«— Ո՛հ, թող որ մեկնիմ, գոչեց անհամբեր,*
*Հոս եկած չէի դարերէ ի վեր,*
*Եւ այնքան փոխուած, և այնքան վատթար,*
*Այնքան մոլորած կը տեսնեմ աշխարհ,*
*Որ վայրկեան մ'առաջ կը փութամ տալ խոյս,*
*Զայն բարւոքելու ա՛լ չունիմ ես յոյս։*
*Ամէն աղջըկան կու տամ գեղ, գորով*
*Եւ ամէն մանչու՝ քաջութիւն կորով,*
*Խելք միտք ծերերուն, հիւանդին դարման,*
*Եւ բոլոր աշխարհք մէկ ձայն, մէկ բերան*
*Վըրաս կը խընդայ, ամէնքը մէկէն*
*Հեգնոտ ձայներով ինձ կ'աղաղակեն.*
*«Պըրծիր տալ մեզի ոսկի և արծաթ,*
*«Ուրիշ բան պէտք չէ մեզի անկէ զատ։»*
*Ու այս պիղծ երկրէն կը մեկնիմ ես շուտ*
*Որ մի գուցէ ծառն, արտեր ու թաւուտ*
*Եւ ծաղիկները՝ մանիշակ, շուշան,*

*Վարդի թուփերն ալ կազմելով խուժան,*
*Խընդրեն շըղարշէ նըրբաճիւս քողեր,*
*Եւ կամ ղըմփուխտէ ցոլացիկ օղեր-*
*Թիթեռնիկներն ալ կառքեր պահանջեն*
*Անցնելու համար մարմանդին մէջէն։»*
*«— Ո՛չ, ոչ, գոչեցին վարդերը բոլոր*
*Որ լըսեր էին տըրտունջներն անոր,*
*Մենք շատ ցօղ ունինք մեր թերթերուն մէջ,*
*Այդ ցօղը՝ լոյս մը, գոհար մ'է անշէջ։»*
*Թիթեռնիկներն ալ թեթեւ ու սիրուն*
*Պատասխան տուին անոր խօսքերուն.*
*«— Մեր թեւին վրայ ունինք ոսկի շատ,*
*Արծաթ բանուած է մեր կուրծքն ու ճակատ»*
*Եւ սարդիկն ըսաւ. «Անոնք են ահա*
*Լոկ լուրջ էակներն աշխարհի վըրայ։»*

**Նիւթը քաղուած ԺՈՐԺ ՍԱՆի (¹) մէկ արձակ հատուածէն**



(¹) Ժօրժ Սան, ֆրանսացի նշանաւոր գրագիտուհի, ծնած 1804ին և մեռած 1876ին։ Գրած է վէպեր և ուրիշ երկեր։

# ԱԾԱԿԱՆԻՆ ԼՈՒԾՈՒՄԸ

*Մտքով տկար մարդիկ միշտ ուրիշներուն վրայ թերութիւն կը գտնեն։ — Իր կիրքերուն յաղթող մարդը մեծ դժուարութեանց ալ կրնայ յաղթել ։ — Բարձրաբերձ լեռները յաւերժական ձիւնով ծածկուած են ։ — Թռչունները իրենց ուրախութիւնը երգովնին կ'արտայայտեն ։ — Ի՞նչ սիրտ ունիք որ կը դիմանաք այդ տառապանքներուն ։ — Ամէն օր եթէ մէյ մէկ գնդասեղ գտնէք գետնէն, կ'ըսէ Ֆրանքլին, տարին մը երկու ղրուշ կ'ունենաք ։ — Ոճրագործին բարձը փուշերով լեցուն է ։ — Իմաստուն մարդը իր ժամանակն ու խօսքերը խնայողութեամբ կը գործածէ ։ — Համրի մը լեզուն ստախօսի մը լեզուէն նախամեծար է ։ — Եթէ ընկերդ եօթանասունըեօթը անգամ մեղանչէ, եօթանասունըեօթներորդ անգամ ներէ' իրեն ։*

| | |
|---|---|
| Մտքով | հոլվ. ան. եզ. գրծ. խնդ. *տկարին*։ |
| տկար | որակ. ածական *մարդիկին*[1]։ |
| Իր | ստաց. ած *կիրքերունին*։ |
| կիրքերուն | հոլվ. ան. յ.ք. տր. խնդ. *յաղթողին*։ |
| յաղթող | որկ. ած. *մարդին*։ |
| մեծ | որկ. ած. *դժուարութեանցին*։ |
| Բարձրաբերձ | որկ. ած. *լեռներին*։ |
| յաւերժական | որկ. ած. *ձիւնովին*։ |
| ձիւնով | հոլվ. ան. եզ. գրծ. խնդ. *ծածկուածին*։ |
| ծածկուած | որկ. ած. ստորգ. *լեռներին*։ |
| իրենց | ստց. ած. *ուրախութիւնին*։ |
| Ինչ | անրշ. ած. *սիրտին*։ |

---

[1] *Խնդիր ունեցող ածականները, ինչպէս մտքով տկար, բաղադրեալ ածական ալ կը կոչուին։*

| | |
|---|---|
| այդ | ցուց. ած. *ստացականներունին* |
| Ամէն | անոր. ած. *ծրին* |
| մէյ մէկ | բշխկ. թւկն. ած. *գնդականդին* |
| երկու | բցրձկ. թւկն. ած. *դրուշին* |
| փուշերով | հոլվ. սն. յք. գրծ. խնդ. *չեցունելու* |
| չեցուն | որակ. ած. ստորգլի. *բարձին* |
| Իմաստուն | որկ. ած. *մարդին* |
| իր | ստցկն. ած. *ժամանակին* |
| լեզուէն | հոլվ. սն. եզ. բցռկ. խնդ. *նախամեծարին* |
| նախամեծար | որկ. ած. ստորգլի. *լեզուէնին* |
| եօթանասունեօթը | բցրձկ. թւկն. ած. *անգամին* |
| եօթանասուն-եօթներորդ | դսկն. թւկն. ած. *անգամին* |

---

# ՀՐԱՀԱՆԳՆԵՐ

---

## *ՁՄԵՌԸ ՍՔԱՆՏԻՆԱՒԻՈՅ ՄԷՋ*

*Ով որ հիւսիսային երկիրներու մէջ չէ բնակած, չի գիտեր թէ որպիսի՝ նոր կեանք մը կը բերէ անոնց ձմեռը։ Շաբաթներով ձիւնը կը տեղայ հոծ ծուէններով խիտ առ խիտ, և այնքան առատ, և այնքան թանձր, որ մարդ. անոր տեղալը չի տեսներ։ Ցուրտ աղուամաղէ ամպի մը մէջէն կը քալես, կը զգաս ինքզինքդ պաշարուած սպիտակ յորձանքով մը որ ամէն մէկ քայլիդ՝ կարծես կը սեղմուի չուրջդ, և կը փաթթէ զքեզ բամպակէ սառուցիկ կապանքներու մէջ։ Հողը ձիւն կտրած է ոտքիդ տակ, միշտ ձիւն։ Աշխարհի վրայ մէկ տարր մը միայն կայ, ձիւնը։ Այն ատեն շատ ցաւալի է ուղեւորին վիճակը։ Աւելի բնազդմամբ կը քալէ քան դատողութեամբ։ Ըստ բախտի կը քալէ կէս կուրցած. իր ձիերը տրտմօրէն գլխիկոր՝ ա՛լ չկարենալով սովորական հետքերը գտնել, կ'երթան ուր որ քշուին, առանց*

ուր երթալնին գիտնալու։ Եթէ կանգ առնէք, եթէ աչքերնիդ ուրիշ կողմ դարձնէք, եթէ վայրկեան մը անուշադիր ըլլաք, ա՛լ չէք կրնար գտնել ձեր անստոյգ ճամբան։ Կորսուած էք։ Ականջը՝ որ ի զուր կը ջանայ թրթռում մը լսել համր օդին մէջ, կ'ահաբեկի այս թախծագին անդորրութենէն, որ պատկերն է մահուան։ Ջիւնը կը տեղայ անշշուկ, և ծանր քայլը կը մեղմանայ կակուղ բամպակին վրայ... միայն մերթ ընդ մերթ ագռաւ մը կը թօթվէ ճերմակ միջոցին մէջ իր մութ ու լորտ թեւերը, և կը չափէ թախծոտ կռչտով մը այդ անդոհական լռութեան անջրպետները։

ԼՈՒԻ ԷՆՕ [1]

126 Լուծել այս հատուածին անուանները, յօդերը և ածականները։

---

## ՍԻՐԱՄԱՐԳԸ ԵՒ ՍՈԽԱԿԸ

Սիրամարգը պոչին վըրայ կը պարծէր,
Եւ սոխակն ալ ձայնին գովեստ կը կարդար․
Տըխմար բան է անձը գովել անդադար․
Բայց ո՞ր մարդը, ըլլայ տըղայ, կին թէ ծեր,
Այս սըխալը իր կեանքին մէջ չէ՛ գործեր։

Թաւշափետուր Թըռչունն անմիտ ու հըպարտ՝
«Գեղն է, կ'ըսէր, միայն պատուոյ արժանի։»
Տաղանդ, ձիրքեր Թըռչուններու խելանի
Կ'արհամարհէր, և պըչրանքով մը հանդարտ
Կը ցուցադրէր իր պերճ ագին փետրազարդ։

(1) Լուի Էնօ, Ֆրանսացի վիպասան, ծնած է 1824ին և մեռած 1900ին։

Իսկ սոխակն ալ իր տաղերանքը կը քըշէր,
Սուր ծիծաղ մը թընդացնելով կոկորդէն,
Ուրկէ դիւթիչ մեղեդիներ կը յորդէին։
Երբ վերջալոյս վըրայ հասաւ մութ գիշեր
Սև քօղի մէջ փաթթելով վարդն ու փուշեր։

Փայլուն լոյսերն ըստուերին մէջ մարեցան,
Սիրամարգը անհետացաւ մութին տակ,
Մինչ սոխակին գեղգեղն անոյշ և յըստակ
Եթերին մէջ ծաւալելով ցիր ու ցան,
Դիւթեց երկինքն իր վանկերով քաղցրաձայն։

Գեղեցկութեան կը յաղթէ խելքն ու տաղանդ.
Աչքին լոյսը տարիքին հետ կը մարի.
Մըտքին լոյսը՝ քանի կեանքը երկարի,
Կը բոցբոցէ և կ՚ուռճանայ մանաւանդ,
Ինչպէս տունկ մը հողի վըրայ արգաւանդ։

ՀԵՏԵՒՈՂՈՒԹԻՒՆ

**187.** Արձակի վերածել այս ոտանաւորը։



# ԴԵՐԱՆՈՒՆ

**472.** Դերանունը բառ մըն է, որ անունի մը տեղը կը դրուի զայն չկրկնելու համար. Երբ ճշմարտութիւնը ստութեան հետ կը մրցի, վերջապէս կը զգետնէ զայն: Ձանձրոյթը հիւանդութիւն մըն է, որուն դարմանը աշխատանքն է: Մեր երջանկութիւնը կը կրկնապատկենք, երբ ուրիշներն ալ մասնակից կ'ընենք անոր: Եթէ աղքատը իր ցաւերը ունի, հարուստն ալ իրենները չունի՞: Այս նախադասութեանց մէջ՝ զայն, որուն, անոր, իրենները բառերը դերանուն են, վասն զի ստութիւն, հիւանդութիւն, երջանկութիւն, ցաւ բառերուն տեղ դրուած են:

**473.** Դերանունը անունին պէս կրնայ ըլլալ ենթակայ, սեռի խնդիր, յատկացուցիչ, ստորոգելի, բնութեան խնդիր, եւայլն:

**474.** Դերանունը ունի թիւ, հոլով և դէմք:

**475.** Դէմքը երեք է. առաջին, երկրորդ, երրորդ:

Առաջին դէմքը խօսողը ցոյց կու տայ. Ես կը գրեմ:

Երկրորդ դէմքը՝ ցոյց կու տայ զայն որուն կը խօսուի. Դուն կը գրես:

Երրորդ դէմքը՝ ցոյց կու տայ զայն որուն վրայ կը խօսուի. Ինք կամ ան կը գրէ:

**476.** Դերանունները հինգ տեսակ են. Անձնական, Ցուցական, Ստացական, Յարաբերական և Անորոշ:

## ԱՆՁՆԱԿԱՆ ԴԵՐԱՆՈՒՆ

**477.** Անձնական դերանունները կը ներկայացնեն անձերն ու անոնց դէմքերը, և հետեւեալներն են. Ես

դուն, ինք կամ ան կամ անիկա, մենք, դուք, իրենք կամ անոնք։

**478.** Անձնական են նաև իրար, զիրար, մէկզմէկ փոխադարձ դերանունները։

**479.** Ինք կցուելով զինք հայցականին կը կազմէ նաև յատուկ բառ մը, որ դիմորոշ յօդերուն հետ կը գործածուի. ինքզինքս (ես զիս), ինքզինքդ (դուն զքեզ), ինքզինքը (ինք զինքը)։

**480.** Բոլոր այս դերանունները իրենց յատուկ հոլովումները ունին, ինչպէս կ'երևայ 178 էջի պատկերին մէջ։

**481.** Մէկզմէկ, իրար, զիրար, ինքզինքս, ինքզինքդ, ինքզինքը ուղղական չունին։

**482.** Անձնական դերանունները բային առջև ընդհանրապէս չեն կրկնուիր, այլ զօրութեամբ կ'իմացուին. Եկայ, տեսայ և յաղթեցի, փոխանակ ըսելու Ես եկայ, ես տեսայ և ես յաղթեցի։

**483.** Կան պարագաներ սակայն, ուր հարկ է դերանունը դնել.

Ա. Երբ բայերուն դէմքը կը փոխուի. Դուն պիտի նուագես, ես պիտի երգեմ։

Բ. Երբ անձն ու դէմքը որոշ կերպով չեշտել կ'ուզենք. Ես եմ որ զքեզ կ'ամբաստանեմ։ Դո՞ւք պիտի պաշտպանէք ինքզինքնիդ։

**484.** Ինք, ան, անիկա դերանունները կրնան հաւասարապէս իրարու տեղ գործածուիլ. միայն պէտք է դիտել թէ երբ խօսքին մէջ՝ Գ. դէմքի երկու տարբեր անձ կայ, միշտ գլխաւոր անձին համար ինք կը գործածուի, և երկրորդական անձին համար ան կամ անիկա. Գրիգոր եկաւ Յովհաննէսին հետ. Ինք (Գրիգոր) գոհ չէր անկէ (Յովհաննէսէն)։ Գրիգոր եկաւ Յովհաննէսին հետ. Անոր հետ (Յովհաննէսին) խօսեցաւ ինք (Գրիգոր)։

## ՑՈՒՑԱԿԱՆ ԴԵՐԱՆՈՒՆ

**485**. *Ցուցական դերանունը կը ծառայէ ցոյց տալու այն անձերը և իրերը, որոնց տեղը դրուած է :*

**486**. *Ցուցական դերանուններն են. այս, այդ, այն, աս, ատ, ան, նա, ասիկա, ատիկա, անիկա, ասոնք, ատոնք, անոնք, որոնցմէ առաջին եօթը բառերը ցուցական ածականներն են առանց գոյականի՝ այսինքն առանձին գործածուած :*

**487**. *Այս յիշուած առարկայի մը կամ գաղափարի մը համար կը գործածուի, աս յիշուելիք առարկայի մը, ինչպէս. Ըրէ՛ ուրիշին ինչ որ կ'ուզես որ քեզի ընեն. այս է Աւետարանի քարոզութիւնը : — Քրիստոս աս պատուէրը կու տայ մեզի. Մի՛ ընէք ուրիշին ինչ որ չէք ուզեր որ ձեզի ընեն :*

**488**. *Ցուցական դերանունները կը հոլովուին* 180 *էջի պատկերին համեմատ :*

**489**. *Երբ ան ցուցական դերանունը իբր անձնական գործածենք, անձնական դերանուններու հոլովման համաձայն՝ հայցականի մէջ զ կ'առնէ, և կ'ըլլայ զայն կամ զանիկա :*

## ՍՏԱՑԱԿԱՆ ԴԵՐԱՆՈՒՆ

**490**. *Ստացական դերանունները ստացական ածականներէն, այսինքն անձնական դերանուններուն սեռականներէն կը շինուին, անոնց վրայ աւելցնելով ս, դ, ն կամ ը դիմորոշ յօդերը, և քանի մը որուն ըլլալը կը ցուցնեն. իմս, իմինս — քուկդ, քուկինդ — իրը, իրենը, եւայլն :*

**491**. *Ստացական դերանուններն ալ թիւ և հոլով ունին. տե՛ս պատկեր էջ* 180-181 :

## ՅԱՐԱԲԵՐԱԿԱՆ ԴԵՐԱՆՈՒՆ

**492**. *Յարաբերական դերանունը որ բառն է, և իրմէ առաջ յիշուած անուն մը կամ դերանուն մը կը ցուցնէ. այդ անունը կամ դերանունը կ'ըսուի յարաբերեալ.* Զմայլեցի ես այն բնաւորութիւնը, որուն ամէն մասերը կատարելապէս ներդաշնակ են իրարու հետ:

**493**. *Յարաբերական դերանունը ունի թիւ, հոլով, և երեք դէմքի համար ալ կրնայ գործածուիլ.* Ես՝ որ զձեզ կը յարգէի, հիմայ կ'արհամարհեմ: Դուն՝ որ զինքը կ'արհամարհէիր, հիմայ կը յարգես: Ան՝ որ զձեզ կը յարգէր, հիմայ կ'արհամարհէ:

**494**. *Յարաբերական դերանունը կը հոլովուի. տե՛ս պատկեր էջ* 182.

**495**. *Յարաբերական դերանունը միշտ յարաբերեալէն յետադաս է, իսկ բայէն կամ խնդիրէն նախադաս.* Ոսկին [illegible] մըն է, որուն միջոցաւ բոլոր դուռները կը բացուին:

**496**. *Յարաբերականը ընդհանրապէս յարաբերեալին քով կը դրուի, սակայն ի հարկին կրնայ անկէ բաժնուիլ, ինչպէս.* Այն անձերուն սովորութեանց կը հետեւինք ընդհանրապէս, որոնց հետ կ'ապրինք:

**497**. *Յարաբերական դերանունին եզակին շատ անգամ յոգնակիի տեղ ալ կրնայ գործածուիլ ուղղական և հայցական հոլովներուն մէջ, երբ յարաբերեալին կից ըլլայ.* Այն բարեկամները զոր այսօր կ'ընենք, վաղը երջանիկ պիտի ընեն զմեզ: *Իսկ երբ յարաբերեալէն անջատուած է, ընդհանրապէս յոգնակի կը գործածուի.* Այն բաներուն վրայ չենք զմայլիր բնաւ, զորս ամէն օր կը տեսնենք:

**498**. *Յարաբերեալը միշտ գոյական անուն մըն է կամ դերանուն մը, բայց երբեմն ալ ամբողջ խօսք մը*

կրնայ ըլլալ։ Այդ պարագային՝ փոխանակ որ յարաբերականին՝ լաւագոյն է գործածել ինչ որ. Կ'ըսէ թէ յաջողելու համար պէտք է միշտ կեղծել, ինչ որ երբեք չեմ կրցած ընել։

## ԱՆՈՐՈՇ ԴԵՐԱՆՈՒՆ

**499.** Անորոշ դերանունները տարտամ և անորոշ անձեր և իրեր կը ներկայացնեն։

**500.** Անորոշ դերանունները ընդհանրապէս անորոշ ածականներն են, իրենց վրայ որոշիչ կամ անորոշ յօդով մը, ինչպէս. բոլոր (ածական) մարդիկ, բոլորը (դերանուն). — շատ (ածական) մարդիկ, շատ մը (դերանուն)։

**501.** Անորոշ դերանուններուն ամենամեծ մասը կը հոլովուի գոյականներուն հոլովման ընդհանուր օրէնքին համաձայն, և ոմանք յոգնակի ալ ունին, ինչպէս. ուրիշը, ուրիշին, ուրիշէն, ուրիշով, ուրիշները, ևայլն։

**502.** Զատուկ հոլովումներ ունին ամէնը, մէկը, ո՞վ, ո՞րը, ոմանք, որո՞նք. տես պատկեր էջ 182։

**503.** Հետևեալ անորոշ դերանունները յոգնակի չունին.

Մէկը, ամէն ոք, ամէն մարդ, մարդ, ամէն մէկը, իւրաքանչիւրը, իւրաքանչիւր ոք, անձնիւրը, ոչ ոք, ոչինչ, ուրիշ մը, նոյնը, միևնոյնը, նոյն ինքն։ — Բան մը, ամէն բան, ամէն ինչ, այս ինչը, այն ինչը։ — Այսչափը, այդչափը, այնչափը, այսքանը, այդքանը, այնքանը։ — Ինչ որ, ո՞րչափը, ո՞րքանը, շատ մը, մաս մը, մէկ մասը։

**504.** Իսկ հետևեալները ընդհանուր օրէնքին համաձայն յոգնակի կ'ըլլան.

Շատը, քիչը, ուրիշը, այսպիսին, այդպիսին, այնպիսին, ասանկը, ատանկը, անանկը, ով որ, ո՞վ, ի՞նչ, ի՞նչ բան, քանի՞, քանի՞ն, ո՞րը, ի՞նչը, ո՞րպիսին, մէկ քանին։

**505.** Ոչ մէկը յոգնակի մէջ կ՚ըլլայ ոչ մէկերնին, միւսը կ՚ըլլայ միւսները։

**506.** Ոմանք, մէկը եւ միւսը, ամէնը, ամէնքը, բոլորը յոգնակի բայ կ՚ուզեն. Բոլորն ալ մեկնեցան։ Ամէնքն ալ հոն էին։ Միայն բացառաբար կրնայ ըսուիլ. Ամէնը այս է։

**507.** Անորոշ դերանունները թէ՛ բացառական և թէ՛ սեռական հոլով խնդիր կ՚առնեն. Բանուորներէն շատերը վիրաւորուեցան։ Կանանց մեծ մասը շատախօս է։ Ձեզմէ ոչ մէկուն խօսքին կը հաւատամ։ Մեզմէ քանի՞ը յուսախաբ եղան։

**508.** Քանի մը անորոշ դերանուններ, ինչպէս ոմանք, մաս մը, մէկը, եւայլն միայն բացառական հոլով խնդիր կ՚առնեն. Ձեզմէ ոմանք յաջողեցան։ Այդ դրամներէն մաս մը իրիկուան պահեցէք։ Աշակերտներէն մէկը մատնեց իր Տէրը։

**509.** Անորոշ դերանունները երբեմն ալ փոխանակ սեռական կամ բացառական խնդիր առնելու՝ ստացական դերանունի ձեւով՝ դիմորոշ յօդ կ՚առնեն. (Դուք) ամէնքդ ալ անիրաւ էք։ Շատերնիս (մեզմէ շատերը) հոն պիտի մնանք։ Ամէն մէկերնին (անոնցմէ ամէն մէկը) մէյ մէկ պայուսակ ունէին ձեռքերնին (իրենց ձեռքը)։

**510.** Շատ անգամ անորոշ դերանունները կամ քիչ մը, մաս մը, եւայլն բառերը զանց կ՚ըլլուին, և անոնց բացառական խնդիրը կը մնայ բային քով, ինչպէս. Ունեցածէդ (քիչ մը) տո՛ւր աղքատին։ Այս թերթերէն (մաս մը) ես ալ ունիմ։ Այս կերակուրէն (քիչ մը) չէ՞ք առներ։

# ՀՈԼՈՎՈՒՄ ԴԵՐԱՆՈՒՆՆԵՐՈՒ

## ԱՆՁՆԱԿԱՆ ԴԵՐԱՆՈՒՆՆԵՐ

| | Ա. ԴԷՄՔ Եզ. | Ա. ԴԷՄՔ Յոգ. | Բ. ԴԷՄՔ Եզ. | Բ. ԴԷՄՔ Յոգ. |
|---|---|---|---|---|
| Ո. | Ես | Մենք | Դուն | Դուք |
| Հ. | Զիս | Զմեզ | Զքեզ | Զձեզ |
| Ս. | Իմ, Իմին | Մեր, Մերին | Քու, Քուկին | Ձեր, Ձերին |
| Տ. | Ինծ; Ինծի | Մեզ, Մեզի | Քեզ, Քեզի | Ձեզ, Ձեզի |
| Բ. | Ինծմէ, Ինէ | Մեզմէ, Մենէ | Քեզմէ, Քենէ | Ձեզմէ, Ձենէ |
| Գ. | Ինծմով | Մեզմով | Քեզմով | Ձեզմով |

### Գ. ԴԷՄՔ

| | Եզ. | Յոգ. | Եզ. | Յոգ. |
|---|---|---|---|---|
| Ո. | Ինք | Իրենք | Ան, Անիկա | Անոնք |
| Հ. | Զինք | Զիրենք | Զայն, Զանիկա | Զանոնք |
| Ս. | Իր, Իրեն | Իրենց | Անոր | Անոնց |
| Տ. | Իրեն | Իրենց | Անոր | Անոնց |
| Բ. | Իրմէ | Իրենցմէ | Անկէ | Անոնցմէ |
| Գ. | Իրմով | Իրենցմով | Անով | Անոնցմով |

## ՓՈԽԱԴԱՐՁ ԴԵՐԱՆՈՒՆՆԵՐ

| | | |
|---|---|---|
| Ո. | — | — |
| Հ. | Մէկզմէկ | Իրար, Զիրար |
| Ս. | Մէկզմէկու | Իրարու |
| Տ. | Մէկզմէկու | Իրարու |
| Բ. | Մէկզմէկէ | Իրարմէ |
| Գ. | Մէկզմէկով | Իրարմով |

## ԽԱՌ ԴԵՐԱՆՈՒՆԻՆ ԿՐԿՆԱԿ ՀՈԼՈՎՈՒՄԸ

### Ա. ԴԷՄՔ

| | Եզ. | Յոգ. |
|---|---|---|
| Ո. | — | — |
| Հ. | Ինքզինքս | Ինքզինքնիս |
| Ս. | Ինքզինքիս | Ինքզինքնուս |
| Տ. | Ինքզինքիս | Ինքզինքնուս |
| Բ. | Ինքզինքէս | Ինքզինքնէս |
| Գ. | Ինքզինքովս | Ինքզինքովնիս |

### Բ. ԴԷՄՔ

| | Եզ. | Յոգ. |
|---|---|---|
| Ո. | — | — |
| Հ. | Ինքզինքդ | Ինքզինքնիդ |
| Ս. | Ինքզինքիդ | Ինքզինքնուդ |
| Տ. | Ինքզինքիդ | Ինքզինքնուդ |
| Բ. | Ինքզինքէդ | Ինքզինքնէդ |
| Գ. | Ինքզինքովդ | Ինքզինքովնիդ |

### Գ. ԴԷՄՔ

| | Եզ. | Յոգ. |
|---|---|---|
| Ո. | — | — |
| Հ. | Ինքզինքը | Ինքզինքնին |
| Ս. | Ինքզինքին | Ինքզինքնուն |
| Տ. | Ինքզինքին | Ինքզինքնուն |
| Բ. | Ինքզինքէն | Ինքզինքնէն |
| Գ. | Ինքզինքովը | Ինքզինքովնին |

## ՑՈՒՑԱԿԱՆ ԴԵՐԱՆՈՒՆՆԵՐ

### Այս

| | Եզ. | Յոգ. |
|---|---|---|
| Ո. Հ. | *Այս, աս, սա, ասիկա* | *Ասոնք* |
| Ս. Տ. | *Ասոր* | *Ասոնց* |
| Բ. | *Ասկէ* | *Ասոնցմէ* |
| Գ. | *Ասով* | *Ասոնցմով* |

### Այդ

| | | |
|---|---|---|
| Ո. Հ. | *Այդ, ատ, ատիկա* | *Ատոնք* |
| Ս. Տ. | *Ատոր* | *Ատոնց* |
| Բ. | *Ատկէ* | *Ատոնցմէ* |
| Գ. | *Ատով* | *Ատոնցմով* |

### Այն

| | | |
|---|---|---|
| Ո. Հ. | *Այն, ան, անիկա* | *Անոնք* |
| Ս. Տ. | *Անոր* | *Անոնց* |
| Բ. | *Անկէ* | *Անոնցմէ* |
| Գ. | *Անով* | *Անոնցմով* |

## ՍՏԱՑԱԿԱՆ ԴԵՐԱՆՈՒՆՆԵՐ

### Ա. ԴԷՄՔ

| | Եզ. | Յոգ. |
|---|---|---|
| Ո. Հ. | *Իմս, Իմինս* | *Իմիններս* |
| Ս. Տ. | *Իմինիս* | *Իմիններուս* |
| Բ. | *Իմինէս* | *Իմիններէս* |
| Գ. | *Իմինովս* | *Իմիններովս* |

| | Եզ. | Յոգ. |
|---|---|---|
| Ո. Հ. | Մերը, Մերինը | Մերինները |
| Ս. Տ. | Մերինին | Մերիններուն |
| Բ. | Մերինէն | Մերիններէն |
| Գ. | Մերինով | Մերիններով |

Բ. ԴԷՄՔ

| | | |
|---|---|---|
| Ո. Հ. | Քուկդ, Քուկինդ | Քուկիններդ |
| Ս. Տ. | Քուկինիդ | Քուկիններուդ |
| Բ. | Քուկինէդ | Քուկիններէդ |
| Գ. | Քուկինովդ | Քուկիններովդ |
| Ո. Հ. | Ձերը, Ձերինը | Ձերինները |
| Ս. Տ. | Ձերինին | Ձերիններուն |
| Բ. | Ձերինէն | Ձերիններէն |
| Գ. | Ձերինով | Ձերիններով |

Գ. ԴԷՄՔ

| | | |
|---|---|---|
| Ո. Հ. | Իրը, Իրենը | Իրենները |
| Ս. Տ. | Իրենին | Իրեններուն |
| Բ. | Իրենէն | Իրեններէն |
| Գ. | Իրենով | Իրեններով |
| Ո. Հ. | Իրենցը, Իրենցինը | Իրենցինները |
| Ս. Տ. | Իրենցինին | Իրենցիններուն |
| Բ. | Իրենցինէն | Իրենցիններէն |
| Գ. | Իրենցինով | Իրենցիններով |

## ՑԱՐԱԲԵՐԱԿԱՆ ԴԵՐԱՆՈՒՆ

| | Եզ. | Յոգ. |
|---|---|---|
| Ո. | Որ | Որոնք |
| Հ. | Զոր | Զորս |
| Ս. | Որուն | Որոնց |
| Տ. | Որու | Որոնց |
| Բ. | Որմէ | Որոնցմէ |
| Գ. | Որով | Որոնցմով |

## ԱՆՈՐՈՇ ԴԵՐԱՆՈՒՆՆԵՐՈՒՆ ԲԱՑԱՌԻԿ ՀՈԼՈՎՈՒՄՆԵՐԸ

| | | | |
|---|---|---|---|
| Ո. Հ. | Ո՞վ, Զո՞վ | Ո՞րը | Մէկը |
| Ս. Տ. | Որո՞ւ | Որո՞ւն | Մէկուն |
| Բ. | Որմէ՞ | Որմէ՞ | Մէկէն |
| Գ. | Որո՞վ | Որո՞վ | Մէկով |
| Ո. Հ. | Ամէնը | Ոմանք | Որո՞նք |
| Ս. Տ. | Ամէնուն | Ոմանց | Որո՞նց |
| Բ. | Ամէնէն | Ոմանցմէ | Որոնցմէ՞ |
| Գ. | Ամէնով | Ոմանցմով | Որոնցմո՞վ |

## ՀՐԱՀԱՆԳՆԵՐ

---

### ԱՄԱՌՈՒԱՆ ՑՈՒՑԵՐ

Անոյշ հովեր կը փըչեն զով
Այազմային սարերէն.
Հըսկայ ծառեր՝ ցից քովէ քով՝
Լայն Թեւերնին կ՚օրօրեն.
Գըլխուս վերև կը ծածանի
Իրենց կամարը շարժուն,
Եւ իրենց երգը վայրենի
Կ՚երգեն ամէն իրիկուն։
Այս հրաշալի բարձունքէն՝ մարդ
Կ՚ընդգըրկէ մէկ նայուածքով
Դաշտ մ՚ընդարձակ—կանանչազարդ,
Յետոյ, հանդարտ կապոյտ ծով.
Ուր կը ցըցուին կըղզիներուն
Ուռուցիկ լանջքն ու կըռնակ.
Իսկ Թաւրիշէ լեռներ՝ հեռուն
Այս պատկերին շըրջանակ։
Դաշտին վըրայ լայնածաւալ,
Գորգի նըման բանուած ճոխ
Կը նըշմարեմ անակընկալ
Տեսարաններ միշտ փոփոխ,
Երբ արեւուն կայծեր վերջին՝
Երկար օրուներ շողշողուն
Ամպին ծոցէն դուրս կը Թըռչին,
Կը ծաւալին, կը զեղուն.
Արտը դեղին, կանանչ այգին,
Եզրը ծովուն, ջերան սար,
Կը փալփըլան, կը բեկբեկին
Ինչպէս մէյ մէկ ղուլա գոհար։
Սարէն, ձորէն միշտ կը փըչեն
Հովերն առողջ և կայտառ,
Ծառերն ալ միշտ շարժման մէջ են
Նըշաններով անըսպառ։

*Եւ ես հանդէպ այս խորանին*
*Լոյսերու մէջ ողողուած,*
*Հանդէպ այս մեծ տեսարանին*
*Կը ծնրադրեմ երկիւղած։*

**ՄԿՐՏԻՉ ԱՃԷՄԵԱՆ** (1)

**138**. Արձակի վերածել այս ոտանաւորը։

**139**. Գոց սորվիլ և բարձրաձայն արտասանել այս ոտանաւորը։

**140**. Ըսել թէ հետեւեալ խօսքերուն մէջ գերանունները՝ ինչ բառերու տեղ դրուած են։

*Սպարտայի մէկ օրէնքը կը պատուիրէր որ երիտասարդները ոտք ելլեն ծերերուն առջև, և լսեն անոնց խօսած ատեն։ — Հայ հարսերը՝ գաւառներու մէջ՝ չեն խօսիր տարիներով իրենց մեծերուն առջև, և գլխու շարժումներով միայն կը պատասխանեն անոնց։ — Եթէ տունկ մը գլխիվայր տնկենք, անոր ճիւղերը արմատի՝ և արմատները ճիւղերու կը վերածուին։ — Հաւը, որ բնապէս շատ վախկոտ է, արծիւի մը պէս քաջասիրտ կը դառնայ երբ հարկ ըլլայ իր վառեակները պաշտպանել։ — Հայր Արսէն Բագրատունի նշանաւոր բանաստեղծ մըն է, որ հեղինակած է հոյակապ քերթուած մը, նաև թարգմանած կարգ մը նշանաւոր երկեր։ — Մարդիկ կան որ շատ կը խոստանան և քիչ կը կատարեն, կան ալ որ քիչ կը խոստանան, բայց կը կատարեն ինչ որ խոստացած են։ — Սիրեցէ՛ք կեանքը, վասն զի բարի է անոր համար, որ ուղիղ ճամբէն կ'երթայ, որ կ'աշխատի անվհատ, և աշխատութեան մէջ կը գտնէ սփոփանքը իր վիշտերուն։*

**141**. Հետեւեալ խօսքերուն մէջ աւելորդ դրուած բառերուն տեղ դնել յարմար գերանուններ.

*Արտոյտները կը շինեն իրենց բոյները ցորեններուն մէջ, երբ ցորենները կանանչ են։ — Մոլութեան յաղթելու համար պէտք է փախչիլ մոլութենէ։ — Մարդուս համբաւը ծաղիկ մըն է. թեթև շունչ մը կրնայ համբաւը խամրեցնել։ — Ճշմարտութիւնը վերջապէս կը յաղթէ այն խոչընդոտներուն, զոր ճշմարտութեան առջև կը հանեն։ — Շողոքորդը ամբարտաւանները կը սիրէ, շողոքորդը հազարումէկ գովեստներ կը կարդայ ամբարտաւաններուն, և շողոքորդը կ'ապրի ի վնաս ամբարտաւաններուն։*

---

(1) **Մկրտիչ Աճէմեան**, *ժամանակակից բանաստեղծ, հրատարակած է բազմաթիւ քերթուածներ։*

## ՁԵՌՆՈՑԸ

Առիւծներու պայքարին ներկայ գտնուելու համար՝ փակարանին առջև բազմեր էր Ֆրանսուա՛ թագաւորը. իր շուրջը կը կենար արքունիքին աւագանին, և աւելի բարձր՝ վերնատան մէջ՝ շքեղ պսակ մը տիկիններու։

Վեհապետը ձեռքովը նշան կու տայ, ահագին վանդակ մը կը բացուի, և առիւծ մը ներս կը մտնէ զգուշաւոր քայլուածքով. լուռ՝ իր շուրջը կը նայի, երկար յօրանջումներով, իր բաշը կը թօթուէ, կը ճապկըտի և կը պառկի։

Թագաւորը նորէն նշան կ'ընէ. իսկոյն ուրիշ դուռ մը կանակի վրայ կը բացուի, ուրկէ վագր մը դուրս կը խոյանայ վայրենի ոստումով մը։ Առիւծը տեսնելով, ահարկու մռնչիւն մը կ'արձակէ, պոչովը գետինը կը դոպէ պարուրաձև, սոսկալի, լեզուն դուրս կը ձգէ, վախով բոլորտիքը կը պտտի ահագնագոչ կատաղի առիւծին. յետոյ, մռնչալով ինք ալ գետինը կ'երկննայ անոր քով։

Թագաւորը դարձեալ նշան կ'ընէ. երկփեղկ վանդակէ մը դուրս կը ժայթքեն միահաղոյն երկու ընձառիւծներ, ու բոցեռանդ՝ կռուի կը վազեն վագրին վրայ. վագրը թաթուլովը զարհուրելի հարուած մը կու տայ, և առիւծը մռնչելով տեղէն կ'ելլէ։ Ամէն կողմ հանդարտութիւն կը տիրէ, և շուրջանակի, բոլորաձև կը յածին ահուելի գազանները արիւնախանձ։

Նոյն վայրկեանին՝ վերնատան մէկ քովէն ձեռնոց մը վար կ'իյնայ աղուոր ձեռքէ մը, վագրին ու առիւծին միջև, ճիշդ մէջտեղը։

Այն ատեն Տը Լօրժ ասպետին դառնալով, հեգնոտ կերպարանքով մը կ'ըսէ իր նշանածը՝ Օրիորդ Քիւնէկոնտ. «Պարո՛ն ասպետ, եթէ ձեր անձնուիրութեան խոստումները անկեղծ են, գացէ՛ք ձեռնոցս բերէ՛ք։»

Ասպետը, առանց վարանելու, մրցարանը կ'իջնէ ապահով քայլուածքով մը, և ճիւաղներուն մէջէն ձեռնոցը կ'առնէ աներկիւղ։

Ասպետները և տիկինները՝ ահաբեկ՝ անոր կը նա-

յին, մինչ Լինքը՝ անվրդով՝ ձեռնոցը կը բերէ։ Ամէն կողմէ կը շնորհաւորեն զինքը, և Օրիորդ Քիւնեկոնտ երախտապարտ նայուածքով մը կ՚ընդունի զայն։ Բայց ասպետը անոր երեսին կը նետէ ձեռնոցը. «Ա՛լ պէտք չունիմ, Օրիո՛րդ, ձեր համակրանքին։»

Եւ յաւէտ կը բաժնուի անկէ։

ՇԻԼԼԷՐ (¹)

**142.** Զրուցագրել այս հատուածը, և կէտադրութեան նշանները դնել։

**143.** Բացատրել այս հատուածին մէջ գտնուած հետեւեալ բառերը.

*Պայքար, փախարան, բաշ, արքունիք, ատամունք, ճապկլտիլ, խոյանալ, գոպել, պտտուրանք, Թաթով, արիւնախանձ, ասպետ, աներկեան։*

**144.** Բացատրել հետեւեալ առածները դերանուններ գործածելով.

*Անգործ ձեռքը կը մուրայ։ — Ո՛ւշ եկուր, անո՛յշ եկուր։ — Թաւալող քարը մամուռ չի բռներ։ — Գող՝ սիրտը դող։ — Քիչ բերեր, շատ դարձեր։ — Կատուն ունի հաց ու պանիր, գիշերը-բունը չի տանիր։ — Անցուկը մռնցուկ կ՚ըլլայ։ — Աչքէ հեռու՝ սրտէ հեռու։ — Գլորեր է պտուկը, գտեր է իր խուփիկը։ — Գնա մեռիր, եկուր սիրեմ։ — Էշն ինչ գիտէ նուշը, կ՚երթայ կ՚ուտէ փուշը։*

**Օրինակ.** — *Անգործ ձեռքը կը մուրայ.* — *Ով որ չ՚աշխատիր, աղքատ, թշուառ և ուրիշին կարօտ կ՚ըլլայ։*

**145.** Մէյ մէկ խօսք շինել հետեւեալ անորոշ դերանունները գործածելով.

*Ո՛րչափը, շատը, ամէն ինչ, ամենքը, բան մը, ուրիշ մը, մաս մը, ոմը, ոչ մէկը, ով, մէկ քանին, ինչ բան, ոչ մէկերնին, միեւնոյնը, այդչափը, մարդ, քիչը, մաս մը, ոմանք։*



(¹) Շիլլէր, գերման մեծ գրագէտ, Թատերագիր ու պատմագիր, ունի շատ մը կարեւոր երկեր։ Ծնած է 1751ին և մեռած 1805ին։

# ԴԵՐԱՆՈՒՆԻՆ ԼՈՒԾՈՒՄԸ

*Ուրիշներուն միջտը սփոփելով, գթասիրտ մարդը ինք ալ կը սփոփուի։ — Ծայրխաները իրենց բոյները ծառերուն ատերուն վրայ կը շինեն, իսկ ծիծեռնակները իրենցը պատերէն ի վար կը կախեն։ — Անձնասէրը ոչ ոք կը սիրէ։ — Ով որ ճշմարտութիւնը գիտէ, պէտք է ամէնուն ըսէ։ — Բաղդը բնաւորութիւնը առաքինութիւն մըն է, առանց որու անհնար է հաճելի ըլլալ։ — Մեծերը իրենց բեռը ունին, պզտիկներն ալ իրենցը։ — Ամէնէն մեծ հաճոյքը ուրիշին հաճոյք պատճառելն է։ — Ըսէ՛ ինծի ո՞վ է ընկերդ, ըսեմ քեզի թէ ո՛վ ես։ — Վստահութիւնը կը շահի մարդ, բայց չի կրնար բանի ձեռք ձգել զայն։ — Ուրիշին թերութիւնները քննադատելէ առաջ, նախ քուկիններդ սրբագրէ՛։ — Աթենաս, որ Աթէնքի պաշտպան դիցուհին էր, Հռոմն ալ պաշտպանեց։ — Գէշ գիրքերը թոյն մը կը ձգեն իրենցմէ ետքը, որ մեր հոգին կ'ապականէ, և մեր ճաշակը կը թիւրէ։ — Խելացի մարդը իր սխալանքներուն պատճառը ինքզինքին կը հարցնէ, տխմարը՝ ուրիշներուն կը հարցնէ։*

| | |
|---|---|
| Ուրիշներուն | անրշ· դրն· յոք· սռկն· յանցչ· *վիշտին* |
| ինք | անձ· դրն· եզ ուղ· ենթ· *կը սփոփուիին* |
| իրենցը | ստացկն· դրն· յք· հյց· սեռ.ի խնդ· *կը կախենին* |
| ոչ ո.ք | անրշ· դրն· եզ· հյց· սեռ.ի խնդ· *կը սիրէին* |
| Ով որ | անրշ· դրն· եզ· ուղ· ենթ· *ըսէին* |
| ամէնուն | անրշ դրն· եզ տրկ· բնթ խնդ· *ըսէին* |
| որու | յր· դրն· եզ· տրկ· խնդ· *առանցին* |
| իրենցը | ստց· դրն· յոք· հյց· սեռ.ի խնդ· *ունինին* |
| ուրիշին | անրշ· դրն· եզ· տրկ· բնթ· խնդ· *պատճառելին* |
| զայն | ցուց· դրն· եզ· հյց· սեռ.ի խնդ· *ձեռք ձգելին* |
| Ուրիշին | անրշ· դրն· եզ· սռկն· յանցչ· *թերութիւններուն* |
| քուկիններդ | ստացկն· դրն· յք· հյց· սեռ.ի խնդ· *սրբագրէին* |

որ — յր. դրն. եզ. ուղ. ենթ. *կրին*
իրենցմէ — անձ. դրն. յք. բցռկ. խնդ. *եսքին*
ինքզինքին — անձ. փխդձ. դր. եզ. տրկ. բբ. խնդ. *կը հարցնէին*
ուրիշներուն — անրշ. դրն. յք. տրկ. բնր. խնդ. *կը հարցնէին*

---

## ՌՈՒՍԻՆԵԱՆ

*Ռուսինեան քիչ կարդացեր՝ շատ խորհրդածեր էր. ընդհանուր սկզբունքներ ունէր, որոնց յարած էր, ինչպէս կը յարի մարդ իր հաւատքին։ Իր միտքը ընդունակ էր միայն բացարձակը ըմբռնելու. ամէն խնդիր ինքնուրոյն կը նկատէր, առանց ուշ դնելու ուրիշ խընդիրներու հետ ունեցած առընչութեանը։ Ռուսինեան չէր կրնար հասկնալ թէ բանականութեան ուզածին պէս չի կրնար ձեւակերպիլ ամէն բան, և թէ կարելի չէ պարզութեան վերածել ինչ որ խառն է։ Եւ անիկա թերեւս իր մտքին մէկ գեղեցիկ պատրանքը կարենար համարուիլ, եթէ միանգամայն անձնական բան մը ի յայտ չբերէր իր բնաւորութեան մէջ։ Արդարեւ անձ մըն էր ան ինք իր վրայ կեդրոնացած. ինքնին կ'ապրէր. դուրսէն ազդեցութիւն չէր ընդունէր, և միայն իր ազդեցութիւնը գործածելու համար երբեմն հաղորդակցութեան կը մտնէր իրերու և անձերու հետ։ Չէր կրնար հասկնալ թէ ինչ որ աղէկ է իրեն համար, կրնայ ուրիշներուն համար աղէկ չըլլալ, և առաջին ու վերջին պայմանը այն էր ամէնուն հետ՝ որ իրեն համակերպէին։ Վերջապէս ամէն բան իր անձնական յարմարութեանցը վերածելու անյաղթելի տրամադրութիւն մը ունէր։*

**ԳՐԻԳՈՐ ՕՏԵԱՆ** (1)

**146.** Լուծել այս հատուածին անունները, յօդերը, ածականները, դերանունները

---

(1) *Գրիգոր Օտեան, նշանաւոր գրագէտ. ունի բազմաթիւ գեղեցիկ գրական էջեր հայ պարբերականներու մէջ. ծնած է 1834ին և մեռած 1887ին։*

# ՑԱՆԿ ՆԻՒԹԵՐՈՒ

Էջ

**Նախնական գիտելիք**



**Անուն կամ Գոյական**



**Յօդ**



**Ածական**



**Դերանուն**

## ՑԱՆԿ ԱՐՁԱԿ ՀԱՏՈՒԱԾՆԵՐՈՒ



## ՑԱՆԿ ՔԵՐԹՈՒԱԾՆԵՐՈՒ